Description de Jérusalem

par Baptiste Argyronnian

—

Jérusalem 1859.

o Baptiste Arzrounian

# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՍՐԲՈՑ ՔԱՂԱՔԻՆ
# ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ՔՆՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՄԱՌՕՏԵԱԼ
Ի ՀԱՆՆԱ ԵՒ Ի ՄԱՐԻՆՈՍ ՊԱՏՄԱԳՐԱՑ
ԸՆԴ ՈՐՍ ԵՒ ՅԱՒԵԼԵԱԼ ԲԱԶՈՒՄ ԲԱՆՍ
ՀԱՆԴԵՐՁ ԿԱՐԵՒՈՐ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՄԲՔ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱԼ
Ի ՄԿՐՏԻՉ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԱՐԾՐՈՒՆԵԱՆ
Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ ՍՐԲՈՑ ԱԹՈՌՈՅՍ
ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
ՍՐԲՈՑ ԷՋՄԻԱԾՆԻ Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ ՎԵՀԱՓԱՌԻ
ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Ս. ԱԹՈՌՈՅՍ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ. ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ Տ. ԳԷՈՐԳ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ



ԵՐՈՒՍԱՂԷՄ.
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
1859

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԲՆԱԿԱՆ է մահկանացուիս անձանց մը-
նալ յաղթաւոր յայս կենցաղ՝ գտնէ արդեանց
իւրեք. վասն որոյ ձեռնամուխ եղէ յայս գործ ՚ի
յիշատակ յաւիտենական. և ըստ կարի իմում
զատեալ ընտրեցի զստոյգն յանստուգէն, և զա-
ւանդութիւնն յառասպելէն. և զհամառօտն
շաւիղ կալայ, և զաւելորդն յապաւեալ ՚ի բաց
եդի. զորոց և զվկայութիւնս՝ ուր ՚ի սուրբ
Գրոց և յեկեղեցական պատմութեանց, մի ըստ
միոջէ գլխով և համարով նշանակեցի: Նաև ՚ի
զանազան տեղիս բաղդատեցի զՀաննայի Պատ-
մութիւնն ընդ Լատին Պատմագրին Մուրինոսի.
և այսու ևս ոչ շատացեալ՝ անձամբ անձին կա-

մեցայ չոքել ընդ ամենայն մերձակայ Տնօրինական սուրբ վայրս Քրիստոսի՝ և յայլ նշանաւոր տեղիս, զորոց զշինութեանց՝ զչափուց՝ և զորպիսութեանց տեղեկացեալ՝ ականատես գտայ. այլ և յարտաքին վկայութեանց այլազան ազգաց քրիստոնէից հանձարեղ գրոց և ծերունեաց իբր կարօտութեամբ հարցաքննեալ՝ արձանացուցի 'ի Ստորագրութեանս յայսմիկ: Եւ ըզվաղեմի ջանասիրութիւնս և զվաստակս երևելի բազմերախտ նախնի երանեալ Հարցն սրբոյ Աթոռոյս կարճ 'ի կարճոյ վերստին ծանուցի 'ի սմա կարև որ պարագայիւք: Եւ զայժմեան աշխատասիրութիւնն անպակաս գրեցի առանց աչառութեան՝ և ոչ իսկ 'ի շնորհուկս ինչ ումեք յաւելմամբ կամ բարդութեամբ 'ի վերայ, որպէս զի անկեղծ լինիցին բանքս և հաւատարիմ՝ որ 'ի սմա:

Այլ և Ազգիս մերում զյատակացեալ հանդիսաւոր Թափօրն՝ որ 'ի սուրբ Յարութեան տաճարին 'ի բոլոր ամս, զառանձինն և ընկերութեամբն ընդ Յոյնս՝ որոշ որոշ եդի ըստ ամենայնի, թէ որպէս և երբ պարտ է առնել. և յայանեցի զսկզբունս բարեկարգութեանն 'ի խաղաղութիւն ընդ ամենայն ազգաց, Տեղեկութիւն անուանելով զամենայն. ևս և նշանակեցի զընթերցուածս աւուրցն այնոցիկ հանդէսից՝ զԱւետարանս, և զՇարականս գլխով և թըւահամարաւ՝ առ 'ի դիւրաւ գտանել Ջերմեռանդն և Քրիստոսասէր խնդրողաց, մանաւանդ 'ի պէտս բազմավաստակ Միաբանից. ուր ա-

զետակ գոլով ամենայն հանգամանացն և որպիսու-
թեանց, այնպէս կատարեսցեն զհոգևոր պաշ-
տամունս իւրեանց 'ի փառս Աստուծոյ:

Արդ՝ այսու եղանակաւ որպէս թէ զիւրա-
քանչիւրոյ ձեռանէ մտացն կալեալ, առաջնոր-
դել և ցուցանել կամեցայ Աստուածասէր հա-
ւատացելոցն Քրիստոսի և Նորեկ միաբան սիրե-
լեաց. սակայն այսու ամենայնիւ անհնար է ու-
մեք լնուլ զբանական բաղձանս հոգւոյն, մինչ
կենդանի կայ տակէն 'ի մարմնի, այլ ևս քան
զևս բորբոքեալ վառի սիրով մաքուր սրտին և
սուրբ մտացն՝ որ վերանայ առ Աստուած:

Իսկ յայսմ աշխատութեանս գործակից ինձ
գտաւ Աթոռանիստ Մայր Եկեղեցւոյն սուրբ
Աստուածածնի՝ կոստանդնուպօլսեցի Պատուար-
ժան Տէր Գէորգ Քահանայ վարժապետն, որ 'ի
տպագրութեան սոյն Պատմութեանս ջերմե-
ռանդն սրտիւ եկեալ էր 'ի սուրբ Երուսաղէմ
յՈւխտ և յերկրպագութիւն Տնօրինական և
Սրբատահման Տեղեաց Քՙի Աստուծոյ մերոյ:

Ապա և ես անարժանս ընդ ձեզ արժանա-
ցելոցդ սրբազան Վայրացս, արտասուախառն
հայցուածովք 'ի ծունր սրտի խոնարհեալ՝ ըղ-
ձիւ հոգւոյ յորդեմ և պատուեմ զփրկագործ
սուրբ Տեղիս Յիսուսի Քրիստոսի. և ըստ ուղ-
ղափառ հաւատոյ մերոց յուսով մեծաւ ակն
ունիմ միջնորդութեամբ բաժակարբու սիրելի
Աշակերտաց իւրոց՝ և ամենայն սրբոց, արժա-
նի լինել անդէն և ձեօք հանդերձ իսկապէս
տեսանել զերկնային փառս Աստուածութեանն.

մեցայ չոքիլ ընդ ամենայն մերձակայ Տնօրինական սուրբ վայրս Քրիստոսի՝ և յայլ նշանաւոր տեղիս, զորոյ զշինութեանց՝ զչափուց՝ և զորպիսութեանց տեղեկացեալ՝ ականատես գտայ. այլ և յարտաքին վկայութեանց այլազան ազգաց քրիստոնէից հանճարեղ գիտնոց և ծերունեաց իբր կարօտութեամբ հարցաքննեալ՝ արձանացուցի 'ի Ստորագրութեանս յայսմիկ: Այլ ըզվաղեմի Ջանասիրութիւնս և զխոստակս երևելի բազմերախտ Նախնի երանեալ Հարցն սրբոյ Աթոռոյս կարճ 'ի կարճոյ վերստին ծանուցի 'ի սմա կարևոր պարագայիւք: Այլ զայժմեան աշխատասիրութիւնս անպակաս գրեցի առանց աչառութեան՝ և ոչ իսկ 'ի շնորհուկս ինչ ումեք յաւելմամբ կամ բարդութեամբ 'ի վերայ, որպէս զի անկեղծ լինիցին բանքս և հաւատարիմ՝ որ 'ի սմա:

Այլ և Ազգիս մերում զյատակացեալ համդիսաւոր Թափօրն՝ որ 'ի սուրբ Յարութեան տաճարին 'ի բոլոր ամս, զառանձինն և ընկերութեամբն ընդ Յոյնս՝ որոշ որոշ եդի ըստ ամենայնի, թէ որպէս և երբ պարտ է առնել. և յայտնեցի՝ զսկզբունս բարեկարգութեանն 'ի խաղաղութիւն ընդ ամենայն ազգաց, Տեղեկութիւն անուանելով զամենայն. Եւս և նշանակեցի զընթերցուածս աւուրցն այնոցիկ հանդէսից՝ զԱւետարանս, և զՇարականս գլխով և թըւոհամարաւ՝ առ 'ի դիւրաւ գտանել Ջերմեռանդն և Քրիստոսասէր խնդրողաց, մանաւանդ 'ի պէտս բազմախուռն Միաբանից. այլ և ա-

զեանկ գոլով ամենայն հանգամանացն և որպիսութեանց, այնպէս կատարեսցեն զհոգևոր պաշտամունս իւրեանց 'ի փառս Աստուծոյ:

Արդ՝ այսու եղանակաւ որպէս Թէ զիւրաքանչիւրոց ձեռանէ մտացն կալեալ, առաջնորդել և ցուցանել կամեցայ Աստուածասէր հաւատացելոցն Քրիստոսի և Նորեկ միաբան սիրելեաց. սակայն այսու ամենայնիւ անհնար է ումեք լնուլ զբանական բաղձանս հոգւոյն, մինչ կենդանի կայ աստէն 'ի մարմնի, այլ ևս քան զևս բորբոքեալ վառի սիրով մաքուր սիրտն և սուրբ միտքն՝ որ վերանայ առ Աստուած:

Եւ յայսմ աշխատութեանս գործակից ինձ գտաւ Աթոռանիստ Մայր Եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի՝ կոստանդնուպօլսեցի Պատուարժան Տէր Գէորգ Քահանայ վարժապետն, որ 'ի տպագրութեան սոյն Պատմութեանս ջերմեռանդն սրտիւ եկեալ էր 'ի սուրբ Երուսաղէմ յՈւխտ և յերկրպագութիւն Տնօրինական և Սրբասահման Տեղեաց Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

Ապա և ես անարժանս ընդ ձեզ արժանացելոցդ սրբազան Վայրացս, արտասուախառն հայցուածովք 'ի ծունր սրտի խոնարհեալ՝ ընձիւ հոգւոյ յորդեմ և պատուեմ զփրկագործ սուրբ Տեղիս Յիսուսի Քրիստոսի. և ըստ ուղղափառ հաւատոց մերոց յուսամ մեծաւ ակնունիմ միջնորդութեամբ բաժակարբու սիրելի Աշակերտաց իւրոց՝ և ամենայն սրբոց, արժանի լինել անդէն և ձեօք հանդերձ իսկապէս տեսանել զերկնային փառս Աստուածութեանն.

Դ

և անմահ կենդանութեամբ յագիլ և լիանալ ըստ հոգւոյ յարուցեալ 'ի մեռելութենէ մարմնոյ՝ ասելով ընդ Դաւթի. «Յագեցայց յերևիլ փառաց քոց». Սաղմ. ԺԶ. ԺԵ:

Նուաստ ծառայ ծառայիցն Աստուծոյ
Միաբան սուրբ Երուսաղէմի
Մ. Վ. Արծրունեան:





# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՍՐԲՈՑ ՔԱՂԱՔԻՆ
# ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

### Առեալ ՚ի Պաղեստինոյ:

ՊԱՂԵՍՏԻՆ կոչի երկիրս ՚ի գլխաւոր մասնէ Սուրիէ, որ առաւել պարարտ է և բերրի քան զայլ մասունս. և յեզեր միջերկրական ծովուն կառուցան ՚ի հնումն հռչակաւոր քաղաքք. Կեսարիա, Աղովտոս, Ասկաղոն, Գազա, Հռամա, Լիւդ, և այլ բազում. և էր բնակարան Փղշտացւոց, այսինքն Ֆիլիստացւոց. վասն այսորիկ մինչև ցայսօր ՚ի լեզու Արաբացւոց կոչի ֆալէս-տին, որ է Պաղեստին: Նաև Երուսաղէմ անկանի ՚ի հարաւ Պաղեստինոյ. և սա համարեալ լինի կալ ՚ի միջին տեղւոջ երից մասանց աշխարհի. այսինքն Ափրիկոյ՝ կամ Լիբիոյ, Ասիոյ, և Եւրոպիոյ. յոր միտ առի Սիրտ երկրի: «Բնակեալ ՚ի սիրտ երկրի». Եզեկ. ԼԸ. 12: Զի է իբր սիրտ՝ որ յորովայն կենդանւոյ՝ Ափրիկոյ, Ասիոյ, և Եւրոպիոյ. որ անկանի Հարաւոյ անատօլէոյ. այսինքն Արևելեան, կամ Ասիոյ:

Նաև Տէրն մեր ըստ խորհրդական իմաստից, Սիրտ երկրի կոչեաց զԵրուսաղէմ. «Նոյնպէս

եղիցի և որդի մարդոյ 'ի սիրտ երկրի զերիս տիւս և զերիս գիշերս ». Մատթ. ԺԲ. 40: Եւ 'ի Շարականին ասի. « Կանգնեցաւ քառակերպն այսինքն խաչն՝ 'ի միջակկին, դիտելով ընդ Հարաւ »:



## Յաղագս հիմնարկէ սրբոյ Քաղաքին:

ՀԵՂԻՆԱԿ հիմնարկութեանն կարծի լինել Սաղէմ՝ Մեղքի հայրն Մելքիսեդեկի, ըստ եկեղեցական պատմութեան. Մեղքի՝ Թագաւոր ասի. Սեդեկ՝ արդարութիւն. վասն որոյ կոչի նա յանուանէն Թագաւոր արդարութեան. և Թագաւոր խաղաղութե անուանի՝ 'ի բնակութենէն. զի Երուսաղէմ Թարգմանի խաղաղութիւն, զոր շինեալ էր հայր նորա Սաղէմ Մեղքէ, և կոչեաց յանուն իւր: Սարքինոս ասէ, Մելքիսեդեկ քահանայ Աստուծոյ Թագաւոր Քանանացւոց շինեաց զայս քաղաք 'ի լեառն ասացեալ. և կոչեաց ըզնա Սաղէմ: Եւ Մելքիսեդեկ արքայ Սաղիմայ. Ծննդ. ԺԴ. 18: Հիմնեցաւ 'ի Մելքիսեդեկէ յամի աշխարհի ըստ եօթանասնից՝ 3291: Եւ ըստ ժամանակագրաց՝ 2023 *:

* Տէր խորայել 23 մարտի: Զոր ոմանք յաւանդութենէ անյայտ գրոց առեալ պատմեն. Թագաւորն Սաղէմ շինէ զքաղաքն՝ և կոչէ ըստ անուան իւրում Սաղէմ. և ծնանի զՄելքին. և Մելքի առ իւր կին զՍաղա՝ և ծնաւ 'ի նմանէ որդի, և անուանեաց ըստ անուան իւրոյ Մելքի: Եւ դարձեալ ծնաւ որդի, և անուանեաց Մելքիսեդեկ. և հայրն սիրէր զՄելքի, և մայրն սիրէր զՄելքիսեդեկ:

Յետ այնորիկ կալան Յեբուսացիք զԵրուսաղէմ, ամս 824. ուստի անուանեցին զՍաղիմն Յեբուս։ Եւ քանան ծնաւ զՍիդոն զանդրանիկ իւր, և զՔետացին և զՅեբուսացին. Ծնն. Ժ. 15, 16։ Յամի աշխարհի 3949. Դաւիթ վարեաց զՅեբուսացին, և նորոգեաց զքաղաքս, և ամրացոյց զբուրգն Սիոնի, և կանգնեաց զպարիսպ շուրջանակի, վասն որոյ կոչեցաւ քաղաք Դաւթի։ « Եւ նստաւ Դաւիթ յամրոցին, և կոչեցաւ այն՝ քաղաք Դաւթի. և շինեաց զնա քաղաք Դաւիթ շուրջանակի ծագէ 'ի ծագ, և զտուն իւր ». Բ. Թագ. Ե. 9։

Ապա նորոգեցաւ 'ի Սողոմոնէ. յետոյ 'ի Նեէմայ և յայլոց բազմաց։ Յեբուս փոխեցաւ Յերուս, որ և Երուսաղէմ. նա և Հիերուսաղէմ. տես 'ի Թիւ 9։ Նա և կոչի Արիէլ քաղաքն Երուսաղէմ. վասն հզօրեղութեան և իշխանութեան. Եսայ. ԻԹ. 1։

Յամի աշխարհի 3102. յետ ելանելոյ որդւոցն Իսրայէլի յԵգիպտոսէ, որք 440 ամ մնացին իբրև զգերի. և նախ քան զՔրիստոս 1007 ամօք. արար Սողոմոն հիմնարկութիւն տաճարին. « Եօթըն ամ շինեցաւ, և եղև կատարումն նորին ». Գ. Թագ. Զ. 1. 440 ամս եկաց մնաց 'ի պայծառութեան։

Ապա 602 ամօք՝ նախ քան զՔրիստոս առաւ Երուսաղէմ 'ի Նաբուգոդոնոսորայ, որ աւերեալ մատնեցաւ յայրումն հրոյ. և գերեցաւ Իսրայէլ. Դ. Թագ. ԻԵ. 9։ Երկրորդ շինութիւն եղև 'ի Զօրաբաբելէ և յԵբրայեցւոց 511 ամօք

Նախ քան զՔրիստոս . Բ . Մնաց . Զ . 18 : Եւ շի-նեցաւ ամս 46 . « Զքառասուն և զվեց ամ շինեցաւ տաճարս այս » . Յովհ . Բ . 20 : Զոր տեսեալ ծերոց ընդ զանազանութիւն առաջնոյ շինութեանն . և երկրորդին՝ լային . զի անշուք էր . Բ . Մնաց . Գ . 12 :

Սոյն նախ քան զՔրիստոս 172 ամաւ աւե-րեցաւ յԱնտիոքեայ , և մնաց աւերակ : Սոյն յամի աշխարհի 5186 . մեծն Հերովդէս կամե-ցաւ նորոգել զտաճարն Երուսաղէմի , առ ի սի-րելի ընծայելոյ զինքն ազգին Հրէից , և ցու-ցանելոյ թէ իցէ Մեսիայ . Ի պատմ . Հայ . Ա . հատ . յերես 276 : Իսկ ոմանք թէ՝ քակեաց Հերովդէս ՚ի հիմանց զտաճարն . և շինեաց մեծ քան զա-ռաջինն , այսինքն քան զերկրորդ շինութիւնն . այլ ոչ մնաց ինչ ՚ի շինութեանց Սողոմոնի , բայց միայն սրահն՝ որ կոչիւր գեղեցիկ . Գործ . Գ . 2 : Եւ կամ կոչիւր Սողոմոնի՝ զարմացեալք . Գործ . Գ . 11 :

Յամի աշխարհի 5198 . Թագաւորէ Աբգար ՚ի վերայ Հայոց , ՚ի մուտ յերկրորդ ամի թա-գաւորութեան նորա ծնաւ Յիսուս փրկիչն մեր ՚ի սուրբ կուսէն Մարիամայ ՚ի Բեթղեհէմ քաղաքի , և այլն :

Յաղագս գալստեան կնոջն Աբգարու արքային մերոյ Հեղինէ Լագոռակայն յԵրուսաղէմ, և ընծայութեան որբոց մատուցանող 'ի Տնօրինական տեղեան Քրիստոսի, և գործոյ բարեպաշտութեան, և մահուանն և գերեզմանի նորա:

Յամի Տեառն 1853. յամսոյն Յունիսի, մինչ ելեալ 'ի Դերջանու և 'ի կարնոյ՝ չուեալ դիմեալ գայաք յԵրուսաղէմ. յաջողութեամբ Տեառն՝ եկեալ հասաք 'ի քաղաքն Հարգան, որ է հոռճն. և 'ի վանս սրբոյն Յակոբայ Մծբնայ սքանչելագործ հայրապետին՝ օթևանս կալաք անդէն զաւուրս մետասան. յաւուր միում կամեցաք փափաքանօք մտանել 'ի գրատունն նորին: Ըստ հրամանաւ Պետրոսի արհի եպիսկոպոսի հեզահամբոյր առաջնորդին, Գրիգոր վարդապետ ձեռնասուն նորին առեալ զմեզ՝ եմոյծ 'ի գրատունն. և մեր որոնեալ և քննեալ զամենայն գրեանս, յորում բազում ձեռագիրս գտաք հնագոյն և աղճատեալ գրովք, որ ոչ էր մարթ ընթեռնուլ: Ապա գտաք տետրակ իմն առանց թղթահամարոյ բաղկացեալ քսան և ինն մագաղաթեայ թղթով, որոյ սկիզբն և վերջն պակաս. և սկզբնատառքն էին կարմրագրով, և 'ի ներքոյ նորա կարգ մի ամբողջ կապուտակ հին բոլորագրով. իսկ 'ի լուսանց հինգերորդ թղթոյն գրեալ կարմրագրով թէ Թարգմանեալ յԱսորոց 'ի Հայ լեզու յընտիր գաղափարէ, յաւուրս Գրիգորի Մագիստրոսի, և որդւոյ նորա Գրիգորի վկայասէրի՝ որ է Վահրամ, 'ի քաղաքն Սիս, յորմէ այսչափ ինչ կարացաք օրինակել:

« Ամենաքարեպաշտ և գթածասիրտ մեծ
» թագուհին Հեղինէ կինն Աբգարու թագա-
» ւորին Մերոյ և Ասորոց, հրաժարեալ յամե-
» նայնէ, և 'ի բաց լքեալ թողեալ զփառս վայ-
» ելչութեան պետութեան իւրոյ և աշխարհի.
» գնայ յԵրուսաղէմ յամի Տեառն քառասուն
» և երկու. յըսկիզբն ամսոյն Մայիսի: Եւ էր
» յԵրուսաղէմ և 'ի սահմանս նորա սով մեծ.
» վասն որոյ ետ զգանձս իւր ամենայն, և գը-
» նեաց կերակուր յԵգիպտոսէ, և 'ի Կիպրոսէ,
» և յայլ տեղեաց, որովք կերակրէր զամենե-
» սեան՝ որք առ նա դիմէին. և տիկինն Հեղինէ
» առատագութ սրտիւ բաշխէր, ոչ ինչ խտրե-
» լով զհրէայս և զհեթանոսս 'ի հաւատացե-
» լոցն . . . . որոյ յաւգնութիւն եհաս մեծ
» զաւրավարն Խուրան. որում հաւատարմաբար
» ծառայէր մինչ 'ի մահն իւր: Եւ յետ հինգ-
» երորդ ամի կացութեան իւրոյ յԵրուսաղէմ.
» մինչ լինէր առատութիւն կերակրոյ, և վերա-
» նայր սովն 'ի հրէաստանէ և յԵրուսաղէմէ.
» ձեռն արկ և սկսաւ պարապել 'ի շինութիւն
» մատրանաց: Նախ ձեռն էարկ շինել մատրան
» իմն՝ մեծամեծ քարամբք բրգաձև 'ի վերայ
» շիրմին Քրիստոսի: Եւ այլ փոքր մատրան ինչ
» 'ի լեառն ձիթենեաց 'ի վերայ սուրբ Ոտնա-
» տեղւոյն Քրիստոսի: Նա շրջապատեաց քա-
» րամբք զսուրբ Այրն ծննդեանն Քրիստոսի որ
» 'ի Բեթլեհէմ քաղաքի. և սուրբ Մօրոյն, յո-
» րում եդաւ մանուկն Յիսուս խանձարրապատ:
» Եւ հուսկ ուրեմն ետ յաւրինել կամար մի 'ի

« վերայ շիրմի Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն
« Զեբեդեայ . . . ուր սահեալ այց ելանէր առ
« սուրբ կոյսն մայրն Յիսուսի մերձ 'ի վերնա-
« տունն Սիովնի . . . : Եւ յետ յեւթներոր-
« դում ամի կացութեան, վախճանի անդ . և
« Թաղի առաջի դրանն Երուսաղէմի, որ 'ի հիւ-
« սիսակողմն քաղաքին, զկնի երկրորդ ամի վե-
« րափոխման սուրբ Կուսի մաւրն Յիսուսի . 'ի
« Սեպտեմբեր ինն » :

Այսչափ ինչ կարացաք հաւաքել անտի :
Տես, զորմէ գրեն Եւսեբիոս Բ. 12 : Եւ Խոր-
ենացի, Բ. Հատ. Գլուխ 32 : Ի պատմութիւն
Հայոց, Ա. Հատ. յէր. 296. 589 : Վարք սրբոց,
յէրես 984 :



## Յաղագս Գերեզմանի Թագուհւոյն Հեղինէի :

ՀԵՂԻՆԷ կինն Աբգարու Թագաւորին մե-
րոյ գնաց յԵրուսաղէմ, յամի Տեառն 42. յա-
ւուրս Կղաւդեայ կայսեր . յայնմ ժամանակի
եղև սով սաստիկ յԵրուսաղէմ ըստ նշանակե-
լոյն Ագաբոսի, Գործ. ԺԱ. 28 : Սա տուեալ
զամենայն գանձս իւր . գնեաց ցորեան յԵգիպ-
տոսէ և 'ի Կիպրոսէ բազում յոյժ, և բաշխեաց
կարօտելոց :

Եւ 'ի մեռանելն նորա, Թաղեցին զնա փա-
ռօք առաջի դրանն Երուսաղէմի իբր բարեբար
ազգաց . շինեալ նմա շիրիմ նշանաւոր, որպէս

յիշէ Եւսեբիոս և Խորենացի, թէ գոյր այն չիրիմ մինչ 'ի ժամանակս իւրեանց. քանզի Խորենացին ականատես իսկ է։ Գրէ և Թովմաս Արծրունի, յերես 82. թէ Հեղինէ Թագուհի կին Աբգարու, և մեծ զօրավարն Խուրան Արծրունին վախճանին յԵրուսաղէմ...։ Նա այն Խուրան է զոր Աբգար առաքեաց բաղում զօրօք 'ի վերայ Հերովդէի. և պարտեաց զնա, և զզօրս նորա. Խորէն. Գիրք Բ. Գլուխ 28։

Մարինոս Լատինացի գրէ յառաջին գիրս, 'ի վերջ չորրորդ գրոցն. Հեղինէ կին Իզաթիոսի Թագաւորին Ատիպիանացւոց գաւառին եղելոյ անդր գետոյ Եփրատայ... ցանկանալով տեսանել զփառաւոր տաճարն Սողոմոնի. չուեաց յԵրուսաղէմ ընկերութեամբ սակաւ ինչ ընդ որդւոյ. հեթանոս արդէն եղեալ էր Հրէայ, և այլն... յիշէ զսովին և զցորեանն։ Նոյն ասէ, արդ՝ Մոնոպասոս որդի իւր զոսկերս մօր և եղբօր 'ի միասին առաքեաց յԵրուսաղէմ, հրամայելով թաղել 'ի փառաւոր գերեզմանի. զոր մայր իւր շինեալ էր հեռի յԵրուսաղեմէ երեք ասպարիզօք...։ Ի հիւսիսային կողմն սորայ Քաղաքին. որովհետև մերձ դնէ գերեզմանաց Թագաւորաց, որ կոչի այր Թագաւորաց։ Նոյպէս գրէ Ատրիգոմինոս, յերես 263։ Նա այլուր 'ի գիրս իւր յիշէ Մարինոս, թէ գերեզմանն Հեղինէի է երեք մղոնաւ հեռի 'ի դրանէ Դամասկոսի, 'ի հիւսիսակողմն քաղաքիս Երուսաղէմի. ուր գտան յաւխտ Լատինք։

Բայց ոմանք աւանդութեամբ ասեն թէ՝

գերեզման Հեղինէի է 'ի ներքս պարսպին Երուսաղէմի, 'ի ձախմէ դրանն Դամասկոսի դեպ յարեւելս 'ի բարձր տեղւոջ. յորոյ վերայ հնաշէն հոյակապ մզկիթ մի է. բայց չերեւի ստուգութիւն նորին. այլ սակաւ ինչ հաւանական երեւի բան Մարինոսի. բայց եւ առեմ, չէ յայտնի գերեզման նորա: Յամի Տեառն 70. կործանեցաւ 'ի Տիտոսէ Վեսպիանոսէ: Ի գերութեան Երուսաղէմի առ Տիտոսիւ. քարինք տաճարին աղաղակէին թէ, գնամք աստի գնամք, եւ այլ ոչ եւս դառնամք: Տես, 'ի Վարս սրբոց: Ի Պատմութեան Հայոց:

Յետ աւերմանն Երուսաղէմի առ Տիտոսիւ, Հրէայք ժողովեալ բնակեցան յԵրուսաղէմ, եւ դարձեալ ապստամբեցան 'ի Հռովմայեցւոց, յամի Տեառն 122. Ադրիանոս կայսրն՝ որ էր եղբօրորդի Տրայիանոսի Սպանիացւոյ. եկն յԵրուսաղէմ եւ կոտորեաց զՀրէայս. եւ զմնացեալսն ցիր եւ ցան արար. եւ զաւերս քաղաքս պարսպեաց զաւերեալն 'ի Տիտոսէ. եւ հրամայեաց Քրիստոնէից բնակիլ անդ՝ եւ ոչ Հրէից. եւ զլեառն Գողգոթայ զտեղի չարչարանացն Քրիստոսի, որ յառաջ արտաքոյ քաղաքին պարսպէն էր, զայն էառ 'ի մէջ քաղաքին. եւ գրեաց խրատիւ պատուէր ոչ նեղել զոք 'ի հաւատացելոց քրիստոնէից. եւ զքաղաքն կոչեաց յիւր անուն Հելիոսպոլիս. քանզի մականունն Ադրիանոսի կոչէր Հելիոս: Ի պատմութեան Հայոց, յերես 73: Եւ կոչեցեալ՝ Էլիա Քաբիթօլինայ:

Ապա յետ 57 ամի Տիտոսի, Ադրիանոս երկ-

րորդ՝ քակեաց զտաճարն, և ընկէց զքարինս նորա 'ի ձորն Յովսափաթու .

Սարկնոս ասէ . մինչ Ադրիանոս երկրորդ՝ եառ զԵրուսաղէմ և աւերեաց զամենայն, կանգնեաց զարձանն Թամուզայ 'ի Բեթղեհէմ 'ի վերայ Մսրոյն, ուր եղաւ Յիսուս փրկիչն մեր . և արձանն Լուսնթագին 'ի սուրբ Գողգոթայ 'ի տեղւոջն խաչելութեան . և արձանն Հրատին 'ի վերայ կենսատու Գերեզմանին Տեառն, առ 'ի բառնալ զյիշատակ չարչարանացն Քրիստոսի ։

Եւ յամի Տեառն 327 . մեծահաւատ Թագուհին Հեղինէ մայրն Կոստանդիանոսի կայսեր եկեալ յԵրուսաղէմ, եգիտ զփրկական խաչն Քրիստոսի., և եբարձ զկուռսն, և շինեաց զեկեղեցիս 'ի սուրբ Տեղիսն տնօրինականաց ։

Յամի Տեառն 361 . մինչ Թագաւորեաց ուրացողն Յուլիանոս, կանգնեաց վերստին ըզպատկերս կռոց 'ի սուրբ Գողգոթայ և 'ի գերեզմանի Տեառն . և ետ հրաման Հրէից շինել զտաճարն . 'ի փորել հիմանցն՝ ել հուր, և այրեաց զշինողս նորա, և զամենայն նիւթս . և ոչ մնաց ինչ նշան 'ի հնոյն . բայց միայն սակաւ ինչ 'ի պարսպէն՝ 'ի յանկեանն, որ առ արևելս և առ հարաւ, որ հանդէպ Սելովամայ, որ կայ դեռ մինչև ցայսօր ժամանակի ։

Աստ կատարեցաւ բան մարգարէութեան Տեառն մերոյ թէ՝ « Եւ յատակեսցեն զքեզ և զորդիս քո 'ի քեզ . . . փոխանակ զի ոչ ծաներ զժամ այցելութեան քո » . Ղուկ . ԺԹ . 44 ։ Մարկ . ԺԳ . 2 ։

Յամի Տեառն 614. Խոսրով Աբրուզ կոչեցեալն արքայն Պարսից, որ կոչիւր Խոռեմ Ռոզման կամ Շահվարազ. առաքեաց զփեսայ իւր Եռազմայուզան զԽոռեմ և էառ զԵրուսաղէմ. զոր աւերեալ կոտորեաց զյիսուն և եօթն հազար անձինս 'ի բնակչացս, և գերեաց զերեսուն հազար անձինս, ընդ որս և զՋաքարիա պատրիարգն՝ և զխաչն կենարար. և տարաւ առ Խոսրով արքայն *:

Եւ յամի Տեառն 625 կամ 627. Հերակլ կայսր դարձոյց զխաչն 'ի գերութենէն. և բերեալ զայն մեծաւ հանդիսիւ՝ եդ 'ի սուրբ Գողգոթայ 'ի տեղւոջ իւրում:

Յամի Տեառն 717. և Տաճկաց ՂՎ, Օմար ամիրապետն Տաճկաց, Խաղփայ կոչեցեալն, որդի Խաղփայոյ, որ երրորդ էր զկնի Մահմէտին. ըստ ոմանց յամի Տեառն 637. շինեաց Եօմէր զտաճարն, և որդի Մերվանայ Աբդիւլ Մելէք շքեղացոյց զարդուք զմզկիթն, և կոչեն Էլ Ակսայ, այս է ծայր կամ եզր Մէսճիտէ Աքսայէի, առ 'ի որոշել 'ի միւս շինուածոյն քեապէին. ասի և այլուր թէ՝ Սա նորոգեաց զտաճարն Սողոմոնեան. քան-

* Սեբէոս ԻԴ. յերես 130. Ասողիկ Խոսրով: Մարգաց 19. զկնի տասն աւուր զառնլի առին Պարսից զօրքն զԵրուսաղէմ. Թիւ սպանելոցն տասն և եօթն հազար, և գերի վարելոցն երեսուն և հինգ հազար. ընդ որս և զՋաքարիա հայրապետն. և զխաչափայտն և զփայտն կենաց գերի վարեցին, և այլն: Եւ Մոդեստոս երէցն կարգի առաջնորդ յԵրուսաղէմ. և գրէ Նամակ 'ի սուրբ Էջմիածին առ Տէր Կոմիտաս կաթողիկոս:

Ըստ Սեբէոս ԻԹ. յերես 187. Հերակլոս կայսրն դարձուցանէ զսուրբ խաչն՝ և բերէ յԵրուսաղէմ, և այլն:

բորդ՝ քանդեաց զտաճարն, և ընկէց զքարինս նորա ՚ի ձորն Յովսափաթու․

Մարկիոս ասէ․ մինչ Ադրիանոս երկրորդ՝ եառ զԵրուսաղէմ և աւերեաց զամենայն, կանգնեաց զարձանն Թամուզայ ՚ի Բեթղեհէմ ՚ի վերայ Այրին, ուր եղաւ Յիսուս փրկիչն մեր․ և զարձանն Լուսնթագին ՚ի սուրբ Գողգոթայ ՚ի տեղւոջն խաչելութեան․ և զարձանն Հրատին ՚ի վերայ կենսատու Գերեզմանին Տեառն, առ ՚ի բառնալ զյիշատակ չարչարանացն Քրիստոսի։

Իսկ յամի Տեառն 327․ մեծահաւատ Թագուհին Հեղինէ մայրն Կոստանդիանոսի կայսեր եկեալ յԵրուսաղէմ, եգիտ զփրկական խաչն Քրիստոսի, և եբարձ զկուռսն, և շինեաց զեկեղեցիս ՚ի սուրբ Տեղիսն անօրինականաց։

Յամի Տեառն 361․ մինչ Թագաւորեաց ուրացողն Յուլիանոս, կանգնեաց վերստին ըզպատկերս կռոց ՚ի սուրբ Գողգոթայ և ՚ի գերեզմանի Տեառն․ և ետ հրաման Հրէից շինել զտաճարն․ ՚ի փորել հիմանցն՝ ել հուր, և այրեաց զշինողս նորա, և զամենայն նիւթս․ և ոչ մնաց ինչ նշան ՚ի հնոյն․ բայց միայն սակաւ ինչ ՚ի պարսպէն՝ ՚ի յանկեանն, որ առ արեւելս և առ հարաւ, որ հանդէպ Սելովամայ, որ կայ դեռ մինչև ցայսօր ժամանակի․

Աստ կատարեցաւ բան մարգարէու[illegible] Տեառն մերոյ թէ՝ «Եւ յատակեսց[illegible] զորդիս քո ՚ի քեզ․․․ փոխանակ[illegible] զժամ այցելութեա[illegible]
Ղուկ․ ԺԹ․ [illegible]

զի եկն ծանաւ զօրօք յԵրուսաղէմ, ուր կառուց զտաճարն ութանկեան, զոր վայելեցին ամս 450։

Ի յետագիրս ինչ գրեալ ի Սոփրոնիոս Գէորգ դպրէ, յորում ժողովեաց համառօտ ինչ զոր ունիմք ստուգել յայլոց։

Մինչ յամի Տաճկաց 15 Էօմէր Խաղտապ, կամ որդի Խաղտապայ եկն և էառ զԵրուսաղէմ. նախ գրեալ յետակար, և ետ Սոփրոնիոս պատրիարգին, և ապա բացեալ զդուռն քաղաքին Երուսաղէմի, և ՚ի ներքս մուծեալ զզօրս իւր, նախ եմուտ և բազմեցաւ ՚ի գաւիթ սրբոյ Յարութեան տաճարին, և յեկեղեցին ոչ կամեցաւ աղօթս առնել ըստ իւրում դենին, զի մի յապագայս ազգն իւր յափշտակեալ ինքեան իւրացուսցէ։ Ապա առեալ Սոփրոնիոսի զԷօմէր՝ մուծանէ յեկեղեցին Կոստանդիանոսի, և ՚ի նմա և ոչ աղօթեաց՝ յայն միտս. այլ ՚ի վերայ աստիճանին. վասն որոյ ետ յետակար մուրհակի առ Սոփրոնիոս, զի մի ոք իշխեսցէ ՚ի Տաճկաց՝ կալ յաղօթս հանդիսիւ ՚ի վերայ աստիճանին այնուրիկ, այլ մի զկնի միոյ. և մի եզան կարդասցեն անդ ՚ի ժամ աղօթից։ Ապա ասէ ցՍոփրոնիոս պատրիարգն. արդ՝ իրաւունս կալցես, զի տացես ինձ տեղի մի, յորում կառուցից աղօթանոց կամ մզկիթ։ Ասէ Սոփրոնիոս բարւոք է. արդ եկ ցուցից քեզ տեղի մի, ուր շինեսցես մզկիթ. կալեալ զձեռանէ Էօմարայ որդւոյ Խաղտապայ՝ կացոյց ՚ի վերայ աղբիւսին, ուր էր աւերեալ տաճարն Սողոմոնեան։ Ահա՛ ասէ տեղի, յորմէ

ձեռնթափ եղեն թագաւորք Հռովմայեցւոց, 'ի շինելոյ զնա. և սա է վէմն՝ յորոյ վերայ խօսեցաւ Աստուած ընդ Յակոբայ. զոր կոչեաց Յակոբ՝ Դուռն երկնից. և որդիքն Իսրայէլի անուանեցին զնա՝ Սրբութիւն սրբոց, ուր և յետոյ շինեաց Սողոմոն զտաճարն, և այլն. Իսրայէլ ունելով զդէմս առ վէմն աղօթէր: Նաժամեայն եւս պեղել զաղբիւրն, և զկուտեալ հողն՝ որ 'ի վերայ նորա բառնալ անտի, երևեցաւ վէմն, որ 'ի լեզու Արաբի կոչի Սախրան՝ պայծառն վէմ. և ոմանք 'ի մեծամեծաց սուլթանին զխօսմէր, շինել զմզկիթն. և զվէմն առնուլ 'ի մէջ որմոյն. բայց ոչ համեցաւ ընդ այն. այլ ասէ, կայցէ վէմն 'ի մէջ մզկիթին.

Ի մուտս մետասան դարուն՝ այն է յամի Տեառն 1011 Էլ Մանսուր Հաքիմի խալիֆէ, 'ի հարստութենէ Ֆատիմեանց Եգիպտոսի. սա եւս կործանել զտաճարն սրբոյ Յարութեան, զի ոչ կարէր հանդուրժել տալ, խաբէութեան կարծեցելոյ հրաշալի հրոյն, զոր ելանել ասէին Յոյնք 'ի Ճրագալուցի զատկին:

Սակայն յետ 37 ամի, Կոստանդին Մոնոմաքոս կայսրն Յունաց. յամի Տեառն 1048, սա այն է՝ որ խնդրեաց զԱնի քաղաքն 'ի Գագիկ արքայէն. ընկալաւ հրաման 'ի Թոռանէ Հաքիմայ վերստին շինելոյ զնոյն աւերեալ եկեղեցին սրբոյ Յարութեան, և զծախսն շինութեան եւս ինքն կայսրն յիւրոց գանձուց, որպէս պատմէ Գուլիէլմոս արհի եպիսկոպոսն Տիւրոսի.

Մեռաւ Սոֆրոնիոս 'ի Դ. ամի պատրիար-

գուԹեան իւրոյ, և մնաց Երուսաղէմ առանց պատրիարգի զամս 29: Նկատ Երուսաղէմ ընդ իշխանութեամբ Տաճկաց, մինչև 'ի Թիւ Տաճկաց ՆՂԳ: Ապա յամի Տեառն 1099 առին Լատինք. մնաց 'ի ձեռս նոցա ամս 88. 'ի Թիւ Տաճկաց ՇՁԳ: Յամի Տեառն 1187, յորում առ եառ զԵրուսաղէմ Իւսուֆ Սալահատին. (ըստ Մարինոսի, քակեաց զզանգակատունն սրբոյ Յարութեան. այլ բազում միջնորդութեամբ Թագաւորաց քրիստոնէից ոչ քակեաց զեկեղեցին.) փոխանակ որոյ նորոգեալ եւ Թագաւորն Հոռոմոց 'ի Ղալաթիայն կոստանդնուպօլսոյ Արապ ճամիսին՝ զի յանուն իւր խութպէ կարդասցին 'ի նմա:

Մնաց մինչ 'ի Թիւ Տաճկաց ՋԻԳ ընդ իշխանութեամբ Եգիպտոսի: Ապա Սուլթան Սէլիմ սպան զԳանսուղաւրի սուլթանն Եգիպտոսի մերձ 'ի Բերիա. առեալ դիմեաց յԵգիպտոս՝ էառ 'ի ձեռաց Տումանպայի սուլթանին, որ էր եղբօր որդի Գանսուղաւրիին, և եկեալ էառ զԵրուսաղէմ. որոյ որդին Սիւլէյման Սուլթան շինեաց զպարիսպն քաղաքիս, և այլն:

Ապա էառ կօԹիֆռատոս 'ի ձեռաց Յունաց յամի Տեառն 1099 զԵրուսաղէմ և զսուրբ Յարութիւնն. ի պատմ. Հայ. Գ. հատ. յեր. 20: Յամի Տեառն 1099. 'ի Յունիսի 5. հասին Լատինք յԵրուսաղէմ քաղաք. և պաշարեալ զաւուրս 40 առին զայն, 'ի Յուլիսի 15, յաւուր Ուրբաթու. և յետ ութ աւուրց կացուցին Թագաւոր Երուսաղէմի զկոնդոպրէ, որ է կօԹիֆռատոս: Ապա որոյ եղբայրն Բաղտին Ա: Բաղտին Բ: Ֆուլք

գօն. Բաղտին Գ. Ալմերիկ. Բաղտին Դ. Հուսկ յետոյ Գուիտոն Լուսինեան, յորմէ էառ զԵրուսաղէմ Իւսուֆ Սալահատին, յամի Տեառն 1187.

Ի պատմութիւն Հայոց. Գ. հատ. յեր. 184. Սա էր որդի Եուբայ ուրումն 'ի Դուին քաղաքէ, որ եկն առ Նուրետին ամիրայն Թերիոյ, և կարգեցաւ նմա զօրավար. և օր ըստ օրէ զօրացեալ տիրեաց երկրին Ասորւոց. դնաց յԵգիպտոս՝ սպանեալ զՍուլթանն և նստաւ անդ.... Նա և Ռէմունդ կոմս Տրապոլսոյ՝ որ էր ազգաւ Լատին, եղև օգնական Սալահատինայ, և էառ զԳաղղոմայրդ՝ որ է Աքեայ. զԱսկաղոն, զԼաւոդիկէ. և եկեալ կալաւ զարքայն Երուսաղէմի զԳուիտոն և զմեծամեծ իշխանս ընդ նմա. ապա բաղում պարգևօք և տրօք հաղիւ ուրեմն արձակեաց զնոսա. Նա ապա կալաւ զքաջ զօրավար նորա Ռենալդոս, և սպան զնա. և հուսկ յետոյ էառ զԵրուսաղէմ, յամի Տեառն 1187. և Հայոց՝ ՈԼԶ. տիրեցին Լատինք Երուսաղէմի զամս 88.

Գրէ Մարինոս Թէ՝ արքայն Կօթիֆաւստոս էառ զԵրուսաղէմ 'ի Տաճկաց, և շինեաց ըզկանոնիկոս մի. և մերձ նմա կանգնեաց պալատ մի հոյակապ, յորում եդ զխաչակիր զօրսն. և մնաց ընդ իշխանութեամբ Լատինացւոց ամս 88. տես 'ի պատմութիւն Հայոց, Գ. հատ. յեր. 184.

Ըստ Վահրամայ Ռաբունւոյ 'ի ժամանակի առմանն Երուսաղէմի, յամի Տեառն 1099. անդ գտաւ և մեծն Գրիգոր վկայասէր՝ որ կոչիւր

Զանհրամ, որ կոչին անգամ զնացեալ էր 'ի սուրբ տեղիս վասն ուխտի. 'ի պատմութիւն Հայոց. գ. հատ. յեր. 20: Մեր երգեաց զՀարաւականս, ձէ. զխորհուրդ անձառն. և դէ. զՄեծահրաշն:

Այժմ որպիսի՞ իցէ տաճարն Սողոմոնեան, և ի՞նչ ի՞նչ պէ-տանք 'ի նմա:

Երկայնութիւն գաւթի տաճարիս 'ի հիւսիսոյ առ հարաւ է 650 կանգուն. և յարևելից առ արևմուտս լայնութիւնն է 440 կանգուն:

Տաճարն է ութանկեան, կառուցեալ 'ի վերայ քառակուսի սեանց. որոյ գմբէթն յեցեալ կայ 'ի վերայ ութից սեանց, և որմն նորին 'ի ներքուստ և յարտաքուստ յախճապակեայ գունագոյն քարամբք զարդարեալ, և ունի չորեսին դրունս՝ 'ի չորս կողմունս: Ներքոյ գմբէթին 'ի կեդրոն տաճարին գոյ մեծագոյն վէմ մի՝ զոր Մուալլագ Թաշը անուանեն, միով կանգնաւ բարձր է 'ի յատակէն. յորոյ վերայ արկանի ծածկոյթ ազնիւ, և 'ի ներքոյ նորին է այր մի խորագոյն յոյժ. յոր իջանէ 15 աստիճանաւ, որոյ դուռն հայի ընդ հիւսիս, և մտանէ 'ի հարաւ. որոյ բարձրութիւն 'ի յատակէ այրին մինչ 'ի վէմն է երեք կանգուն, (զկանգունն իմա 24 մատնաչափ). և առ հարաւն ունի Մէհրապ. որոյ երկայնութիւնն է 20 կանգուն, և լայնութիւնն 16. յոր մտեալ 'ի վերայ երեսաց

համբուրելով պատուեն զայն ։

Եւ զպատճառս զայս Սանկրաթուլլահ անուանեն, այսինքն Տաճար Աստուծոյ ։ Նա 'ի ներքս 'ի խորանի անդ դնիւր Տապանակ ուխտին, որ կոչիւր Սրբութիւն սրբութեանց ։ Եւ ըստ ոմանց՝ Սախրաթուլլահ, այսինքն Վէմ Աստուծոյ. զոր Յակոբ կանգնեաց յետ տեսլեանն. Ծննդ. իԸ. 17, 18 ։

Եւ մերս տաճարն, զոր մեք այժմ Սրբութ̃ սրբութեանց կոչեմք. Բ. Մնաց. Գ. 8 ։ Եւ նորա անուանեն Հարէմի Շէրիֆ, և Արապք Էլ Աքսայ. սա ունի զդրունս չորս ընդ արևելս, և զերկուս առ արևմուտս, և զերկուս առ հիւսիս. ութն դրամբք մտանեն և ելանեն. զսա պահեն յարգանօք, և 'ի մեծի աւուրս Պայրամից, և յայլ աւուրս մտանեն անդ յաղօթս, կարծի յոմանց՝ թէ Տապանակ ուխտին աստ եղաւ, բայց չէ հաւանական ։ Ի սմա է քարն կոխեալ ոտին Քրիստոսի՝ զոր տարեալ են 'ի Համբարձման լեառնէն, որոյ երկայնութիւնն է չորս կանգուն, և լայնութիւնն նոյնչափ, և վանդակապատ պահեն. (Քանզի քարն կոխեալ ձախ ոտինն միայն կայ անդ 'ի սուրբ Համբարձման տեղւոջն՝ մինչև ցայսօր ժամանակի ։) Եւ 'ի նմա է Մէրհապ՝ յոր մտեալ աղօթեն ։ Եւ կայ 'ի նմա գերեզման մի. զորմէ ոչ կարացաք տեղեկանալ, բայց թուի ինձ՝ թէ Սա է գերեզման Զաքարիայ որդւոյ Բարաքեայ. Ղուկ. ԺԱ. 51. որ սպանաւ 'ի մէջ Տաճարին և սեղանոյն ։ Եւ կամ Ազարիասի որդւոյ Յովիդայեայ ։

Եւ 'ի ձախմէ տաճարիս կից պարսպին՝ առ

հարաւ մերձ իրերաց իբր հինգ կանգնաւ հե-
ռի 'ի միմեանց, մեծութեամբ և բարձրութբ
հաւասար. գոյ կրկին գմբէթ քարաշէն, որք
արտաքուստ դիւրաւ երևին 'ի ճանապարհէն՝
որ գնայ 'ի Գեթսեմանի, կամ 'ի ձորն Յովսա-
փաթու:

Ի ներքոյ գմբեթիցս գոյ տեղի մի 'ի ձև սանդ,
և միով դրամբ ամփոփեալ, և խորագոյն յոյժ,
ընդ որ իջանէ 26 աստիճանաւ 'ի յատակն՝ ուր
գոյ հանգոյն օրօրոցի քար մի, որոյ մէջն փո-
րեալ կայ իբր մարդաչափ. զոր կոչեն Պէշիկ իսայի
այսինքն օրօրոց Քրիստոսի: Այսր արտաքին եր-
կայնութիւնն է կանգուն մի և 3 մատն, միջի
երկայնութիւնն է կանգուն մի և 11 մատն, և
թանձրութիւնն 4 մատն և կէս. արտաքին լայ-
նութիւնն կանգուն մի և 9 մատն, և միջին լայ-
նութիւնն կանգուն մի.

Այն տաճարի արևելեան դրան՝ ընդ որ ե-
մուտ Յէրն մեր յաւուր փառաւորեալ Գալ-
ստեան, և Ծաղկազարդին, 'ի վաղուց անտի քա-
րուկիտով ամփափակեալ կայ մինչև ցայսօր. որոյ 'ի
յետոյս դրանն է կամար հոյակապ և առաւել գե-
ղեցիկ, կառուցեալ 'ի վերայ երկուց կարմրա-
գոյն քարեայ սեանց, յորոց վերայ են կրկին հնա-
շէն սենեակք: Յաջմէ տեղւոյս առ հիւսիս իբր
քարընկէց մի հեռի, գոյ և այլ գեղեցկակերտ
գմբէթ մի, զորմէ ասեն թէ՝ Աթոռ դնիւր ա-
թոռն Սողոմոնի արքային, ուր նստեալ յատեա-
ղօթից բաշխէր: Ասի իմն՝ թէ վէմս այս՝ որ
կայ 'ի տաճարին, է սեղան Դաւթի, որ էր 'ի

կալն Որնայի. յորոյ վերայ եհան զողջակէզ։ Եւ առաքեաց Աստուած զհրեշտակ յԵրուսաղէմ սատակել զնա . . . եւ հրեշտակն Տեառն կայր 'ի կալն Որնեայ Յեբուսացւոյ, համբարձ զաչս իւր Դաւիթ, եւ ետես զհրեշտակն Տեառն, զի կայր 'ի մէջ երկնից եւ երկրի, եւ սուրն իւր ձգեալ 'ի ձեռին իւրում, եւ կարկառեալ 'ի վերայ Երուսաղէմի։

Ապա զղջացաւ Դաւիթ, եւ ծերքն քուրձ ըզգեցան. անկան 'ի վերայ երեսաց իւրեանց եւ հրեշտակն Տեառն ասէ ցԳադ. ասա՛ ցԴաւիթ. զի ելցէ եւ կանգնեսցէ զսեղան Տեառն 'ի կալն Որնեայ Յեբուսացւոյ, եւ շինեաց Դաւիթ անդ սեղան Տեառն. եւ եհան զողջակէզս, եւ վասն փրկութեան, եւ կոչեաց առ Տէր. եւ լուաւ հըրով յերկնից նմա, 'ի վերայ սեղանոյ ողջակիզին, եւ ծախեաց զողջակէզսն, եւ ասէ Տէր ցհրեշտակն դարձո՛ զսուր քո 'ի պատեանս. Ա. Մնաց. ԻԱ. 18։

Եւ յաղագս շինութեան տաճարին, պատուէր ետ Դաւիթ Սողոմոնի որդւոյ իւրում, եւ կոչեաց զՍողոմոն զորդի իւր, եւ պատուիրեաց նմա շինել զտուն Տեառն Աստուծոյ Իսրայէլի. եւ Դաւիթ պատրաստեաց զնիւթս տաճարին։ Եւ ինքն ետ զօրինակ տաճարին. «Ասէ արիք եւ շինեցէք զսրբութիւնսն Տեառն Աստուծոյ մերոյ. տանել 'ի ներքս զՏապանակ ուխտին Տն. եւ զսպասս սրբութեանցն Աստուծոյ 'ի տունն, զոր շինէք անուան Տեառն»։ Ա. Մնաց. ԻԲ. 6։ Նոյ. ԻԲ. 11. 19։

Եւ սկսաւ Սողոմոն շինել զտուն Տեառն յԵ-

րուսաղէմ 'ի լերինն Ամուրհացւոցն, ուր երեւեցաւ Տէր Դաւթի հօր նորա, 'ի տեղւոջ՝ յորում պատրաստեաց Դաւիթ 'ի կալն Ոռնեայ Յեբուսացւոյ. Բ. Մնաց. Գ. 1:

Եւ կատարեցաւ ամենայն գործն զոր արար Սողոմոն 'ի տուն Տեառն . . . հանել զՏապանակ ուխտին 'ի քաղաքէն Դաւթի, նա է Սիոն, և տարան 'ի ներքս Ղևտացիք զՏապանակ ուխտին Տեառն, 'ի տեղին իւր 'ի Դաբիր տանն. 'ի Սրբութիւնսն սրբութեանց 'ի ներքոյ թևոց քերովբէից. Բ. Մնաց. Ե. 4. 7:



Դրունք գաւթին Սողոմոնեան տաճարին:

1. Արեւելեան դուռն՝ որ կոչի պայծառ տաւնձէ, այժմիկն դուռն ողորմութեան. և ըստ ոմանց՝ դուռն ոսկեղէն. որ 'ի վաղ ժամանակաց քարուկրով ամրափակեալ կայ և մնայ:

Հարաւային դրունք:

2. Դուռն կոչի պայծառ ծաղկողէ, որ է մերձ տաճարին Սրբութիւն սրբութեանց:

3. Դուռն մեծ կից յաջմէ վերնոյն, որ կոչի պայծառ դրան: Ընդ որ գնայ 'ի ներքոյ տաճարին: առ որ իջանէ 30 աստիճանաւ. և է նոցա ուխտատեղի. քանզի կայ մերձ դրանն երկաթի անուր մի. զորմէ ասի թէ, մինչ եկն օրէնսդիրն նոցա 'ի տաճարն. անդ կապեաց զձորին. կամ

13. Դուռն մեծ՝ որ է յաջմէ վերնոյն և հանդէպ փողոցի շուկայի Սխանի փարախեցւոյն՝ որ կոչի պապըլ աթէմոյ:

14. Դուռն մեծ՝ որ է մերձ Պրոպատիկէ աւազանին, 'ի հնումն կոչէր դուռն հօտից. ընդ որ մուծանէին զողջակէզսն 'ի տաճարն. սա կոչի պապըլ սըթթի Մէրիէմ, այսինքն դուռն սուրբ Աստուածածնի:

Արժան համարիմ աստ ջնջել զՏապանակ ուխտին, թէ ո՞ւր էջն և յո՞ր վայրի Թաղեցաւ:

Վկայն պայծառ իմն աստ 'ի դերս, Բ. Մակ. Բ. Ե. "Եւ եկն եհաս Երեմիա մարգարէ 'ի տեղի անդր, և անդ եգիտ այրս ամուրս անտառախիտս, զմրան ժամուն, և զՏապանակն կտակարանաց՝ և զսեղանն խնկոց անդ տարեալ դնէր 'ի ներքս, և զդրունսն ինքնին առ արկանէր ": Եւ ըստ մեկնչաց ասի, տարաւ 'ի Նաւբա յայնկոյս Յորդանանու՝ Թագոյց յանտառախիտ այրին: Ի տեսութի սուրբ Գրոց, Գ. հատ. յեր. 394: Յորմէ առնու Սէջլն Պօղոս Պատրիարքն, և գրէ 'ի Ջանազանութե հինգ դարուց, Բ. հատ. յերես 459: Եւ Ցայսմաւուր, Օգոստոս հինգ: Եւ 'ի գերելն Ասորւոց զերուսաղէմ, էառ Երեմիա մարգարէն զտապանակն, և տարեալ 'ի Սինայ, եդ 'ի վէմն 'ի մէջ երկուց լերանց, և այլն: Յայս միտ խօսի և Գրիգոր Տաթևացին՝ Հարցմանց, յերես 345:

Յաղագս ուխտագնացութեան 'ի սուրբ Երուսաղէմ, վկայութեամբ Հին և Նոր Կտակարանաց սուրբ Գրոց ։

Ի բնական օրէնսն հրամայեաց Աստուած Աբրահամու ասելով, « Ե՛լ դու յերկրէ քումմէ, և յազգէ քումմէ, և 'ի տանէ հօր քո, և եկ յերկիր՝ զոր ցուցից քեզ ». Ծննդ. ԺԲ. 1 ։

Եւ եկեալ Աբրահամ գնաց յերկիրն Աւետեաց, որ է Պաղեստին, կատարելով զհրամանն Տեառն. և կամեցաւ զենուլ զորդին իւր զԻսահակ վասն սիրոյն Աստուծոյ. Ծննդ. ԻԲ. 12 ։

Նոյն եկեալ Յակոբայ աստ, և ետես զսանդուղն հաստատեալ յերկրէ յերկինս, հրեշտակք առ մեզ իջանէին և մարդիկ յերկինս ելանէին. ու ասաց ասէր Յակոբ, « Տէր է 'ի տեղւոջս յայսմիկ. և ես ոչ գիտէի ։ Զահի հարաւ՝ և ասէ, ահեղ իմն է տեղիս այս, և ոչ է աս՝ եթէ ոչ տուն Աստուծոյ. և այս է դուռն երկնից ». Ծննդ. ԻԸ. 11 մինչև 20 ։

Ի դրական կամ 'ի գրաւորական օրէնսն՝ պատուիրեաց Աստուած Մովսէսի՝ երիցս 'ի տարւոջն, որպէս գրի՝ Բ. Օրինաց. ԺԶ. 16 ։

« Երիցս ժամանակս՝ 'ի տարւոջ յանդիման լիցի ամենայն արու քո առաջի Տեառն Աստուծոյ քո, 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր. 'ի տօնի Բաղարջակերացն. և 'ի տօնի Եօթներորդացն. և 'ի տօնի Տաղաւարահարացն. և ոչ երեւեսցիս առաջի Տեառն Աստուծոյ քում ունայնաձեռն ».

Նախ 'ի սելով, « Եւ եկեղեցացաւ ամե-

նայն ժողովուրդ որդւոցն Իսրայէլի 'ի Սելով, և կանգնեցին անդ զխորանն վկայութեան ": Յեսուայ. ԺԸ. 1:

Երկրորդն՝ յԵրուսաղէմ 'ի Սիոն, յաւուրս Դաւթի. "Եւ առաքեաց ժողովուրդն 'ի Սելով, և առին անտի զՏապանակ ուխտին ": Ա. Թագ. Դ. 4:

"Եւ տարաւ 'ի ներքս զՏապանակն Աստուծոյ, և հաստատեաց զնա 'ի մէջ խորանին, զոր պատրաստեաց նմա Դաւիթ ": Ա. Մնաց. ԺԶ. 1:

Երրորդ՝ յաւուրս Սողոմոնի, յետ շինելոյ զտաճարին. "Եւ տարան 'ի ներքս Ղեւտացիքն զՏապանակ ուխտին Տեառն 'ի տեղին իւր, 'ի Դաբիր տանն 'ի Սրբութիւն սրբութեանց ": Բ. Մնաց. Ե. 7:

Այլ և ըստ օրինակի Եբրայեցւոց՝ դարձին և հեթանոսք. "Էին անդ ոմանք՝ և հեթանոսք յելելոցն անդր. զի երկիր պագանիցեն 'ի տօնին ": Յովհ. ԺԲ. 20:

Վասն որոյ ասէր երջանիկն Դաւիթ՝ մարգարէական հոգւով. "Անդ ելին ազգք՝ ազգք Տն̃, վկայութիւնք Իսրայէլի, խոստովան լինել անուան Տեառն ": Սաղմ. ՃԻԱ. 4:

Նա և Յիսուս փրկիչն մեր Մարեմաւ մարբն հանդերձ և Յովսեփաւ, երթայր 'ի Նազարեթէ յԵրուսաղէմ կատարել զտօնն. "Եւ երթային ծնողքն նորա ամի ամի յԵրուսաղէմ 'ի տօնի զատկին ": Ղուկ. Բ. 41:

Այլ և զկնի համբառնալոյն Քրիստոսի յերկինս, դարձին և 'ի հեթանոսաց երկիր պագանել 'ի տօնին: Որպէս և ներքինի կանդակայ թագ-

Ահա մեծ քան զտաճարն է աստ. և ահա մեծ քան զՍողոմոն է աստ։ Ահա որ ոք ցանկայ տեսանել և լսել զբանս իմաստութեան ճշմարտին Սողոմոնին Յիսուսի, եկեսցէ և տեսցէ զգործս Աստուծոյ՝ ուր գործեցան խորհուրդք Տնօրէնութեան, ոչ ըստ Եթովպացւոյն. որ եկն 'ի լսել 'ի Նմանէ զբանս, և տեսանել զքարեկարգեալ զգործս նորա. Գ. Թագ. Ժ. 1։ Այլ ըստ Ներքինւոյն՝ ընդունել զշնորհս և զհոգին Աստուծոյ։



Զի՞նչ օգուտ իցէ Ուխտաւորաց գնալ յԵրուսաղէմ։

Առաջին՝ առ յարգելոյ՝ պատուելոյ, և փառաւորելոյ զսուրբ Տեղին Քրիստոսի. զի մինչ արդեամբք յայց ելեալ Տնօրինական տեղեաց Նորին՝ փառաւորեմք, փառաւորէ զմեզ Քրիստոս. ըստ այնմ՝ զփառաւորիչս իմ փառաւորեցից. Ա. Թագ. Բ. 30։

Երկրորդ՝ առ 'ի ստանալ մեզ զշնորհս, որովք պարգևէ մեզ ուղղութիւն վարուց. որով ևս քան զևս առաւելու, և յաւելու 'ի մեզ զհոգևոր փափագն և աշխոյժն գովութեան Աստուծոյ, և օրհներգութեան, և գոհութեան։

Երրորդ՝ 'ի մերձենալն հաւատով և ջերմեռանդն սրտիւ, և արտասուահայց պաղատանօք պատուելով և յարգելով, յառնէ հոգի մեր 'ի մեռելութենէ մեղաց։

Քանզի եթէ դի Եղիսէի մարգարէին յարոյց զմեռեալն իսկ և իսկ. Դ. Թագ. ԺԳ. 21։ Ապա քանի՞ առաւել շնորհն սուրբ տեղեացս Քրիստոսի յարուցանէ զհոգիս մեր 'ի մեռելութենէ մեղաց։

Ահա այր պարգևատու զոր ետես մարգարէն Ամովս. «Եւ ահա այր մի կայր 'ի վերայ Անդամանդեայ պարսպի, և 'ի ձեռին իւրում Անդամանդ». այսինքն ճեվահէր. Ամով. Է. 7։

Այն է Քրիստոս որդին Աստուծոյ, որ էջ յերկնից 'ի յերկիր. և կատարեաց զանճառելի տնօրէնութեան և մարդեղութեան խորհուրդն 'ի սուրբ Երուսաղէմ. պարիսպն է Նորին տնօրինական սուրբ Տեղիքն. իսկ Անդամանդն է շնորհքն, զոր ունի 'ի ձեռին իւրում, և բաժանէ իւրաքանչիւրոց՝ որք հաւատով, և ջերմեռանդն հոգւոյ փափագանօք դիմեն առ նա, յորմէ ընդունեին զշնորհս՝ յուղղութիւն վարուց և գործոց բարեաց, և 'ի թողութիւն մեղաց, և առ 'ի արժանի գտանիլ վերնոյն Երուսաղէմի երկնից սուրբ Արքայութեան, որում արժանի արասցէ զամենեսեան։



բոց՝ է տուն Սիմոնի խաղախորդի, կից նմա գոյ հին մզկիթ մի, զորմէ ասի աւանդութեամբ, թէ այն է տուն Սիմոնի խաղախորդի, ուր և առաքեալն Պետրոս եկաց անդ աւուրս բազումս, և աստի կոչեցաւ, և ելեալ գնաց 'ի Կեսարիա. Գործ. Թ. 43:

Իսկ 'ի հարաւակողմն Յոպպէու յեզր ծովուն է տեղի սեանն՝ յորում կապեաց մեծազգի հաւատացեալ կինն զանգլուխ մարմին Յակոբայ մեծի առաքելոյն, զոր կամէր տանել 'ի Սպանիա. Յայսմաւուրք, 'ի Դեկտեմբերի ժամն և ուրն: Բայց տեղին է այժմ աննիշ աններևին: Նաև քաղաքս այս Յոպպէ ունի մի դուռն ընդ արևելս կոյս, ընդ որ պարտին ել և մուտ անանել ամենեքին:



## Նշանելի տեղիք յանդս Յոպպէի:

Ի Յոպպէէ մինչ 'ի Ռէմլէ երեք ժամ է. բայց ելեալ 'ի վանաց մերոց՝ անցանելով 'ի վաճառանոցէ, և ընդ դուռն քաղաքին հանդէպ դրանն գոյ գեղեցկաշէն աղբիւր մի բարեհամ, որ կոչի Մահմուտիէ:

Անցեալ անտի ընդ կամուրջն գնայ ուղղակի առ մեծաշէն 'ի հոյակապ աղբիւրն, որ կոչի Ապու-Նապութի: Նաև ճանապարհ սորա յաջմէ աղբերն գնայ առ հիւսիս 'ի մէջ պարտիզաց է տունն Տաբիթայ բարեպաշտուհւոյն արտաքոյ քաղաքիս. Թէպէտ սա աւերակ է. բայց Յոյնք 'ի մէջ յե-

նանց գնան անդ 'ի պատուել զտեղին, և զգիրս պատմութեանն ընթեռնուլ:

Ի Յոպպէէ հեռի աւելի քան զկէս ժամ 'ի յաջմէ ճանապարհին՝ յեզր պարտիզաց տեսանի բարձր տուն մի, այն է պարտէզ սրբոյ Աթոռոյս, որ ըստ Արաբացւոց պոյարա կոչի, որ և է յիշատակ Արգոյ Հիւպատոսի Հոգելոյս Մուրատ Աղայի Զմիւռնացւոյ: Որ և այս պարտէզ 'ի բազմամեայ ամաց անտի յաւեր փոխեալ, և մանամբ իւիք յափշտակեալ 'ի դրացեաց, և գրեթէ ոչ օգուտ ինչ գործէր սրբոյ Աթոռոյս ըստ ջերմեռանդն դիտաւորութեան բարեյիշատակ Հանգուցելոյն. և այսուհետև իսկ ևս չերևէր յոյս օգտի երբէք ընդունիլ անտի. վասն որոյ խորհրդակցութեամբ Հոգեզգօն Հարց ընդ Ամենապատիւ Սրբազան Պատրիարքի Հօր. և հրաւիրելով 'ի նոյն խորհուրդ՝ զբուն ժառանգն նոյն հանգուցեալ Մուրատ Աղային՝ այսինքն եղբօրորդի նորին Պ. Յակոբն, որ և աւագ Թարգման Աւստրիոյ՝ Երիտասարդ աստուածասէր և ազգասէր. ընդ որում յետ երկար խորհրդածութե թէ վասն օգտի սրբոյ Աթոռոյս՝ և թէ վասն անջնջելի մնալոյ անուան կտակարար Հանգուցելոյն, հաճութեամբ և հաւանութեամբ ամենեցուն նոյն պոյարան ըստ կանոնի խօթիդօթայ՝ հէօճէնի ճէլիլ— փոխանակեցաւ ընդ տան միում, որ է մերձ առ դրանն Դամասկոսի Յերուսաղէմ քաղաքի, յորում է վեց սենեակ՝ երկու մաղազայ՝ երեք ջրհոր՝ և սակաւ ինչ պարտէզ, և տուաւ այժմ 'ի վարձու 'ի յիշատակութիւն անուան

## Յաղագս Լիւդդայ, որ է հանդերձ Ռեմլէու՝ իբր կէս ժամու հեռի։

Աստ առաքեալն Պետրոս յարոյց զութամեայ անդամալոյծն Ենեա. «Էջ Պետրոս առ սուրբսն որք բնակեալ էին ՚ի Լիւդդիայ»։ Գործ. Թ. 38։

Աստ գոյ կառուցեալ եկեղեցի մի հնաշէն՝ յանուն սրբոյն Գէորգայ, որոյ կէսն մզկիթ արարեալ են այլազգիք, և կէսն է ՚ի ձեռս Յունաց. զորմէ ասեն՝ Թէ աստ ծնաւ սուրբն Գէորգ, և ոմանք Թէ՝ աստ մարտիրոսացաւ. գրէ և Մարինոս, ամենայն պատմիչք ասեն՝ Թէ ՚ի Լիւդդայ մարտիրոսացաւ սուրբն. այլ ստուգագոյն երևի գրեալն ՚ի Վարս սրբոց Ջ. հատոր։

«Սուրբ Գէորգ քաջ նահատակն Քրիստոսի
» էր հայրենեօք յաշխարհէն Գամրաց՝ այսինքն
» Կապադովկացւոց. ՚ի սահմանաց Մաժակայ Կե-
» սարիա կոչեցելոյ, զաւակ բարեպաշտ ծնողաց
» յազատ տանէ։ Հայր նորա Գերոնտիոն ասի
» արեամբ նահատակեալ. իսկ մայրն սրբու-
» Թեամբ վախճանեալ ՚ի Պաղեստին, ուր էին
» նորա կալուածք բազում. վասն որոյ և ինքն
» Գէորգ ըստ գրելոյ Անդրէի Կրետացւոյ՝ ծնըն-
» դեամբ էր Կապադովկացի, և սնընդեամբ Պա-
» ղեստինացի....։ Յամի Տեառն 303, յամսեանն
» Ապրիլի 23, յաւուր Ուրբաթու, յեօԹներորդ
» ժամու տուընջեան՝ զկնի զատկին նահատակե-
» ցաւ ՚ի Կեսարիա Պաղեստինոյ։ (Այն է Եափ
» Ղայսէրիէ, որ երկոտասան ժամաւ հեռի է ՚ի
» Ռէմլէու։) Եւ ըստ պատուիրելոյ սրբոյն Գէ-

» որդւոյ՝ ծառայ Նորին Պասիկրատէս բարձեալ
» զմարմին Նորա տարաւ յերկիրն Պաղեստինոյ,
» 'ի քաղաքն Դիոսպոլիս, այն է Լիւդիա. կամ
» ըստ այլոց 'ի փոքրն Հռոմա, որ և Ռամուլա.
» ռամկական Ռէմլէ: Սուրանօր 'ի վանս Ասորւոց
» ցուցեալ լինէին Նշխարք սրբոյն մինչև յերեք-
» տասաներորդ դարս. ուր կայ մինչև ցայսօր
» եկեղեցի Հայոց, յանուն սրբոյն Գէորգայ »:

Այն յիշեալ Ասորւոց վանքն է մերձ սուրբ Գէորգայ վանից մերոյ՝ 'ի կողմն արևմտեան. և է այժմ օճառանոց, այսինքն սապոնխանայ. որոյ կէսն Ասորւոց է և կէսն Յունաց:



Յաղագս ուղւոյ Երուսաղէմի:

Ի Ռէմլէէ մինչ 'ի սուրբ Երուսաղէմ ինն ժամ է:

Բայց յելանելն տէրունական Ուխտաւորաց 'ի Ռէմլէէ՝ պարտին յամենայն կողմէ ըզգոյշ և զգաստ լինել, և 'ի ճանապարհին երբէք ոչ բաժանիլ 'ի միմեանց: Նա և 'ի պատրաստի ունել քանի մի դրամ՝ գուցէ պահանջողք պատահիցին, և կամ ամանաւ ջուր նուիրողաց՝ պարգևս տացի սիրով, և ոչ աղաղակաւ՝ կամ անարգանօք:

Աստի մինչ 'ի գիւղն Քըպապ երկու ժամ է, որոյ բնակիչքն են ֆէլլահք:

Աստի մինչ 'ի Լաթրուն գիւղն մի ժամ է: Ասեն՝ թէ Աստի էր աջակողմեան աւազակն Դե-

ռաջ խաղացեալ, ճանապարհն որ 'ի ձախմէ՝ գը-
նայ 'ի վանս Լատինաց և խփուաց որ յանուն
սուրբ Գէորգայ։ Իսկ ուղղակի ճանապարհն ի-
ջանէ 'ի վաճառանոցն, և գնայ՝ 'ի սուրբ Յա-
րութիւնն։

Իսկ յաջմէ է պատնէշ և ամրոցն Դաւթի, ո-
րոյ հանդէպ դրանն է Նորաշէն ժողովարանն
Անգղիացւոց, որ շինեցաւ յամի Տեառն 1848։

Յաջմէ դրան ամրոցին՝ է դուռն Ձմերա-
նոցին՝ (ղըշլայի)։ Իսկ 'ի ձախմէ բնակութիւնք
ազգիս Հայոց։ Գնալով սակաւ մի՝ տեսանի 'ի վե-
րայ պողոտային կամար մի, յորոյ վերայ կառու-
ցեալ կայ սեղանատուն սուրբ Վանիցս։

Անցեալ 'ի ներքուստ սոյն կամարիս 'ի ձախ-
մէ է Աւագ դուռն սուրբ Յակոբայ վանից.
գեղեցկաշէն կամարակապ, յաջմէ և յահեկէ
նորին խորանարդ անկիւնացեալ. և դուռն հա-
մակ երկաթեայ, և 'ի ճակատ դրան գիր 'ի լե-
զու Արաբացւոց, զոր շնորհեալ է Սուլթանն
Եգիպտոսի՝ որ 'ի ՌՕՀ թուականին Տաճկաց; և
արգելու զամենայն վաղեմի հարստահարու-
թիւնս 'ի Վանիցս սուրբ Յակոբայ, և կնքէ
զբան իւր յանեծս, որ ոք նորոգեսցէ զայս ա-
մենայն արգիլեալ հարստահարութիւնս, անի-
ծեալ լիցի յԱստուծոյ։

Հանդէպ դրանն Վանից են պարտէզք, և
ջրմուղք, և կամարն՝ որ առ հարաւ 'ի վերայ պողո-
տային, է Նորակերտ, հոյակապ վեհարան կամ
Պատրիարքարան, զոր ստորագրեցաք այլուր։

Արդ՝ 'ի մտանելն ընդ դուռն, որոյ յետոյն

'ի ձախմէ՝ է սենեակ դռնապանին, և բազմոց, այսինքն՝ սէկի, յորում նստին եասախճիք. առ ընթեր նորին ևս բազմոց, և ջրոյ չէշմէ՝, յորմէ ըմպեն երթևեկք։ Իսկ 'ի ձախմէ նորին՝ է մեծ փայտեայ դուռն՝ որ մտանէ յարևելս 'ի գաւիթ Եկեղեցւոյն սրբոց Յակոբեանց. բայց ուղղակի գնայ առ հարաւ մինչ 'ի յանկիւնն, անտի դառնայ ընդ արևելս 'ի մեծ գաւիթն. դուռն որ 'ի ձախմէ՝ մտանէ 'ի գաւիթ սուրբ Էջմիածնի. իսկ յաջմէ գնայ 'ի Հոգետունն, որ է լայն և ընդարձակ տեղի, ուր իջանեն տէրունական Ուխտաւորք ըստ սովորութեանն, մինչև պատրաստեսցի իւրաքանչիւրոց յարմար սենեակ։

Բայց ոմանք 'ի լսել զանուն Հոգետան՝ խորշին և գայթակղին, միթէ անդ միայն և եթ իցէ Հոգետուն, իսկ միւս սենեակք ոչ. ոչ ապաքէն բոլոր մենաստանս է Հոգետուն։ Այո՛ սակայն նախնիք մեր ասելով Հոգետուն իմանան տուն հոգնածի՝ կամ աշխատողի. յորում Ուխտաւորք հանգիստ առնուն 'ի հասանել անդ նոցա 'ի ս՟ք Աթոռս։ Իսկ կամ տան մեզ իմանալ թէ՝ այս է տուն հոգևոր և ոչ սոսկ մարմնաւոր՝ ըստ աշխարհիս, ևս և տան մեզ յիշել զհոգիս մեր, որ մեղօք մահացան. իսկ անմահ բնութիւնն եկն յաշխարհս, բնութեամբ մերով մեռաւ 'ի վերայ խաչին, և մեռոյց զմեղս. և յարութեամբ իւրով զՅարութիւն մեզ պարգևեաց՝ 'ի հոգի և 'ի մարմին։ Արդ սիրելիք Աստուծոյ՝ մի տրտմեսցուք և մի խորշեսցուք յանուանէ Հոգետանս. ուր սակաւուրիկ մի ունիմք հանգչիլ իբրև զհիւր որ՝

Ի Ներքոյ սեղանոյս կան երեքին սուրբ քա-րինք վանդակապատ, յորոց մին է 'ի Յորդանան գետոյ, ուր մկրտեցաւ Քրիստոս: Երկրորդն՝ 'ի Թափօրական լեռնէն, ուր Պայծառակերպեցաւ. և Երրորդն՝ 'ի Սինէական լեռնէն, ուր Ա̃Ծ ե-րևեցաւ Մովսէսի, և խօսեցաւ ընդ նմա:

Եւ այն եկեղեցւոյ երկայնութիւնն է 82 ոտ-նաչափ, և լայնութիւնն 19. ուր նստի և կա-նանց խոստովանահայրն ըստ նախնի սովորու-թեանն:

Եւ յետ կատարելոյ անդ Ուխտաւորաց զուխ-տըս, ըստ նախնի Հարցն սովորութեան նստի անդ Դպրապետնկալ վարդապետն Թիքնապահօքն հանդերձ, գրէ մի ըստ միոջէ զանուանս իւրա-քանչիւրոց յականէ յանուանէ, և սիրով և օրհ-նութեամբ ընդունի յանուն սուրբ Գլխադրի նշանադրեալ ողորմութիւնն:

Ապա յետ այնորիկ մտանեն 'ի սուրբ Յակո-բեանց հրաշափառ և փառաւոր եկեղեցին, որ փայլի լուսաւորութեամբ և զարդուք լուսա-փայլ կամարացն հանդոյն աստղալից երկնից, և գնան առաջի սուրբ Գլխադրին, անդ 'ի գու-ճըս անկեալ՝ բազմահայց արտասուախառն պա-ղատանօք, հայցեն 'ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ զթողութիւն յանցանաց, և զշնորհս ողորմութեան, գոհութիւն և շնորհակալութ̃ի մատուցեալ՝ փառօ տան Աստուծոյ բարեխօս ունելով զսուրբ Յակոբ զմեծ Առաքեալն:

Եւ 'ի սուրբ Ստեփաննոսի եկեղեցւոյն՝ բու-ապարանքն այլ շուրջառ՝ և խաչ վարդապետի մի-

ոյ. Սարկաւագն ասէ 'ի ձայն՝ Եւ Նս խաղաղու"։ Վարդապետն, Օրհնութիւն և փառք։ Քահանայն երգէ Շարական, տէ. Որ էնն յէութեան։ Վարդապետն խնկարկէ սուրբ Գլխադրին, և սուրբ Մակարայ, և այլոց կարգաւ. և տայ զբուրվառն 'ի Սարկաւագն։ Այս համառօտաբար ծանուցանէ զհարկաւորն հեռի լինել յամենայն անպարկեշտ վարուց. պատրաստել զանձինս խոստովանութեամբ՝ մաքրութեամբ՝ և սրբութբ՝ առ 'ի ընդունակ լինել շնորհացն Քրիստոսի, և Տնօրինական Սրբազան Տեղեացն։

Ի յաւարտ ծանուցման 'ի ծունկս անկեալ արտասուօք գան 'ի սուրբ Գլխադիր յուխտ, որ է որդին Զեբեթեայ մեծ առաքեալն Յակոբոս, եղբայրն Յովհաննու աւետարանչին, զոր գլխատեաց Հերովդէս Ագրիպպաս չորրորդապետն, 'ի Կեսարիայ Պաղեստինոյ՝ որ է Զաղոն ղեքոք. վեց ժամու հեռի 'ի Յոպպէու, յամի Տեառն 42 կամ 43. Գործ. ԺԲ. 2։ Նոյ սպան զՅակոբոս զեղբայրն Յովհաննու սրով. Ի Վարս սրբոց, Ժ. հատ. յերես 298. 304։ Յայսմաւուր, Փետր. 22. Ն Դեկ. 28։ Որոյ պատուական և սուրբ Գլուխն սքանչելեօք բերաւ առաջի սուրբ Աստուածածնին, Յովհաննու աւետարանչին, և Տեառն եղբօր Յակոբայ արդարոյն, զոր առեալ ձեռօք իւր իւրեանց ամփոփեցին 'ի տեղւոջն յայնմիկ, որ վեցեքին մշտավառ կանթեղօք՝ և միով աշտանակաւ պատուի ընդ տիւ և ընդ գիշեր։

Եւ յետ կատարելոյ Տէրունական Ուխտաւորաց զուխտ և զերկրպագութիւն իւրեանց, եր-

թան աստի 'ի տեղիս իւրեանց ։

Ու յաջմէ սուրբ Գլխադրիս է յատուկ պահարան և եկեղեցի, յորում են երեքին խորանք, աջակողմեանն է յանուն սրբոյն Մինասայ, և ձախակողմեանն սրբոյն Սարգսի, և միջինն՝ սրբոյ Յարութեան ։ Յաջմէ նորին է մատուռն և գերեզման սրբոյն Մակարայ հայրապետին Երուսաղէմի, որ նստաւ յամի Տեառն 328. 335. կամ 340. Ի պատմ. Հայ. Ա. հատ. յերես 422 ։ Ըստ նորին՝ կամ գտանի յաւէտ արանց խոստովանահայրն ։

Ու յաջմէ նորին է դուռն մի՝ ընդ որ ելանէ 22 աստիճանաւ 'ի վեր, 'ի սուրբ Նշանի խորանն, ուր զետեղեալ կայ փայտն կենաց և կենդանատու սուրբ Նշանն, որ է 'ի վերայ Տէրունական պատկերին ։ Ու դուռն մի ևս գոյ 'ի ձախմէ 'ի նոյն պողոտայն, որ մտանէ 'ի սուրբ Առաքելոց եկեղեցին, և 'ի գաւիթ նորին 'ի հարաւակողմն յանկեանն գոյ դուռն մի՝ որ մտանէ 'ի Վերնատունն, յարևելեան յանկեանն է խորան սուրբ Համբարձման ։ և 'ի հիւսիսակողմն դուռն մի՝ որ ելանէ 'ի տանիս ։

Իսկ 'ի ձախմէ սուրբ Գլխադրին՝ է տէրունական սուրբ Պատկերն. որոյ առաջի կայ կճեայ ապխտակ քար մի երկայնութեամբ 10 թզաչափ, և լայնութեամբ 2 ։ Յորոյ վերայ դնի աշտանակ և մշտավառ կանթեղ մի ։

Ի ձախմէ նորին է դուռն հասարակ պահարանի եկեղեցւոյս, որոյ երկայնութիւնն է 28 ոտնաչափ, և լայնութիւնն 33 ։

Աւագ խորանն է յանուն սրբոյն Ստեփաննոսի, յաջակողմեանն՝ սուրբ Լուսաւորչի, ՚ի հիւսիսակողմն առ ընթեր նորին սուրբ Աւագանն. ՚ի յանկեան գոյ գուռն մի՝ որ ելանէ ՚ի մամատուռնն. և ՚ի ձախմէ է սրբոյն Կիւրղի աւագանն, յորում մկրտեաց հարիւր հազար անձինս, յաւուր Երևման սորա խաչին. և մեծ նմա է բաղառուն :

Անդ գոյ ՚ի մեծ հրաշազարդ եկեղեցին, որոյ երկայնութիւնն 73 ոտնաչափ, և լայնութիւնն 56 : Որոյ աջակողմեան խորանն է յանուն սրբոյ Կարապետին. յորոյ վերայ է սրբոյ առաքելոյն Պետրոսի խորանն :

Աւագ խորանն է յանուն սրբոյն Յակոբայ Տեառն եղբայր կոչեցելոյ : Քանզի մարմին սրբոյն Յակոբայ Արդարոյն ամփոփեալ կայ ՚ի ներքոյ հրաշակառոյց Աւագ խորանին. զի յետ համբառնալոյն Քրիստոսի յերկինս՝ սա նստաւ յԱթոռն Երուսաղէմի ամս 20 կամ 30. եղև կատարումն սորա՝ յամի Տեառն 60. յերեսներորդ ամի Եպիսկոպոսութեանն յաւուր զատկի, ՚ի 25 մարտի : Որոյ Աթոռն յաւէտ մշտավառ կանթեղիւ միով պատուի :

Քանզի սրտմտեալ Հրէից վասն քարոզելոյ նորա զՅիսուս Քրիստոս, զրոհ տուեալ ՚ի վերայ սրբոյն, արկին զնա յաշտարակէ անտի ՚ի վայր, ուր և անդէն տոփանաւ Թափչի հարեալ զգլուխ Երանելւոյն՝ սպանին զնա. զի մի լուիցեն զքարոզսն նորա՝ թէ Յիսուս կայ ընդ աջմէ Հօր ՚ի յերկինս, և գալոց է միւսանգամ

փառօք Հօր ընդ ամպս երկնից, առ 'ի դատել զազգս մարդկան ։

Զախակողմեան խորանն է յանուն սուրբ Աստուածածնին, յորոյ վերայ է խորան յանուն սուրբ առաքելոյն Պօղոսի. և 'ի Վերնատունն է կրկին խորան, յաջակողմեանն է Պայծառակերպութեան, և 'ի ձախակողմեանն Ընթրեաց ։

Եկեղեցիս սրբոց Յակոբեանց կառուցեալ կայ 'ի վերայ քառակուսի քարից սեանց. և չորից կողմանց որմքն՝ են յախճապակեայ երկու կանգնաչափ, յորոց վերայ կարգ մի պատկեր սրբոց. 'ի վերայ սոյն առաջնոյ կարգին բաւիղք ոսկեզօծ և ճարմանդաւոր, և կանթեղք. Եւ 'ի վերայ բաւիղաց կարգ մի ևս պատկեր. յորոց վերայ բաւիղք վերստին՝ գրեթէ անհնարին սրբոց և խորհրդոց Տնօրէնութեան սուրբ պատկերք գտանին 'ի սմա, որ և ոչ գտանի ուրեք այնպիսի պատկերազարդ եկեղեցի. և կաթուղիկէն գըմբէթեալ՝ մեծամեծ լուսամուտք, նոյնպէս և 'ի վերայ քառակուսի սեանց, 'ի չորեսին կողմանս պատկերազարդ մինչև 'ի խոյակսն, և երկու կանգնաչափ 'ի ներքոյ պատկերաց մինչ 'ի յատակն յախճապակեայ ։

Ի մէջ գմբէթին բոլորշի երկաթեայ ճաղ դեղագործ և ոսկեզօծ, յորմէ կախին կանթեղք, յորոց վերայ մամակալք բազումք, զորս լուցանեն յաւուրս հանդիսից մեծաց ։ Եւ յեկեղեցւոյն գոն 25 կանթեղք մշտավառք. և 300 կանթեղք ևս աւելի գոն 'ի նմա ։

Օրինակ նամակի Եղիազար սրբազան կաթողիկոսի և պատրիարքի սրբոյ Երուսաղէմի առ կոստանդնուպօլսոյ Արքոյ Իշխանապետս և Ամիրայս և առհասարակ ժողովրդեանս:

Նախապատիւ և Աստուածամեծար, հրաշապաճոյճ և սքանչելապայծառ, գերահռչակ և մեծահամբաւ. աստուածակոխ և լուսապայծառ սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ամենայն սուրբ և աստուածահաստ անօրինակաւնքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

Նախ՝ սուրբ Նազարէթն, ուր Գաբրիէլ հրեշտակապետն զաւետիսն ետ սրբոյ կուսին Մարիամու, ուր և յղացաւ զբանն Աստուած: գերապատիւ սուրբ Այրն՝ որ 'ի քաղաքն Բեթղեհէմ, ուր ծնաւ Էմմանուէլն Փրկիչ: Աստուածընկալ սուրբ Մսուրն, ուր ընծայեցաւ Յիսուս. մեղաքաւիչ սուրբ Յորդանան, ուր մկրտեցաւ Փրկիչն մեր Յիսուս: Բարձրաբերձ սուրբ Լեառն Թաբոր, ուր պայծառակերպեցաւ Տէրն մեր Քրիստոս: Նախապատուեալ խորհրդական Վերնատունն, որ 'ի սուրբ Լեառն Սիոն, ուր լուաց զոտս աշակերտացն Քրիստոս. և Հոգին սուրբ Աստուած էջ անդ, և լցոյց զանազան շնորհօք սուրբ զառաքեալսն: Սարսափելի սուրբ Գողգոթայ. ուր գենաւ անմահ գառն Աստուծոյ: Մեծապատիւ սուրբ Գերեզմանն, ուր եդաւ Աստուածացեալ մարմինն: Փառաւոր տաճար սուրբ Յարութեանն, որ պատուելին է ամենայն ազգաց քրիստոնէից:

Ադենաքաստակ սուրբ Լեառն ձիթենեաց, ուստի համբարձաւ Տէրն մեր Քրիստոս։ Ամենօրհնեալ սուրբ Գերեզմանն, ուր եդաւ մաքուր մարմին սուրբ կուսին Մարիամու Աստուածածնին։ Կափարիչ վէմն դրան սրբոյ Գերեզմանի Տեառն մերոյ, որ կայ 'ի սուրբ Փրկչայ վանսն։

Սրովբէապար եկեղեցի սրբոց Հրեշտակապետացն, ուր բանդարգելաւ Տէրն մեր Քրիստոս։

Առաքելաշնորհ տաճարս սուրբ Յակոբ, որ է Աթոռ եղբօր Տեառն Յակոբայ։ Եւ աստուածաբեալ դամբարան արեամբ մածեալ Գլխաղբի սրբոյն Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն Զեբեդեայ, որ կայ 'ի սմա։ Եւ այլ միեղէն օրհնեալ անօրինականացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ ծառայն և սպասաւոր Եղիազար կաթուղիկոս ամենայն Հայոց, և Պատրիարք սրբոյ Երուսաղէմի։ Յորմէ ժամանեալ հասցէ Աղօթք առաքելական, և օրհնութիւն աստուածային 'ի սիրաշէն և Քրիստոսախնամ մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս, 'ի վերայ ամենայն քրիստոնէից հայկազնոյ. մանաւանդ 'ի վերայ հարազատ և հոգևոր սերտ սիրով կապակցեալ որդեկի մերում Տէր Յովհաննէս արք եպիսկոպոսին. և ըստ կարգի քահանայից և ըստ պատուոյ իշխանաց և իշխանապետաց, և դովլաթաւորացն. և առաւել ևս 'ի վերայ հաւատարիմ վէքիլաց և մահրիմ գործակալաց սրբոյ Երուսաղէմի երկոտասան թուով ընտրեալ մեծարանաց. և նոցին հետևեալ համակամ և միաբանորհուրդ սիրելեաց մերոց 'ի Տէր խնդալ, ամէն։

Նոյն օրհնութիւն աստուածայինն և խնամք ամենակալ Արարչին, որ եկն և հանգեաւ ՚ի վերայ սրբոյ Երուսաղեմի, և լցոյց զնոսա եօթնագլուխ շնորհիւ, իջցէ և հանգիցէ ՚ի վերայ տանց և բնակութեանց ձերոց։ Նոյն և սուրբ Նազարէթիւն՝ որ ծաղիկ Թագաւորին, ծաղկեալ լինիք դուք հոգւով և մարմնով՝ ամենայն բարեմասնական առաքինութեամբ։ Նոյն սուրբ Ծննդեանն՝ ծնեալ լինիք վերստին ՚ի յոյսն կենդանի։ Նոյն անքանից սուրբ Մարիան՝ ՚ի սեղան Հօրն երկնաւորի բազմեսջիք։ Նոյն սուրբ Յորդանանու՝ լուացեալ լինիք յամենայն աղտոյ մեղաց։ Նոյն սուրբ Թափօրական լերանն՝ բարձրասջիք յիմանալի լեառն վերին։ Նոյն սուրբ Վերնատանն՝ որ ՚ի սուրբ Սիոն, վերին Սիոնի և Երուսաղեմի ժառանգորդ լինիք յաւիտեան, ամէն։

Իսկ ՚ի տօնի հրաշափառ Ծննդեան և Աստուածայայտնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ զշնորհաբաշխութիւն սրբալոյս Ճրագին, զոր փութացայք կատարել աստանօր. ոչ այլ ինչ իրաց կարծեաց վասն, այլ միայն թէ վասն հըրաշալի խորհրդոյ։ Քանզի ձիթենի ծառն այն՝ յորում պրկեալ ձաղկեցաւ Տէրն մեր Քրիստոս ՚ի սուրբ Հրեշտակապետաց վանսն. ոչ ոք լուաւ, և ոչ ոք եւս յօրէն աստուածայայտնութեան Տեառն մերոյ մինչև ցայսօր, եթէ հանեալ եղև ՚ի պտղոյն ձէթ իւղոյ, առանց նուազութեան պտղոյ ծառոյն։ Իսկ յայսմ ամի՝ այնքան առատունացեալ շնորհիւ Տեառն՝ մինչ զի ձգեալ ձէ-

Թո՛ղ ոչ միայն 'ի նիւթ սրբազնոյս Միւռոնի բաւականասցաւ , այլ և 'ի խնդրոյ Լատինացն Հռոմայ Պապին շնորհ ատուաքեցաւ . և բաղձամ ես քան զայնս 'ի սերղունդ իւրում պահեալ կայ ։ Որոյ շնորհացն և օրհնութեանցն զձեզ զամենեսեանդ եւս մասնակից արասցէ Քրիստոս Աստուած մեր ծնողովք և համայն ննջեցելովք ձերովք , ամէն ։

Գրեցաւ Օրհնութեան Գիր 'ի սուրբ Երուսաղէմ ։

Ի Թուին Հայոց՝ ՌՃԺԵ.
'ի Յունվարի 23 ։



Եւ յետ մահուան Տ. Յակոբ սրբազան կաթողիկոսի սորայ Էջմիածնի, գիր աղաչանաց առաքեն միաբանք առ Տ. Եղիազար սրբազան կաթողիկոս և Պատրիարքն սորայ Երուսաղէմի. և խնդրեն դառնալ նստել ՚ի գահն աթոռ Էջմիածնի:

## Օրինակ աղերսանաց նամակին նոցին:

Աստուածայետականին բանական անդաստանաց՝ քրտնաջան մշակիդ որդւոյ միածնի Յիսուսի Քրիստոսի անձառ արեամբ գնելոց. բիւրերջանկացդ պատկերդ Հոգւոյն ճշմարտի նմին փառակցի վերատին լուսաւորելոց՝ արթնական դիտողիդ՝ և սրբոյ Երրորդութեանն հաւատքին համայնից՝ կանխագոյն ընտրեալ Հոգևոր Հովուիդ, աղնուազգութ սրբոյ Հօրդ տարակուսեալ որդեաց, և բարձրափայլ Գլխոյդ մեր վհատելոցս սրբազան կաթողիկոսի Տ. Եղիազարու՝ առաթուր անկեալ և յերկիր մածեալ, տրտմագին դիմօք, և վհատեալ սրտիւք, կականաբարձ ձայնիւք, և արտասուաթոր աչօք՝ զոտիւք Տ՟նդ փարելով, և զերկնաչու դարշապարդ սրբոյ Հօրդ համբուրելով՝ զՔրիստոսակիր Անձնդ Ողջունեմք ՚ի Տէր:

Միանգամայն ամենայն սրբեկեղականաց հայկական Եկեղեցեաց՝ եպիսկոպոսք, վարդապետք, քահանայք, վանականք, անապատականք, և ամենայն ժողովրդականք՝ հաւատացեալք ՚ի Քրիստոս:

Զայս ինչ իրազեկութեան քումդ վեհիմաստ խոհեմութեան յայտ առնեմք, զի ըստ հասա-

բակոյն կարգի և ըստ մերձակային ոսկեղինացն հրամանի. բարձրագահ սրբազան Հայրն մեր Յակոբ կաթողիկոս Հոգւոյ Տէրն՝ պսակաւորաւ 'ի մէնջ յաւելեալ առ հարս իւր՝ որպէս յայտ է վիճակ մեր, և եթող մեզ անհնարին աղէտս տարակուսանաց, ուստի և մեզ մթնացաւ, և խաւար թանձրամած, զրկեալ անհնարին և յուսահատութիւնս բնաւին զետեղելով՝ զմեզ մերձ եմ կորնչիլ. իսկ մեր մտաբերելով զբանն դաւթեան, որ թէպէտ ոչ կարէր մխիթարել. յիշեցաք զԱստուած, և ուրախ եղաք, և զօրութիւնս բազում զնմանէ մատուցաք. այլ և այսուհետև յԱստուած ցնծասցուք, հանդի առաւել կենդանացաք. զարթուցեալք 'ի քնոյ՝ զՏէր օգնական զտաք. և Ճշմարտապէս ծանուցեալ՝ ըզցեառն էզ ողորմեցաւ. քանզի խրատեաց՝ և 'ի մահ ոչ մատնեաց. վասն զի զայն թէպէտ 'ի մէնջ եառ, այլ սակայն զՎեհդ յառաջագոյն իսկ 'ի նոյն ընտրեաց.

Արդ՝ օրհնեալ գոհ Հայր մեր՝ ով Հայր պատուական, օրհնեալ Աստուած զայս անբիննեաց. վասն որոյ առաջի Տեառն անկեալ աղաչեմք կողկողագին դիմօք, և մեծաւ յուսով. հոգւոյս զմեզ յանդգաստանի կամաց քոց. և առ ընդ խնամատութեան քո անձ զմեզ, և յաջորդաց աստուածատուր վաղակայց արքը զմեզ. քանզի զամենայն ինչ զոր առնէ Աստուած՝ բարի է, բայց 'ի ժամանակի իւրում. ահա ժամ և ժամանակ և օր նմին. ուստի համառօտաբար ասեմք. ահա մարմին և ոսկերք քո եմք: Ի թեթ-

ընդդէմ Թագաւորաց ծառա Դաւիթ արքայն, որ-կայն Աստուած ՚ի Թագաւորութիւն բոլորից ազգաց էած զնա. որ զայն ինչ ՚ի հինան յորե-նեաց. նոյնպէս և Աստուած զմեզ ՚ի սոյն յար-գարեալ անօրինեաց այժմ. զերկուսն որքայն Գրիգորի Հօրն մերոյ Լուսաւորչին, առ քեզ բարեխօս արկանելով աղաչեմք. զի սուրբ Աթո-ռըս և զանեղծ նորին նորոգել` հայցեմք. և թէ-պէտ մեղանս ինչ ՚ի ժամանակի առ քեզ յայտ-նեալ երևեցան, բայց անսասանելին և մեք առ քեզ գոչեմք. մեղաք յերկինս և առաջի քո. վասն ս-րոյ և Տէրդ զԹադէոս` Թողցես մեզ. նմանե-լով Տեառնդ քում բարւոյ և ճշմարտի ։

Դարձեալ աղաչեմք ՚ի սուրբ Հօրէդ, զի մի ընդ վայր հարցես զմեզ. այլ խնամարհեալ յա-ղաչանս ծառայից քոց, եկեալ դիցես զսուրբ գարշապարդ քո ՚ի վերայ մեր գլխոյ, պահելով ՚ի խաղաղութեան զսուրբ Աթոռս զայս. և մա-նաւանդ զերկուս զսուրբ Աթոռս, որք են ա-պաւէնք մեր. թէպէտ յանդգնութիւն իմն ե-րևի ասելն մեր. այլ ճշմարտութիւն հաւատա-րիմ ծառայիցդ յայտնեալ երևի ՚ի խնդիր մեր. որպէս արար զերկաստանն մի, և զմիջնորմն ցան-կոյն քանդեաց. և որ կայրն մեզ հակառակ; զայն ՚ի միջոյ եբարձ. և արար խաղաղութիւն ա-րեամբ իւրով. բաց նմին ասպասի և զայս անե-նայն զքէն առի։ Իսկ արդ` զինչ արդեօք ա-դել կցի, նմանել մեծի Տեառն` ծառայիդ մե-ծի։ Ահա ժամ է խորտակման ազգիս Հայոց, և խանգարումն և լուծումն քրիստոնէական կար-

գիս յարկածից և 'ի թունից մահաբեր օձին. զոր 'ի ձեռն որքանների Նորին՝ յերկուս սուրբ Աթոռս յեղյեղեալ նիւթեցան. ոչ որ կարող է զայս 'ի բարին և 'ի կեանս փոխարկել, եթէ ոչ Վեհդ պատուական. քանզի և զանուն Տեառ-նըդ զոյն յայտնաբանէ. վասն որոյ և մեք յու-սացեալք, և երդուեալ 'ի յԱստուած Հայր. և 'ի հեղումն արեան Յիսուսի Քրիստոսի. և յօ-ծութիւն ամենասուրբ Հոգւոյն Ճշմարտի, խո-նարհեալ համբուրեմք զսուրբ Գարշապարդ, և հայցեմք՝ զի խոնարհեսցիս առ մեզ՝ տիրելով մեզ բարձր հրամանաւ, և կաթուղիկոսական իշխանութեամբ. զի վերստին Նորոգեսցես և հաստատեսցես զԱթոռս և զկարգս, և մեք լի-ցուք հպատակ ծառայ Սրբազան Վեհիդ մինչև 'ի մահ յամենայն իրս. և որ ոք անօրինեալ բա-տունդանեսցէ հրամանաց Վեհիդ. և ուրացեալ զայս պատուանդակերպ կոնդակս, նզովս յԱստուծոյ և յամենայն Հայրապետաց սրբոց ընկալցի. և անլուծանելի բանադրանս և կապանս յերկինս և յերկրի 'ի սուրբ Հօրէդ ընկալցի։ Զայս ինչ աղաչանս մեր. և զթութիւն սուրբ Հօրդ հա-սարակաց, աղաչեմք, աղաչեմք. դարձեալ աղա-չեմք, զթա՛ 'ի մեզ վասն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Ողջ լեր 'ի գլուխն Քրիստոս, Գլուխդ մեր յամենայն ժամ։ Իսկ մեք ստորագրեալք ծա-ռայք Քրիստոսի և Տեառնդ հոգւով և մարմ-նով յօժա՛ր եմք վերոգրելոցս. և մահու չափ հնազանդ. և անդրդուելի ուխտադրութիւնս

## Տեղեկութիւն ի վերայ հանդիսաւոր Տօնից ։

Ի տօնըն Յարութեան զատկի, Միւսաւուրն ե- րեկոյին եղանեն հանդիսիւ, պայծառ զգեստ- ուք, և ամենայն զարդուք 'ի մեծ գաւիթն, ուր տանեն անդաստան. ապա դառն յեկեղեցին և կատարեն պաշտօն ժամերգութեան ։

Յերկուշաբթի օրն տօնըն Զատկին, զկնի սրբոյ Պատարագին եղանեն 'ի մեծահանդէս թա- փոր 'ի մէջ սրբոյ Յակոբեանց եկեղեցւոյն ։

Ի Վարդավառի Շաբաթ երեկոյին զկնի ժա- մերգութեան նախատօնակ տանեն սրբոյ Յա- կոբայ Տեառն եղբօր . յորում աւուր նստաւ Աթոռն Երուսաղէմի Պատրիարքը . և զկնի ե- կեղեցին հսկումն տանեն .

Ի Վերափոխման պահքի Շաբաթ երեկոյին 'ի տօնըն Գլխադրէն զկենաց փայտն տանին հանդիսիւ Աւագ խորանն զկնի ժամերգութեան ։ Ի Միւ- սաւուր երեկոյին նախ քան զժամերգութիւնն կա- տարի կարգ Վերափոխման պահքին հանդիսիւ մե- ծաւ ըստ Տօնացուցին ։

Ի տօնի Որդւոց Որոտման զկնի սրբոյ Պատա- րագին եղանեն մեծահանդէս թափօր 'ի մէջ սրբոյ Յակոբայ եկեղեցւոյն ։

Ի 13 փետրվարի, Տեառն ընդառաջի երեկոյ- ին զկնի յայսմաւուրին, նախ քան զժամերգու- թիւնն լինի ատենաբանութիւն համառօտ, և ամենայն զարդուք եղանեն 'ի մեծ գաւիթն, ուր կատարի խորհուրդ հրավառութեան, և ապա եկեալ պաշտեն զժամերգութիւնն ։

Ի տարւոջն երիցս լինի չոր Նախատօնակ, այսինքն զկնի Յայտնաւուրաց, առանց շուրջառի, և այլն. միայն որբազան Պատրիարքն զգենու ըզպատուական շուրջառ, և խնկարկէ, և այլն:

Ա. Ի 11 Յուլիսի, 'ի Ծննդեան Յովհաննու Կարապետին:

Բ. Ի 25 Դեկտեմբերի, Դաւթի մարգարէին, և Յակոբայ Տեառն եղբօր:

Գ. Ի 21 Փետրվարի, Որդւոցն Որոտման, և ապա պաշտի ժամերգութիւնն:

Նա և յամենայն Շաբաթ երեկոյի բաց 'ի Մեծի պահոց և յինանց, զկնի ժամերգութեան պարառեալ կանգնին բոլոր Եկեղեցականք առ դուռն սուրբ Գլխադրին, և ասեն Շարական. "Որ էնն յէութեան ". և որբազան Պատրիարք Հայրն արկեալ զիւրև շուրջառ, խնկարկէ ամենայն որբաստահման Տեղեաց և Պատկերաց սրբոց, և յաւարտին արձակին: Նա եթէ առ հարկի կարևոր գործոյ իրիք որբազան Պատրիարքն չգտանիցի յեկեղեցւոջ յայնմ երեկոյի, ոչ կատարի այս արարողութիւն, որ 'ի Նախնի Հարց մերոց վերապահեալ է Նորին Սրբազնութեանն:



Ի ուղւոյ Յոպպէացւոց վանաց մինչ ՚ի սուրբ Յերուսաղէմ ։

Արդ՝ ելեալ ՚ի սուրբ Յոպպէայ, և գնացեալ յառաջ սուրբ մենաստանիս դէպ ՚ի հիւսիս ուղիղ պողոտայիւ. անցեալ զաւազեաւ ձմերանոցին, և ամառանոցին Դաւթի մինչ ՚ի վերջին վաճառանոցին, դառնալով յաջմէ դէպ յարեւելս, յաջմէ և յահեկէ սրճանոցք և մարգագետինք և կրպակք սուրբ Աթոռոյս են. և գնացեալ մինչ ՚ի քառուղի մի ճանապարհն, և անտի դառնալով ՚ի ձախմէ՝ անցեալ ՚ի ներքոյ կամարին՝ յաջմէ գոյ մեծ երկաթի դուռն մի, որ է վանք սրբոյն Յովհաննու կարապետին, և է ՚ի ձեռս Յունաց. որ նորոգեցաւ ՚ի հիմանց յամի Տեառն 1836. և ունի պայծառ եկեղեցի. և քանի մի սենեակս՝ և տեսուչ միաբանութեամբ ։ Անտի ՚ի վաճառանոցն՝ գրեթէ կից նմին վանիցն է բաղանիք մի, որ կոչի Քահւայ համամի. հանդէպ դրան բաղանեացն սրճանոց և կրպակ Աթոռոյս, որ է յիշատակ սուրբ Յարութեան ուխտ Սարգիս վարդապետին Հիզանցւոյ. և ՚ի յետուստ սրճանոցին մերոյ՝ է մեծագոյն աւազան կամ լիճ ։

Անտի մինչ յեզր վաճառանոցին, դառնալով յաջմէ՝ գան քանի մի կրպակք. և հանդէպ նոցին է վանքն Յունաց ։ Անտի ելեալ ՚ի փոքր դրանն՝ որ է ՚ի ձախմէ, և մտեալ ընդ այն՝ 22 աստիճանաւ իջանէ ՚ի պողոտայն, որոյ լայնութիւնն է 12 ոտնաչափ ։ Անտի ՚ի ձախմէ երեք աստիճանաւ իջեալ՝ ՚ի սուրբ Յարութեան դա-

ւթեն, որոյ երկայնութիւնն հիւսիսոյ առ հարաւ 90 ոտնաչափ. և լայնութիւնն արևելից առ արևմուտս 61: Ի հարաւակողմն գաւթին էր բանտ մահապարտաց 'ի հնումն. ուր Դշխոյն Հեղինէ արգել զՅուդայ Կիւրեղն և զծերս Հըրէից՝ խոշտանգելով զնոսա ցուցանել զտեղի սուրբ խաչին, ուր խոստովանեցաւ Յուդա Կիւրեղ զճշմարիտն, և եղև աշակերտ ճշմարտութեանն որդւոյն Աստուծոյ: Նոյն աւերակ էր 'ի բազում ժամանակաց հետէ, յամի Տ՟ն 1838. առին Յոյնք և շինեցին վանատունս հոյակապ վերնովքն և ներքնովքն: Մերձ նորին է մզկիթ և մինարէ այլազգեաց:



Վասն Հայր Աբրահամու վանիցն, որ էր Հաբէշից:

Յարևելս գաւթին՝ 'ի ներքոյ երեք աստիճանաց է վանքն Հայր Աբրահամու, որ ունի կրկին եկեղեցի, մին մեծ 'ի վայր, և միւսն փոքրիկ 'ի վեր, որ է 'ի յետուստ կողմանէ սրբոյ Գողգոթային. յորոյ կեդրոնն գոյ փոսիկ մի զարդարեալ զարդուք. զորմէ ասեն Յոյնք՝ թէ Հայր Աբրահամ աստ կամեցաւ զենուլ զիսահակ զորդին իւր, ուստի դարձաւ 'ի կողմն Գողգոթային, և ետես զխոյն կախեալ 'ի ծառոյն: Կոռնելիոս իմանայ զմորենին. և Եղիշէ վարդապետն մեր, եղևին փայտն, իսկ այլք զայլ ինչ իմանան ըզծառն Սաբեկայ, յորմէ կախեցաւ խոյն:

Յոյնք պատրելով զպարզամիտս ցուցանեն զծիթենի մի, թէ սա է ծառն Սաբեկայ, վասն որոյ կոչի Հայր Աբրահամու վանք, սա էր յառաջագոյն վանք Հապեշից, և ժամանակ ինչ կայր 'ի ձեռս մեր. որպէս գրէ Հաննա պատմագիր, յերես 243. իսկ այժմ Յոյնք ունին զսա:



Վասն սրբոյն Յովհաննու աւետարանչի եկեղեցւոյն մերոյ:

Յաջմէ սոյն վանիցս մանաւանդ և 'ի ներքոյ նորին՝ է փոքրիկ և պայծառ եկեղեցի մի՝ յանուն սրբոյն Յովհաննու աւետարանչին, ուր ասի կայր սուրբն Յովհաննէս հանդէպ խաչելութեան Տեառն՝ յաւուր մեծի Ուրբաթու. և Քրիստոս 'ի վերայ խաչին ասաց ցմայր իւր. « Կին դու՝ ահա որդի քո: Նա ասէ ցաշակերտն, ահա մայր քո ». Յովհ. ԺԹ. 26, 27: Սոյն եկեղեցւոյ երկայնութիւն է արևելից առ արևմուտս 11 ոտնաչափ, և լայնութիւնն հիւսիսոյ առ հարաւ 28: Սա ունի զերիս խորանս, Աւագ խորանն է յանուն սրբոյն Յովհաննու աւետարանչին. աջակողմեան խորանն է՝ չարչարանաց և կապանացն Քրիստոսի. զի գոյ անդ մասն ինչ 'ի քարեայ սիւնէն՝ յոր կապեցին զՔրիստոս 'ի տան Կայիափայ քահանայապետին, որ է արծաթապատ, և մշտավառ կանթեղիւ պատուի 'ի մէնջ: Իսկ ձախակողմեան խորանն՝ է յանուն Հօրն Աբրահամու, և զենման Իսահակայ:

Յամի Տեառն 1849. յունուար 8. Վերահսկող Սրբազան Պատրիարքին ի ներքուստ քաղաքին նո-րոգ շինեցան պատանեկրթարանաց կճեայ քարաշէնք երկուքին խորանքն, և հետոյ կաթողիկէիւք մա-մարիոնեայ գեղեցիկ յարմարեալ բեմն՝ և յա-տակք նոցին. նաև աշխատակցացն և այժմ տուա-ցան յոյժ յոյժ պատուական նուէրք, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Բուալքի դրանն կայ հեռաքստուից վկայի միում, զոր անդ ազգեցեալ են այլազգիք. և մերձ նորին է ջրհոր մի, որ է յոյժ մեծագոյն։



Յաղագս Ղպտւոց եկեղեցւոյն։

Յաջմէ եկեղեցւոյս Սրբոյ ի յանկեանն գոյ դուռն մի՝ որ մտանէ ընդ ասպարէզ՝ է եկեղեցին Խփտւոց, որ կոչի Մէլէք, այսինքն Միքայէլի հրեշտակապետին. և ի Հարաւոյ կողմանէ ի մի-ջոյ նորին երանէ իբր 18 աստիճանաւ ի վերայ անդ է եկեղեցի մի, որ կոչի Չորից կենդանեաց կամ քառանկերպարեանն. Զայս յամի Տեառն 1852. Հայերէնք դնեալ տան ի Խփտւոց, յորում պատարագեն այժմ։

Իսկ ահեակ ընդ միւս դրանս մտանէ ի տաճա-րն Լուսաւորչի եկեղեցւոյն մերոյ, և Գետնա-խաչին. զորոյ զխանձիան և զկաթուղիկէն նորո-գեաց Գրիգոր Հայրապետ շղթայակիրն. ի թուա-Հայոց՝ ՌՃԿԸ։

Ընդ է և վանքն Հապէշէից՝ ուր են հնգե-տասան սենեակք փոքր՝ և մեծ. որ է ընդ իշ-խանութեամբ մերով։

Ի գաւիթի անդ առաջի դրան եկեղեցւոյն խորտուց գոյ փոքրիկ դուռն մի՝ որ մտանէ ի հորանս, է մատուռն մի յանուն սուրբ Աստ-ուածածնի, սա էր ազգին Հապէշից, և ժա-մանակ ինչ մնաց ի ձեռս Մեր, բայց այժմ ի ձեռս Յունաց է. Գրէ Հաննա ղափրճանեցին, յերես 240։



Յաղագս սգաւոր սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն։

Ի վերայ վերոյիշեալ ճանապարհին, և կից գողգոթային, որ նշանէ հնգետասան աստիճա-նաւ ի փոքրիկ եկեղեցին Լատինաց, որ կոչի Սը-գաւոր. որոյ է լուսամուտ մի՝ որ հայի ի ներ-քս ի Տարածման տեղին, և է յոյժ գեղեցիկ և պայծառ։

Իսկ ի ներքոյ նորին աստիճանաց՝ գոյ կար-միր քարերոյ սիւն մի. զորմէ գրէ Գրիգոր եպիս-կոպոսն Արծրունեան յԵրուսաղէմէ ի Հայս. Թէ յաւուրս Յուստինեանի կայսերն, ի Հայրա-պետութեան Յուստոսի, ի յետին ամին, և յա-ռաջնում ամի յաջորդի նորին սրբոյն Մակարիո-սի եղև քննութիւն ի Հրէից առ կայսրն վասն Հայոց, որ մնացեալ էին նոցա բանութիւն. Հրամայ-եաց զՏեառնընդառաջին կատարել ի 2 աւուր Փետրուարի. և զԾնունդ՝ ի 25 Դեկտեմբերի։

Այլև ընդդիմութիւն հրամանի կայսերն, վասն որոյ ջուր բղխեաց 'ի սիւնէս՝ և արար բազում բժշկութիւն ախտաժետաց ։ Ապա երևեցաւ այր մի 'ի դրան սուրբ Գողգոթային, որ եկն և եհար զաջն իւր 'ի սիւնն, ձևացաւ պատկեր սուրբ կուսին 'ի սիւնն, և իբր քառասնօրեայ մանուկ 'ի գիրկս նորա, և խաչ ծիրանի յերկոսին ձեռսին, յայնժամ էր կին մի Հայազգի 'ի Մոկաց՝ Սողոմէ անուն քան և երեք ամեայ կարկամեալ, մերձեցաւ 'ի սիւնս այս, և բժշկեցաւ. և այլ բազում բանս ։

Նա և Հերակլ կայսր յորժամ դարձոյց ըզխաչն 'ի գերութենէն Պարսից., յամի Տեառն 627. եդ 'ի վերայ ծիրանի սեանս ։ Ապա անուն եհան 'ի սուրբ Գողգոթայ. Գրէ Հաննա ղափմա-Գէր, յերես 239 ։



Յաղագս եկեղեցւոյն Յունաց քաղաքայի ժողովրդոց ։

Արևմտակողմն դաւթին, յաջմէ սուրբ Յարութեան դրանն, է դուռն Յունաց եկեղեցւոյն, ուր գոն երեքին եկեղեցիք. մին յանուն սրբոյն Յակոբայ արդարոյն, որ կոչի Արաց սուրբ Յակոբ. միջինն՝ Մարիամու Մագդաղենացւոյն, և միւսն՝ քառասուն Մանկանցն. և ունի յատուկ դուռն՝ ընդ որ ելանէ 'ի զանգակատունն, և ունի յատուկ դուռն մի ևս՝ ընդ որ մտանէ 'ի մեծ վանքն Յունաց ։ Գրէ Մարինոս՝ թէ Զսա քակեաց Իւսուֆ Սալահադինն

սուլթանն Եգիպտոսի. մերձ զանգակատանն դէպ 'ի հարաւ, եկեղեցին է Մարիամու Մագդաղենացւոյն, կողմանն՝ սրբոյն Անդրէի առաքելոյն. իսկ միւսն՝ սրբոյն Նիկողայոսի հայրապետին: Սա էր 'ի ձեռս Վրաց ազգին:



### Վան սուրբ Պատանատեղւոյն Քրիստոսի:

Մտեալ ընդ դուռն սուրբ Յարութեան տաճարին, 'ի յաջմէ 'ի յետոյս դրանն է քարեայ սանդուղ՝ որ ելանէ 19 աստիճանաւ 'ի սուրբ Գողգոթայ: Ի ձախմէ է տեղի այլազգի դռնապանաց, ուր նստին: Ի վերայ դրանս է երկրորդ Գողգոթայ վիճակն մեր: Գնալով իբր 30 ոտնաչափ՝ է սուրբ Պատանատեղին, որոյ երկայնութիւնն 12 թզաչափ, և լայնութիւնն 5: Յորոյ վերայ կախեալ կան ութն լապտեր՝ կամ կանթեղ. որոց երկուքն Մեր է, չորսն Յունաց, մին Լատինաց, և մինն Խփտւոց: Որոյ 'ի սնարսն այսինքն առ արեւելս և առ արեւմուտս եդեալ կան վեց զոյգ աշտանակք. երեք զոյգն մեծագոյն, և երեք զոյգ փոքր. որոց առաջինն զոյգ մի մեծ և զոյգ մի փոքր է Լատինաց. միջին մի զոյգ մեծ, և մի զոյգ փոքր Յունաց. և վերին կողմանն զոյգ մի յոյժ մեծագոյն և քանդակածոյ, և զոյգ մի փոքր, աշտանակք մեր են: Նոյնպէս մեք և Յոյնք և Լատինք ունիմք անդ մի մի եռոտեան սանդուղ փայտեայ, որովք ելեալ լուցանեմք կարգաւ զմոմեղէնսն:

Յաղագս որմոց խուցերոց սեղանոյն մերոյ ։

Գտանալով 'ի սուրբ Գաստանատեղութեան քեր 40 ոտնաչափ առ որեմնուս, յաջմէ երկոց կամարաց մերոց է խուցաբերից սուրբ Սեղանոյ. 'ի յետուստ սեղանոյն է կամարն մեր՝ որոյ կից է սենեակն Յունաց. և միւս ուռն կամարին մերոյ է կից խափշաց սենեկին. յերկոսին կողմունս կամարիս զոյն կրկին պատկերք, և կանթեղ մի առ կախեալ 'ի կեդրոնէն ։

Բանալի խուցաբեր կանայք առտ կոչեցեալ պատ-սեհին ցմիմեանս. «Ո՞վ թաւալեցուցանէ մեզ զվէմն Գերեզմանին, և հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր վէմն 'ի Գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ ». Մարկ. Գ. 4։ Նորա առաջի մշտավառ կանթեղ մի. և յատուկ շարան հինգ կանթեղք ունիմք ։ Ի մէջ կամարին զոյ յատուկ կանթեղ մի. և շարան մի վեց կանթեղք. առ ընթեր կից սեղանոյն է գիւննն մեր, յորոյ վերայ է մեծ պատկեր մի խաչելութեան. առաջի նորա մշտավառ կանթեղ մի. և պատկեր մի ևս ունիմք 'ի գլուխ նոյն սեանն. 'ի յատն վերնոյ կամարին մերոյ, յատակէն մինչև 'ի վեր 'ի սառ-նիսն սենեկի մեր լուսարարին յանդիման դրանց Գերեզմանի մեծ կամարի յանկիւնէն առհմեն Ազգիս մերոյ է ։

Հանդէպ խուցաբերից սեղանոյ երկրորդ սեանն. յորոյ վերայ է պատկեր որբոց Ցագու-թեան. յատուկ կանթեղ մի առաջի նորա. և 'ի մէջ երկրորդ կամարին կանթեղ մի՝ և շարան մի

բաղկացեալ 'ի վեց կանթեղէ ունիմք։ Ի վերայ երրորդ սեանն գոյ պատկեր ծննդեանն Քրիստոսի, որոյ առաջի յատուկ կանթեղ մի մշտավառ. և 'ի մէջ երրորդ կամարին շարան մի 'ի վեց կանթեղէ, և յատուկ կանթեղ մի ևս առաջի նորա։ Եւ 'ի վերայ չորրորդ սեանն մերոյ գոյ պատկեր վերափոխման սուրբ Աստուածածնի, որոյ առաջի յատուկ մշտավառ կանթեղ մի ունիմք. սեանս կից է սենեակն Յունաց, և յայսկոյս սեանն՝ առ կախեալ կայ ջրոյ ծոռաղուխն մեր, և առաջի նորա կոնք։ Այն չորեքին սիւնքն համդերձ երեքին կամարօք, պատկերօք, կանթեղօք, և աշտանակօք, 'ի յատակէն մինչև ցվերն 'ի տանիսն՝ յատուկ մեր վիճակն է, և սեպհական կալուածք և միւլք, յորս ոչ գոյ ինչ մասն ընկերութեամբ։ Չորրորդ սիւնն՝ որ է կից Յունաց սենեկին, և գոյ ծոռաղուխն մեր՝ յանկիւնէն մինչև 'ի յանկիւնն սենեկի տեսչին մերոյ 'ի վերն՝ ուր զետեղեալ կան խաչվառքն մեր երեքտասան, և 'ի ներքոյ նորա է բազմոց՝ ուր նստի Տեսուչն մեր, և այլն։ Որոյ հանդէպ գոյ բոլորակ կճեայ քար մի, որ է տեղի Ուժաթափման սուրբ Աստուածածնին, որ կայր յանդիման խաչելութեան Որդւոյն իւրոյ Միածնին՝ յաւուր մեծի Աւագ Ուրբաթու. և ցողէր արտօսր յաչացն ցաւագին սրտիւ, որոյ շրջապատն է ճաղ երկաթեայ գմբէթաւոր, և աղաւնավարդ, և շրջապատ գմբեթին երկոտասան կանթեղք. յորոյ վերայ ջահ մի գոյ, և մշտավառ կանթեղ մի 'ի մէջ ճաղին, և չորս կանթեղ ևս

Զարմանամ ընդ այն՝ թէ զիարդ ոմանք հեղգացեալ ծուլանան. և ոչ ելեալ գան 'ի յաղօթըս 'ի ժամերգութեան, և 'ի փառաբանութիւն Աստուծոյ. և ոմանք են ոչ միայն այս, այլ և ոչ կամին տեսանել զսուրբ Պատարագն, որ մատչի 'ի վերայ սրբոյ Գերեզմանին Քրիստոսի ; և 'ի բանալ դրան ընդ առաւօտն խոյս տըւեալ գան 'ի սուրբ Տաճարն, ասելով ցմիմեանս; ոչ կարացաք կալ յաղօթս, և ոչ տեսաք զսուրբ Պատարագն. զի զքնով անկեալ մնացաք, զի գիշեր էր, և այլն։

Ի թիւ Հայոց՝ ութն հարիւր և ութսուն, մինչ ազգն Վրաց ննդութեամբ էառ 'ի ձեռաց մերոց զսուրբ Գողգոթայ զիշխանութեան տեղին, որ էր մեզ սեպհական ժ—ղ, պարգևեալ Հայոց ազգիս և Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի 'ի սրբոյն Կոստանդիանոսէ և 'ի սրբոյն Սեղբեստրոսէ Հայրապետէն. Տե՛ս յԱգաթանգեղոս 'ի Գիրս Դողանց։ Յետ երից ամաց կամ երկուց՝ Եգիպտացի Սրբազն Մարտիրոս Պատրիարքն սրբոյ Եէմի. գնեաց ժ—ղ 'ի Սուլթանէն Եգիպտոսի Հրովարտակաւ Արքային զայս այժմեան վիճակս մեր զսուրբ Վերնատունն. և կանգնեաց անդ կրկին սեղանս՝ անուանեալ զԱւագ խորանըն Երկրորդ Գողգոթայ. և զմիւսն Երաշխաւոր սուրբ Աստուածածին։

Ապա 'ի թիւ Փրկչին 1639, Գրիգոր Պարոնտէր Հայրապետն մեր էառ 'ի Լատինացւոց զերիս կամարս՝ և ընդարձակեաց զվերնատունն, և փոխանակ կամարացս եա զկանթեղ մի 'ի վե-

րայ Պարտիզին առ Լատինացիս, և զխուց մի 'ի ներքոյ՝ երգեհոնի նոցին. և այս դաշն եւս հաստատեցին յինքեանս, զի 'ի սահմանի մերում՝ որ է արեւմտեան որմոյ յեցեալ բաժանեալ սիւնքըն՝ զոր Չմնայ փրկէլ կոչեմք, յորոյ վերայ դիցի 'ի վեր փոքր պատկեր մի Պապին, որ է Ուրբանոսի ութերորդի, որ կայ մինչև ցայսօր. և 'ի ներքոյ նորին դոյ և մեզ փոքր պատկեր Գրիգոր Պարոնտէր հայրապետին մերոյ, և 'ի ներքոյ նորին եւս է պատկերն Յունաց գծագրեալ յանուն Կոստանդիանոսի և Հեղինեայ։

Եւ 'ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԹ. Շղթայակիր Գրիգոր Հայրապետն մեր, և սրբազան Յովհաննէս Պատրիարքն Կոստանդնուպօլսոյ նորոգեցին զվիճակն մեր, և բարձին 'ի միջէ եղեալ քառանկիւնի հաստաշէն սիւնն, որ կայր յանդիման Աւագ խորանին. Տե՛ս 'ի պատմութիւն Հաննա վարդապետին, յերես 187. 192։

Յամի Տեառն 1808, և Հայոց՝ ՌՄԾԷ. հրդեհեալ այրեցաւ սուրբ Յարութեան տաճարն յաւուրս Սրբազան Պատրիարքին Տ. Թէոդորոսի Վանեցւոյ. վասն որոյ վերստին նորոգեցաւ սահմանն մերս Վերնատան ըստ առաջին դրութեան. յամի Տեառն 1810, և Հայոց՝ ՌՄԾԹ։

Արդ՝ 'ի ներքոյ երից կամարաց մերոց են երեք կամարք և երեք սենեակք, զորս Յոյնք ունին այժմ. զի սոյն երեք կամարք և սենեակք եկեղեցի Հապէշից՝ 'ի ձեռս մեր էր, յափշտակեցին Յոյնք 'ի մէնջ. 'ի Թուին Հայոց՝ ՌՃԵ. Տե՛ս Գիրք Հաննա պատմութիւն, յերես 234։

Վերնատան վեց կամարաց միջի չորքան կանթեղքն՝ որ է 36. և ներքին երեց մեր կամարաց միջի չորքան կանթեղքն՝ որ է 21. 'ի Հանդիսի աւուրս լուցանեմք ըստ սովորութեանն: Նա և յաւուրս Հանդիսի Յունաց՝ և Լատինացւոց:

Եթէ նոքա նախ քան զՀանդէսն խորերանց լուցանեն յաւուրս Հանդիսի մերում. և երբեմն զներքինն միայն լուցանեմք մեք, զի Յունաց ոչ գոյ վերնատուն՝ և վերին կամարք. բայց Լատինացւոց գոյ՝ եթէ նոքա լուցանեն վասն մեր Հանդիսից, և մեք լուցանեմք վասն նոցա:

Ի բաժանեալ սիւնէն մինչ 'ի Յովսեփայ Արեմաթացւոյ գերեզմանի սահմանն, որ է երկու սենեակ՝ Խփտուց է. յորոց վերայ է վերնատունն Լատինաց, ուր են մետասան կամարք:



Վասն Գերեզմանին և Եկեղեցւոյն Յովսեփայ Արեմաթացւոյ:

Երկին դրանք մտանէ յեկեղեցին և 'ի գերեզմանն նորա, միոյն մտանէ ուղղակի յետս կողմ սեղանոյն, և միւսոյն մտանէ 'ի սրահն. 'ի ձախմէ մտանէ յեկեղեցին, և ուղղակի ելանէ աստիճանաւ 'ի սենեակն մեր. որ է 'ի վերայ եկեղեցւոյն և սրահին, կամարն որ կայ 'ի վերայ սեղանոյն, է Ասորւոց. զի նոցին պատկեր երեւեալ կայ 'ի վերայ դրանն, և չորքան կանթեղք նոցա են:

կանթեղ մի է, և շարան մի 'ի հինգ կանթեղէ բաղկացեալ և ջահ մի։ Կայ վիմափոր այր մի 'ի մէջ եկեղեցւոյս. որոյ դուռն է առ հարաւ, ընդ որ մտանէ 'ի գերեզման Յովսեփայ, և ունիմք կանթեղ մի մշտավառ, թէպէտ Յովսէփ Արեմաթացին աստ ոչ է թաղեցեալ, այլ ըստ ոմանց 'ի Մարսիլիայ, և ոմանք թէ Անկլիայ կամ Ընկլուզաց երկիր մեռաւ և թաղեցաւ. և ըստ ստոյգ Պատմագրաց, որպէս Վարք սրբոց. թէ՝ եղև Եպիսկոպոս Կիպրոսի, ուր մեռաւ և թաղեցաւ. քանզի սա էր Այր արդար և բարեգործ, և ծածուկ աշակերտ Յիսուսի. Սա թաղեաց զՏէրն մեր յիւրում իսկ Պարտիզի և 'ի գերեզմանի, զոր փորեալ էր վասն ինքեան։ Ապա յետ այնորիկ պատրաստեաց զգերեզմանս իւր անդ. 'ի պատիւ Սրբոյն լուցանեմք զկանթեղս և վառեմք զմոմեղէնս։



Վասն մարմարէին խափանոյ՝ որ է սրբոյ Գերեզմանին սնարից վէմն հրեշտակին։

Յարևելակողմն առաջի դրանց Յովսեփայ Արեմաթացւոյն, և կից կենսատու սուրբ Գերեզմանին Քրիստոսի, է մատուռն խափանոց. որոյ շրջապատն և առաստաղն են տախտակամած, և 'ի ներքոյ սեղանոյն է վէմն հրեշտակին՝ որ նստէր 'ի վերայ. զոր յիշէ, Յովհ. ի. 12. «Տեսանէ երկուս հրեշտակս 'ի սպիտակս, զի նըս-

ակերին մի 'ի մնարից դ. որ է վէմն այս ։ Իսկ միւս վէմն՝ որ առի և մի յանուանից, է յարևելակողմն սրբոյ Գերեզմանին 'ի ներքս, 'ի կեդրոն երկուց դրանց ։

Ի մէջ այն մետասաներորդ կամարիս, շինեալ է Հեթում արքայն մեր՝ սեղան մի անձաձկոյթ Պատարագամատոյց 'ի վերայ հրեշտակի վիմին ։ Նաի զամանէ թէ՝ Տուեալ են նախնիքն մեր ըղ-սեղանս զայս Խափշուց ազգին, զորոյ փոխան առեալ են մեզ յԵգիպտոս Եկեղեցի մի, զատն զի չունէաք անդ Եկեղեցի ժողովրդեան մերում. Տե՛ս Ի Համնա պատմութեան, յերես 233 ։

Սրբոյ գերեզմանին Քրիստոսի յարտաքին դրան ունիմք երկու զոյգ մշտավառ կանթեղս 'ի մէջ չորից կամարաց, առ հիւսիս և առ հարաւ. իսկ զոյգ մի կանթեղ Յունաց է 'ի մէջ երկուց կամարաց, որ են մերձ Խափշուց մատրանին՝ յաջմէ և յահեկէ նորին. և Լատինաց ոչ գոյ կանթեղ աստ ։

Հանդէպ սրբոյ Գերեզմանի դրան մեծագոյն կամարն, որոյ մի սիւնն է ազգիս մերոյ, յորոյ վերայ է պատկեր Խաչելութեան, և միւս կողմանն է մերձ առ Պարտէզն. երկուց կողմանց որմոց ծածկոցքն, և հինգ մեծագոյն կանթեղքն Լատինաց են. և հինգ կանթեղս ևս այլ, մինչ 'ի յանկիւնս եկեղեցւոյն Յունաց, և յաջմէ դըրան եկեղեցւոյն ևս գոյ փոքրիկ պահարան մի Լատինաց ։



Յաղագս որմոյ և Սենեատու Գերեզմանին Քրիստոսի:

Սենեատուն սուրբ Գերեզմանին Քրիստոսի է 'ի կեդրոն մեծի ատենի սրբոյ Յարութեան տաճարին 'ի ներքոյ մեծագոյն արձակապատ գմբեթին. Թէպէտ արտաքուստ առակցեալ՝ մի եկեղեցի տեսանի՝, սակայն 'ի ներքուստ բաժանեալ կայ յերկուս մասունս, և յատուկ կրկին դրամբք և յատակաւ. առաջին մասն է առ արևելս, քառանկիւնի, որոյ դուռն հայի յարևելս, յաջմէ և յահեկէ դրանն է բազմոց, յորոյ վերայ եղեալ կան անփոփոխ երեք զոյգ մեջակ աշտանակք, որոց մի զոյգն կճեայ աշտանակք են Յունաց, միջին մի զոյգն պղնձեայ մեր, և մի զոյգ ևս պղնձեայ աշտանակք Լատինաց, և 'ի ծագս բազմոցին երկուց կողմանց մի զոյգ մեծագոյն քարեայ աշտանակք են Յունաց, և 'ի յետուստ բազմոցին եղեալ՝ մի զոյգ մեծագոյն աշտանակք մերձ որմոյ Գերեզմանին են Լատինացւոց, և առընթեր նոցին առ արևելս մեծագոյն զոյգ մի աշտանակք մեր են:

Ի վերայ նոյն արտաքին դրանն 'ի ձախակողմն եղեալ կայ սուրբ Յարութեան պատկերն մեր. յորում է և պատկերն նք Լուսաւորչի 'ի նախնեաց անտի. որոյ առաջի մշտավառ կանթեղ մի. և 'ի վերայ սուրբ Պատկերին յորմն քանդակեալ կայ Յարութեան պատկերն Յունաց, որոյ առաջի մշտավառ կանթեղ մի, և 'ի վերայ քանդակածոյ պատկերին Յունաց՝ առ կախեալ կայ պատկերն Լատինաց, մշտավառ կանթեղ մի ա-

առաջի նորա, և 'ի վերայ դրանն և ատեանին հա-
վանի ունէր ատուղանիշ լայնատարած մոմաշոր՝
ընկերութեամբ երից ազգաց, Հայոց, Յունաց
և Լատինաց. որոց առաստանք ձգեալ և ամբա-
ցեալ կան 'ի մեծ կամարն Յունաց, և 'ի մեր վեր-
նատան կամարն և Լատինաց կամարն որ 'ի վե-
րայ Պարտիզին. և 'ի յետ կոյս առաջին երկա-
ցիկ դրանն են կրկին դրունք ընդ որովք ելա-
նեն 'ի տանիս սրբոյ Գերեզմանին. Պարտիզի կող-
ման դուռն յատուկ Լատինաց է, և բանալին
առ նոսա է. բայց մեր կողմանն դուռն ընկերու-
թեամբ է մեր և Յունաց, որոց մի բանալին առ
մեզ կայ, և միւսն առ Յոյնս:

Իսկ 'ի ներքուստ սոյն երկայցիկ դրան 'ի
ճակատն եդեալ կայ մոմաշոր պատկերն Յու-
նաց, յորոյ վերայ պատկերն Լատինաց է, իսկ
Պարտիզի կողման կամարն դատարկ է, իսկ 'ի
մեր կողմանն 'ի մէջ կամարին յորմն եդեալ կայ
մեր սուրբ Յարութեան պատկերն, և 'ի ներքոյ
մեր պատկերին յանկեանն դնեմք յատուկ շար-
ժական սեղանակ մի, յորոյ վերայ դնի նշխարք,
բաժակ, խորհրդատետր, և այլ հարկաւոր իրք
'ի ժամ սուրբ Պատարագին մերոյ, այլ 'ի բաց
առնումք անտի զկնի պատարագին:

Հանդէպ մեր պատկերին 'ի վերայ վիմի հը-
րեշտակին ունիմք չորս մշտավառ կանթեղս, և
կանթեղ մի ևս Խաչուոց 'ի չորս մեր կանթե-
ղաց. և հինգ կանթեղ մշտավառ՝ միջինն է Լա-
տինաց, և Պարտիզի կողման հինգ կանթեղ մշտ-
ավառ է Յունաց, և նոցունց վէմն հրեշտակին

է 'ի կեդրոն, որոյ բարձրութիւնն է վեց թզաչափ և լայնութիւնն երկու, յատակն և որմն կերտեալ կան կճեայ պատուական քարամբք, և ներքագոյն սեամբք յօրինեալ գեղեցիկ. և յանկեան մեր կողման՝ որ է հարաւ՝ է բոլորշի լուսամուտ մի, որով տայ արտաքս լուսահան վարդապետն մեր զլուսաւորեալ մամսն. և յանկեան Գարտիզի կողման լուսամուտն, որ առ հիւսիս՝ տայ արտաքս Յունաց լուսահան վարդապետն զլուսաւորեալ մամսն, որոյ երկայնութիւնն յարևելից յարևմուտս 12 թզաչափ, և լայնութիւնն 'ի հիւսիսոյ առ հարաւ 9 թզաչափ։

Իսկ երկրորդ մասն և ներքին դուռն սրբոյ Գերեզմանին է սակաւ ինչ խոնարհագոյն քան զառաջինն, և ճակատ դրանն՝ յաջմէ և յահեկէ պատուական կճեայ քանդակածոյ և փռիւգեայ քարամբք յօրինեալ ծաղկատեսակ՝ յագաձև, մարդակերպ և հրեշտակակերպ. սուրբ Գերեզմանն 'ի ներքս յարևելից կուսէ առ հիւսիս կայ. որոյ երկայնութիւնն յարևելից յարևմուտս է տասն թզաչափ, և լայնութիւնն հինգ. բարձրութիւնն երեք. պատեալ մաքուր սպիտակափայլ մարմարիոնեայ քարամբք, նոյնգունակ և չորեքին որմքն և յատակ սրբոյ մատրանին։ Ի վերայ սրբոյ Գերեզմանին 'ի հիւսիսային յորմն 'ի յանկեան դրանն դնի մեր սուրբ Պատկերն, որոյ առաջի վեց աշտանակ և չորս ծաղիկք 'ի զարդ. և 'ի միջի է պատկերն Յունաց համակ կճեայ և քանդակածոյ, որոյ առաջի վեց աշտանակք և չորս ծաղիկք 'ի զարդ. և յաջմէ

նորին եդեալ կայ պատկերն Լատինաց՝ վանդակապատ, և վեց աշտանակ և չորս ծաղիկ ։ Եւ հանդէպ դրանն՝ յորում արևմտեան դոյ պատուհան մի ընկերութեամբ. ուր դնին մոմ, մաքրիչ, քերիչ, և աւել, և այլն ։

Աշտավառ կանթեղք 'ի վերայ կենդանատու Գերեզմանին է 43. որոց 13 մեր, 13 Յունաց, 13 Լատինաց, և 4 Խփտաց. 'ի ժամ սուրբ Պատարագին կազմի սեղան շարժական 'ի վերայ սրբոյ Գերեզմանին, և ծածկեալ պատատուակաւ, արկանի կորբուրայ, և դնի օծեալ Վէմ. խաչ, Աւետարան, և յիշատակարանք, և երկու այլ աշտանակք. և զրակալաւ պատարագամատոյց ըստ միշտ սովորութեան, և գորգ առաջի սրբոյ Գերեզմանին, և զկնի սրբոյ Պատարագին 'ի բաց բառնին ամենայն եդեալք. նոյն օրինակ առնեն Յոյնք, և Լատինք ։

Իսկ արտաքոյ բարձրութեան սրբոյ Գերեզմանի մատրանս 'ի յատակէ մինչև ցգօտին 18 թիզ, և մինչև ցքաւիղն 20. և 'ի վերայ քաւիղոյն զոն հաստատեալ պատուանդան 36 աշտանակաց, զորոց կախին 36 կանթեղք, որոց 12 աշտանակք և 12 կանթեղք մեր են. նոյն թըւով աշտանակք և կանթեղք Յունաց և Լատինաց ։ Եւ գմբէթն սրբոյ Գերեզմանին, հաստատեալ կայ 'ի վերայ երկոտասան սեանց՝ և կամարաց. զոյգ զոյգ խառնեալ. բարձրութիւնն 10 թզաչափ մինչև ցգօտին, և չորս չորս թիզ տարակացք յիրերաց. և գմբէթն կապարեայ տախտակամած ։

Ի մէջ 12 կամարացն կախին երեք երեք կանթեղք, որ առնէ 36. որոց 12 Մեր են, 12 Յունաց, և 12 Լատինաց: Եւ ՚ի վերայ գաւազին են 36 աշտանակք՝ զորոց կախին 36 կանթեղք. որոց 12 աշտանակք՝ և 12 կանթեղք մեր են, և նոյն թուով Յունաց և Լատինաց. և երեք մեծագոյն կանթեղք ՚ի մէջ գմբեթին, որոց մին մեր է, միւսն Յունաց, և միւսն Լատինաց:

Յամի Տեառն 1829, մինչ ողորմութեամբն Աստուածոյ նորոգեցան հնագոյն հրովարտակք Պատարագի սորա Գերեզմանին Քրիստոսի, ՚ի յերկրորդումն աւուր Սեպտեմբերի ամսոյ եղև սկսեալ պատարագելոյ ՚ի վերայ շնորհաւոր Գերեզմանին, բայց այսու պայմանաւ. նախ՝ Յոյնք, զկնի մեք, և ապա Լատինք պատարագեն, բայց ՚ի յառաջագոյն հանդիսի աւուր՝ զկնի ամենեցուն հանդիսաւորին ունին պատարագել մեծահանդիսիւ, որպէս ասացեալ եմք ՚ի անցելոյ խօսամ:

Իսկ՝ վերին մեծ կապարապատ գմբէթն սրբոյ Յարութեան, որ այժմ ՚ի ձեռս Յունաց է, է կառուցեալ ՚ի վերայ քսան կամարաց. յորոց կախին շարանք կանթեղաց աւելի քան զերեք հարիւր. և ՚ի չորս կողմունս գմբեթիս են պատկերք սրբոց Աւետարանչաց, առաջի նոցա կախին ջահաձև կանթեղք. և դուռն կամարացն է ընդ արևելս ՚ի վերայ տանեաց, ընդ որ ելանեն և մտանեն Յոյնք:



## Յաղագս Եկեղեցւոյն Յոհանու ։

Այս եկեղեցին է հանդէպ սուրբ Գերեզմանին Քրիստոսի. ՚ի մէջ Նորին ՚ի կերպարան գոյ կճեայ բոլորակ քար մի և փոս, որ ըստ Նոցա Նշանակէ լինել կեդրոն աշխարհի. Յաջմէ և յահեկէ դասուց են կրկին աթոռք, ընդ որս երևին ըստ չորս աստուածաբանաց. Խաչկալ խորանին գեղեցկանկար և ոսկեզօծ, և ունի վէմս դրուագ, պատկերօք և կճեայ աշտանակօք, և ջահիւք, և լապտերօք զարդարեալ է ըստ ամենայնի. սա կառուցեալ է ՚ի վերայ ութն կամարաց. և ունի հինգ լուսամուտս ՚ի գմբէթն. Սորա երկայնութիւնն է 120 ոտնաչափ, և լայնութիւնն 45։

Առաջ դուռն է հանդէպ Գերեզմանին. երկրորդն՝ մերձ աստիճանաց Գողգոթային. և երրորդն՝ մերձ քանոնին, և յատուկ դուռն մի ևս, որով ելանէ ՚ի Գողգոթայ, և անցանէ ՚ի սենեակս և ՚ի տանիսն ։



## Վասն սրբոյ Պարտիզին ։

Ի սորոյ Գերեզմանէն գնալով դէպ ՚ի հիւսիս 40 ոտնաչափ, ուր է բոլորակ մարմարիոնեայ քար մի՝ այն է սուրբ Պարտէզն. ուր Քրիստոս երևեցաւ Մարիամու Մագդաղենացւոյն՝ յետ Յարութեան նման պարտիզպանի. Յովհ. Ի. 14. 18։ Յորոյ վերայ ունիմք մշտավառ կան-

թեղմի, առ կանթեղին Լատինաց. յաջմէ նորին սեղան պատարագամատոյց նոցա՝ յանուն Մարիամու Մագդաղենացւոյն. 'ի ձախմէ սենեակ մի, յորոյ վերայ երգեհոն և նուագարան ունին: Մերձ նորին՝ առաջի դրան եկեղեցւոյն, գոյ բոլորակ մարմարիոնեայ քար մի և՝ որոյ շրջապատան է ճաճանչ, անդ կայր Մարիամ Մագդաղենացին, անտի ետես զՔրիստոս. և յաջմէ դրանն է պահարան Ֆռանկաց:



## Յաղագս եկեղեցւոյն Լատինացւոց:

Անտի չորս աստիճանաւ ելեալ մտանէ յեկեղեցին Լատինացւոց, որ առ հիւսիս, որոյ երկայնութիւնն է 33 ոտնաչափ, և լայնութիւն 26: Ունի զերիս խորանս, սեղանն որ կայ 'ի յետ կոյս դրան, է չարչարանաց. որոյ 'ի ներքս գոյ մասն մի 'ի քարեայ սիւնէն՝ յորում կապեցին զՔրիստոս 'ի տանն Կայիափայ, որ ունի բոլոր լուսամուտ մի, և գաւազան մի 'ի նմա եդեալ, և կալեալ զգաւազանն հպեցուցանեն 'ի սիւնն, և հանեալ համբուրեն՝ ըստ նոցին սովորութեանն: Իսկ միջի խորանն է յանուն սուրբ Աստուածածնին և յաջակողմեանն յանուն սրբոյ Խաչին. և մերձ խորանիս գոյ դուռն մի՝ ընդ որ մտեալ լինի 'ի վանս նոցա:



Յաղագս Ղունկիանոսի հարիւրապետի խորանին ։

Գտանելով ՚ի չորրորդ Թանկոս երր. 63 առնաչափ՝ է խորան մի յանուն սրբոյն Ղունկիանոսի, որ հաւատալոց ՚ի խաչելութիւնն Քրիստոսի՝ տեսանելով զեղեալսն, այսինքն զխաւարումըն արեգական, զշարժումն երկրի, զպատառումն վարագուրի տաճարին՝ և վիմացն, և զյարութիւն մեռելոցն. «Իբրև տեսեալ հարիւրապետին որ ինչ եղևն». Մատթ. իէ. 54։ Մարկ. ժե. 39։ Ղուկ. իգ. 47։ «Իբր այլ ամէն զինուոր խոցեաց տիգաւ զկողն Յիսուսի». Յովհ. ժթ. 34. 37։ «Այլ մի ամէն ՚ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, եւ վաղվաղակի ելին արիւն և ջուր». Յայտնեալ չէին մի յարենէ փրկեչին յանձն նորա, խոց և խոց ընդկալեալ զկոյս աչաց մարմնոյն, քանզի միակամք էր, ընդ նմին լուացորեցաւ և անին հոգւոյն. ուստի հաւատացեալ, և զղջացեալ ապաշխարեաց սա, և մկրտեալ մարտիրոսացաւ. Յայսմաւուր, Մարտի 16։ Այս ոչ գտանի ՚ի Թաքօրի և ոչ ՚ի Գաւառակէզն ։

Այսց զանազան կարծիք է ՚ի մէջ երկուցունց, թէ որն իցէ սա Ղգնեալ, հարիւրապետն, թէ զինուորն՝ որ խոցեաց զկողն Յիսուսի ։ Իւ սա էր ազգին Հայկեշէից, բայց այժմ Յոյնք ունին զսա ։



Յաղագս հանդերձից բաժանման խորանին մերոյ և վիճակին ։

Աստի գնալով 23 ոտնաչափաւ՝ է խորան հանդերձի բաժանման, սակայն 'ի մէջ Ղունկիանոսի և հանդերձի բաժանման խորանացն գոյ դուռըն մի կամարակապ, ընդ որ ելանէ չորս աստիճանաւ ։ Էր սա դուռն սրբոյ Յարութեան տաճարին, այլ այժմ սենեակ է Յունաց ։ Ի մէջ սոյն դրանն և մերոյս խորանին գոյ բոլորակ խատուտիկ սիւն մի, 'ի սիւնէս մինչև հասանել 'ի մէջ Լուսաւորչի եկեղեցւոյ դրան՝ և փուշ պսակի խորանի մերձ եղեալ խատուտիկ բոլորակ սիւնն՝ հանդերձ պողոտայիւ և առաստաղիւ մինչև 'ի յորմն եկեղեցւոյն Յունաց՝ մեր վիճակն է ։ Յամենայն Ուրբաթի աւուր, կամ երբ և կամիմք լուանամք և աւել ածեմք, մինչ 'ի բոլոր Եկեղեցին սուրբ Լուսաւորչին՝ և մինչև 'ի Գիւտ Խաչի աստիճանաց սկիզբն ։ Ի վերայ պողոտայիս գոյ եօթն կանթեղ մեր միայն . քանզի տեղիս բնական վիճակ մեր է ։

Առ յետ խաչելութեանն Քրիստոսի, առեալ զինուորաց զհանդերձն, ստորանօր արարին չորս մասունս, քանզի չորք էին զինուորքն . իսկ պատմուճան նորա էր առանց կարանի փորանկեալ ամենևին՝ այսինքն հիւսեալ, արկին վիճակ 'ի վերայ, ում և ելցէ . զի մի պատառեսցեն . Մատթ . ԻԷ . 35, 36 ։ Մարկ . ԺԵ . 24 ։ Ղուկ . ԻԳ . 34 ։ Յովհ . ԺԹ . 23, 24 ։

Առաջի խորանին յատուկ կանթեղ մի է մըշտավառ, և շարան մի բաղկացեալ 'ի հինգ կան-

տաս 'ի սուրբ Լուսաւորչին կատարի, և սուրբ Գաստարայ մատչի. զկնի այնորիկ՝ եղանեմք 'ի Թաբոր մեծաւ հանդիսիւ շուրջ զկենսատու սուրբ գերեզմանաւն Քրիստոսի :

## Յաղագս փուշ պսակին :

Յեղանելով 'ի Գիւտ խաչին 'ի վեր՝ դառնալով 'ի ձախմէ չորս աստիճանաւ՝ է խորան փուշ պսակին, կամ սիւն ծաղրանացն. զի 'ի տանն Պիղատոսի, 'ի վերայ նորա նստուցեալ զՏէրն մեր. զգեցուցին նմա քղամիդ կարմիր. և փշեղէն պսակ եդեալ 'ի գլուխ նորա, և զեղէգն յաջն ձեռին, ծունր իջեալ առաջի, կատակէին զնա՝ և ասէին. ողջ եր Թագաւոր Հրէից. և թքեալ 'ի նա առնուին զեղէգն և ծեծէին զգլուխ նորա. Մատթ. իէ. 27. 30: Մարկ. ժե. 16. 20: Յովհ. ժթ. 2, 3: Սա էր յառաջ Հապէշ ազգին. այժմ Յոյնք ունին զսա :

## Յաղագս սրբոյ Գողգոթային :

Ի փուշ պսակի խորանէն 40 աստիճանաւ դը-նալով առ արևմուտս մերձ Պատարանատեղւոյն, 'ի ձախմէ 18 աստիճանաւ ելանէ 'ի մը Գողգոթայ, որոյ երկայնութիւնն է 30 աստիճանաւ, և լայնութիւնն 18. ուղղակի յաջմէ է տեղի խաչելու-

թեան, որ է բոլորակ արձանաթապատ. յորոյ վերայ է սեղան Պատարագամատոյց՝ ’ի վերայ քառից կճեայ պատուական սեանց. յաջմէ և յահեկէ սուրբ Տեղւոյն են պատուեալ վէմք, և կրկին պատկերք սուրբ Աստուածածնի, և Յովհաննու Աւետարանչին, և անհեղանկար սուրբ Պատկեր խաչելութեանն ’ի մէջն. և ունի կրկին կարգօք մշտավառ կանթեղս քսան և վեց, և աշտանակս. և ’ի կողմն արևելից և հիւսիսոյ յանկեանն է սեղան մի. և մերձ նորին դուռն մի՝ ընդ որ իջանեն յեկեղեցին Յունաց. և մեծ դուռն մի ևս ’ի մէջ երկրորդ կամարին, որ ելանէ ’ի սենեակն, և այլն:

Դրան կրկին քառակուսի հաստատակառոյց սիւնք, որք բաժանեն զտեղի խաչելութեան և Տապանածման. հանդէպ առաջին սեանն է խորան Լատինաց՝ և ’ի ձախմէ նորին Աւագ խորանն. որոյ առաջի քառակուսի յօրինեալ գունագոյն քարամբք է տեղի Տապանածման, յորոյ վերայ ինն կանթեղ մշտավառ, և կից որմոյն ծագէ ’ի ծագ բազմոց, և լուսամուտ մի՝ որ հայի ’ի Սգաւոր սուրբ Աստուածածնի եկեղեցին. տասն և ինն աստիճանաւ իջանէ ’ի յետս կոյս մեծի դրան սրբոյ Յարութեան. ուր գոյ բաժանեալ սիւնն մերոյս վերնատանն. և առ արևելս է դուռն Ադամայ գերեզմանին: Եւ այժմ այն սրբազան Տեղւոյս Յոյնք միայն իշխեն՝ և պատարագեն. Եւ չէ՛ մեզ առ այժմ հրաման պատարագելոյ, այլ միայն երթամք յՈւխտ և յերկրպագութիւն, և ’ի Թափօրի ընթեռնումք զաւետարանն:

Նորա միով աստիճանաւ բարձրութեամբ են բազմոց, յորոց ներքոյ են և այլ հինգ գերեզմանք Թագաւորացն Լատինացւոց, և այլն:



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ
## Ի ՎԵՐԱՅ ՍՈՒՐԲ ԳՈՂԳՈԹԱՅԻՆ

### Յաղագս սրբոյ Գողգոթային:

Ի գիրս Դաշանց՝ յերես 419 և 420: Նոյն ՚ի Հաննա պատմութիւն, յերես 81 և 203: Նոյն ՚ի Հայոց պատմութիւն, Ա. հատոր, յերես 630: Սեղբեստրոս ասէ, պարգևեցի Նորապսակ պարթևիս մերոյ՝ (այսինքն Գրիգորի լուսաւորչին,) յիշատակ յաւիտենական ազգաց յազգս, ՚ի յերուսաղէմ քաղաքն՝ իջևանք Հայոց աղօթականացն՝ զվկայարան սրբոյն Յակոբայ եղբօրն Յովհաննու ծծաքան Աւետարանչին, և այլն....: Ընդ պատրաստեցի և տեղի Պատարագի սրբոյն Գրիգորի ՚ի Յարութեան մեծի եկեղեցւոյն՝ զԳողգոթայ խաչելութեան տեղին. և զնաւաբից ղուղղէյր գերեզմանին Քրիստոսի, և զմիջև կանթեղն մշտավառ, որք կան երեք կանթեղք ՚ի վերայ գերեզմանին Քրիստոսի. յիշատակ Լատինացւոց, Հայոց, և Հելլենացւոց. զորոյ օրինակն ասէ եդաք ՚ի Ջամբռն արքունի. Ի Գիրս Դաշանց:

Ի գիրս Հարցմանց գրէ և Տաթևացի սուրբ Հայրապետն, թէ Կոստանդիանոս և Սեղբեստրոս բաժանեալ զսրբ Տեղիս Տնօրինական, ետուն Հայոց

զՍբ Յակոբն պատրիարքարան . և զԳողգոթայն ,
և զսուրբ Կարապետն , և զՎանորայն , ( այն է Հրը-
րեշտակի վէմն , որ կայ այժմ 'ի ձեռս խափշւոց ։)
և արկեալ վիճակս 'ի վերայ Յարութե (Տաճարին)
անկաւ Հայոց , և տրամեցան ոմանք յազգէ նոցա ։
Նաև հեզն յամենայնի սուրբն Գրիգոր ետ նոցա ,
զի նոքա շինեսցեն ընդարձակ , զի դեռ չէր շի-
նեալ , և սահմանեալ զտեղիսն՝ կախեաց կան-
թեղս յանուն Ազգացս . և նա խնդրեաց յԱս-
տուծոյ զիջումն լուսոյն 'ի նշան Յարութեանն
Քրիստոսի դ ։ Յիշէ և Կիրակոս պատմիչ , թէ կա-
խեաց զկանթեղս , և այլն ։



Յաղագս սրբոյ Գողգոթային՝ ըստ ամին Վերայէ
Ի յետոյ Ժերոց ։

Յամի Տեառն 1434 կամ 1440 . և Հայոց՝
ՊՁԳ կամ ՊՁԸ ։ Ըստ Համմա պատմութիւն ,
յերես 187 ։ 226 . և 227 ։ Յաղագս առմանն Գող-
գոթայի 'ի ձեռաց Հայոց , գրէ որ և նա ինքն
հանեալ է 'ի յիշատակարանէ բազմաչխատ Ե-
գիպտացի Մարտիրոս Պատրիարքի Աթոռոյս Ե-
րուսաղէմի . նա և յարձանագրութեանց՝ որ 'ի
վերնատունն մեր , առէ ընդօրինակեցի ։

Եգիպտացի ոմն վաճառական Ղոյիսի անուն ,
գնաց 'ի Վրաց տունն յաղագս վաճառականութե ։
և էր սա բարեկամ Սուլթանին Եգիպտոսի՝ Մէլէք
Աշրաֆայ , որ տիրէր նա Երուսաղէմի . և մինչ
վերադարձեալ վաճառականն գնաց 'ի Վրաց տունն ,

Վրաց խանն Իւօվանէ անուն, խնդրեալ զօր օժանդակութիւն վաճառականին առ Սուլթանն Եգիպտոսի, բազում շողոքորթութեամբ և կաշառօք աղերսեաց. զի միջնորդ և բարեխօս լիցի առ Սուլթանն, առնուլ զսուրբ Գողգոթայն 'ի Հայոց՝ և տալ Վրացւոց. և խոստացաւ ամ յամէ 'ի Վրաց տանէն յղել քսան ծառայս յազգէ իւրմէ՝ Սուլթանին ընծայ վասն այսր իրի. և հաւանեցոյց զՂայիթպի վաճառականն 'ի ձեռն բազում կաշառաց կատարել զխնդիրս իւր. և յոյժ ընծայիւք և Վրացի ծառայիւք դարձաւ Ղայիթպին յԵգիպտոս, և ծանոյց Սուլթանին զաղերս Վրաց խանին, թէ այսքան ընծայ և Վրացի ծառայս յղեաց. և ամ յամէ յղելոց է քեզ. և այսպէս խոստացանեալ էառ զսուրբ Գողգոթայն 'ի ձեռաց Հայոց՝ և ետ Վրաց:

Իսկ Մարտիրոս պատրիարքն Երուսաղէմի էջ յԵգիպտոս առ Մելէք Աշրաֆ սուլթանն, և էառ կրկին զԳողգոթայն. բայց նոյն Ղայիթպին դարձեալ շրջեաց զմիտս Սուլթանին և ետ Վրացւոց. և Մարտիրոս պատրիարքն դարձեալ էջ յԵգիպտոս, և էառ զԳողգոթայն մինչև ցհինգ անգամ: Ապա Սուլթանն ասէ Հայրապետին մերոյ. թէ Վրաց խանն ինձ քսան ծառայ Վրացի յղէ՝ թող զընծայսն, ուստի չէ հնար տալ քեզ զԳողգոթայ, այլ երթ և ընտրեա քեզ տեղի մի 'ի մէջ Յարութեան, և ես վաճառեմ քեզ իբր Դ—ւ սեպհական, և ոչ ոք յայլոց ազգաց կարիցէ ներհակել քեզ. և Մարտիրոս վարդապետն եկեալ ընտրեաց զայժմեան Վերնատունն մեր, որ

ասի՝ թէ է տեղի Թագաւորաց, և դրամով գը-
նեաց, և արար եկեղեցի. և անուանեաց Երկ-
րորդ Գողգոթայ, և առ նովաւ փոքրիկ մատուռն
Երաշխաւոր սուրբ Աստուածածին. և յետ սուղ
ժամանակի, այսինքն քանի հինգ ամաց բնակին
եղեն Վրացիք յԵրուսաղէմ. և Յոյնք յափշտա-
կեցին զսուրբ Գողգոթայն, և զամենայն վանորայս
նոցա. և ապա Լատինք բռնութեամբ առին 'ի
ձեռաց Յունաց զկէս Գողգոթայի՝ և զՏարած-
ման տեղին: Հաննա վարդապետ, յեր. 187. 210 և 225:

Նա և 'ի նոյն պատմչէ հանեալ՝ գրի «Առին 'ի
ձեռաց Հայոց 'ի սմին ժամանակի ազգն Վրաց
զտեղին կոչեցեալն Գողգոթայ յԵրուսաղէմ. և
Թէպէտ Եգիպտացի Մարտիրոս վարդապետ, որ
յայնժամ վարէր զիշխանութիւն 'ի միաբանն ընդ
Եսայեայ պատրիարքին Երուսաղէմի, բազում
ջանիւք դարձոյց զայն, բայց կրկին եւս առին
նոքա. և ապա ինքն Մարտիրոս վարդապետն գը-
նեաց դրամովք զվերնատուն մի 'ի սուրբ Յա-
րութեան, և արար եկեղեցի, զոր և կոչեաց՝
Երկրորդ Գողգոթայ... Վիրք՝ որք յափշտակեցին
զայն տեղի ոչ կարացին վայելել. զի 'ի մեկնել
նոցա յԵրուսաղէմ, առին Յոյնք զտեղին. և
ապա զկէս Գողգոթային՝ զՏարածման տեղին,
Լատինք յափշտակեցին 'ի ձեռաց Յունաց »:
Ի պատմութեան Հայոց, Գ. հատ. յերես 473:



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ
## Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ



### Յաղագս դրան բացման ։

Այսու՝ Երկրորդ Թարգմանն Մեր գայ 'ի գաւառն սուրբ Յարութեան, և ազդ առնէ Տեղւոյն կառավարչին մերոյ այսինքն Ռէիզին ։ Նմա հնչեցուցանեմք նախ զմեր զանգակն, զկնի՝ Լատինաց, յետոյ՝ Յունաց, հուսկ յետոյ զխփուցն ։ Եւ այս հասարակ է, երբ և պատահիցի, թէ ընդ առաւօտս, թէ՛ 'ի տուընջեան, և թէ ընդ երեկս. և յորում ժամու հանդիպիցի, եթէ Մեր, եթէ Յունաց, և եթէ Լատինաց, այսպէս է ըստ միշտ սովորութեանն. բայց 'ի հանդիսաւոր աւուրս, յորս ունիմք գնալ 'ի կատարել զհանդէսս, թէ Թափօր իցէ և թէ ոչ Պատարագ. Այսպէս է սովորութիւն Մեր, Յունաց և Լատինաց. յետ ազդ առնելոյ կառավարչին՝ յաղագս դրան բացմանն, զկնի եկեսցէ կոչնակին մերոյ՝ առնու Լուսարարն մեր զտուփ ընչաղեղոյն, և երթայ նախ առ Լատինաց լուսարարն, և բացեալ զտուփն՝ տայ նմա զդեղունչ, որով յայտ առնէ նմա զբացումն դրանն, և ապա գնայ առ լուսարարն Յունաց՝ և տայ նմա նոյնպէս. ըստ այսըմ օրինակի առնեն և մեզ Յոյնք և Լատինք ըստ միշտ սովորութեանն ։

Ապա լուսարարն կամ սպասաւոր կառավարչին մերոյ տայ զսանդուխն արտաքս. փակէ ըզփեղկս բոլորշի լուսամատան դրանն, և բանայ ըզփակս և զնիգս 'ի ներքուստ, զըսպասմոցն և ըզտախտակն որ կայ 'ի յետոյս դրանն 'ի բաց տանու անտի. և սկսանի մաքրել զտեղին բարբաղանաց, և սրբել զգործս; գնել զբարձս, և զայլ իրս կարևորս, և վառարանաւ հուր գնել անդ 'ի պատրաստ. զի 'ի բանիլ դրանն՝ փութանակի եփեսցեն սուրճս. Նոյնպէս պարտ է առնել և զնիր փակման դրանն, առնուլ զսանդուխն 'ի ներքս, փակել զնիգս երկաթի 'ի ներքուստ, բանալ զբոլորշի լուսամատն, գնել անդ զըսպասմոցն, և առնել ածել և մաքրել:

Գիտելի է, զի եթէ երկայքին ազգք բանկացեն զդուռն, ընկերութեամբ սրբեն զտեղին հաւասար. ապա եթէ երկրին ազգք 'ի միասին գտնին բանալ. զդուռն Մեր 'ի մէջ Լատինաց և Յունաց կարգակերպ պատրաստել սրբել, և զծախս դրանն 'ի միասին հաւասար առնեն:



## Յաղագս ծննդեան և Տեառնընդառաջին Լատինաց ։

Ի 13 դեկտեմբերի ամսոյն, յաւուր տօնի ծննդեան Լատինաց, նա և Տեառնընդառաջին նոցա ; Թէ Մեզ և Թէ Յունաց ոչ գոյ սովորուԹիւն պաշտամանց բանալ, կամ զմոմս և զկանԹեղս լուցանել, այլ միայն զսուրբ Գաղտնիք կանԹեղն Մեր փոխեալ, զարծաԹին կախեալք ։ Եւ յայտնապէս աւուրս դուռն բանալ ոչ գոյ Մեզ և Յունաց առանց պատարագի, զի նոցա է յատուկ հանդէսն. յայսմ գիշերի Լատինն նախքան զՅունաց պատարագն մի անգամ և եԹ ձայնաւոր պատարագէ 'ի սուրբ Գերեզմանն՝ և զկնի խնկարկուԹիւն առնէ. և յետ այնուՑինն պատարագէ և ազգն Մեր. և զկնի Թիւ պատարագ կամ ձայնաւոր 'ի վերայ Գերեզմանին Քրիստոսի առնէ Լատինն ։ Եւ յետ այնորիկ ամենայն կարգաւորք Լատինաց երեք երեք անգամ Թիւ պատարագեն 'ի վերայ սուրբ Գերեզմանին, նոյնպէս և յաւուր Տեառնընդառաջին, և ելանեն 'ի մեծահանդէս Թափօր շուրջ զԳերեզմանաւ Տեառն երիցս, և այլն. որ ըստ կարգի, և արձակին ։



## Յաղագս ծննդեան Յունաց ։

Ի 25 Դեկտեմբերի ամսոյն, 'ի տօնի ծնըն-դեանն 'ի գիշերի ոմն Պատարագն լռու կարգի է. զկնի ըռ—նո—րիայ ելանեն Յոյնք 'ի Թափօր շուրջ զսուրբ Գերեզմանաւն երիցս ։ գան 'ի Պատա-նատեղին և անտի գնալով շուրջ զտեղեաւ հան-գերձի բաժանման և Պարտիզին, եկեալ մտա-նեն յեկեղեցին իւրեանց ։ ապա հարկանի ճա-շու կոչնակն Մեր, և կատարեմք զխորհուրդ-սուրբ Պատարագին 'ի վերայ կենսատու Գե-րեզմանին ։

## Յաղագս ամսամտի Յունաց ։

Գիտելի է, զի Յոյնք յամենայն ամսամտի օրհնեալ ջուր ամանաւ առեալ 'ի ձեռին, և մշտակաւ սրսկեն յամենայն տեղիս, և գան 'ի սենեակն մերս կառավարչին ըստ սովորութեն, շրջեցուցանելով ընդ ինքեանս զգանձանակս, զորս շահել պարտ է ։

## Յաղագս ծննդեան Ճրագալուցի Մերոյ ։

Ի 5 Յունվարի, 'ի մերս հրաշափառ ծննդ-եանն Քրիստոսի յերեկոյի Ճրագալուցին ժա-մերգութեան պաշտօնն կատարի 'ի Վերնատունն Սւ զկնի Լատինաց բուրվառին մինչ ելեալ 'ի սուրբ Գերեզմանէն գնայ յիւր վիճակն. յայն-

ժամ՝ դնայցեալ 'ի սուրբ Գերեզմանն պատրաս-
տեմք զանդղանն 'ի ներքս, և առաջի մը դրանն
ըստ միշտ սովորութեանն նախ հարկանի կոչ-
նակն մեր, և դնամք 'ի դուռն կենդանատու սուրբ
Գերեզմանին, և ասի ճաշու։ Եւ պատարագիչն
զգեստաւորի 'ի սենեակն կառավարչին մերոյ։
և ապա «Խորհուրդ խորին» ասեմք, առ 'ի կատա-
րել զխորհուրդ սուրբ Պատարագին։ Եւ զկնի
պատարագին շուրջ զԳերեզմանաւն դնամք 'ի
սենեակն կառավարչին, ասելով Շարական՝ դէ.
«Խորհուրդ մեծ և սքանչելի», և այլն։



Յաղագս տօնի ծննդեան Տեառն մերոյ։

Ի 6 Յունվարի՝ 'ի գիշերի սրբոյ ծննդեան.
ըստ որում Յունաց Մկրտութեան և Յայտնու-
թեան տօն է, վասն որոյ նոքա 'ի գիշերի պա-
տարագի կոչնակ ոչ հարկանեն ըստ կարգի, այլ
'ի առաւնջեան. ուստի պարտիմք զկնի Լատինաց
զանդակին՝ հարկանել անմիջապէս զմեր ճաշու
կոչնակն, և զպատարագն մատուցանել 'ի վերայ
սրբոյ Գերեզմանին ըստ սովորութեանն, և յետ
այնու կատարել զխորհուրդ Մկրտութեան ա-
ռաջի սուրբ դրանն։ Ապա ելանեմք 'ի թափօր
շուրջ զԳերեզմանաւն երիցս. դնամք 'ի սուրբ
Պատանատեղին, և դառնամք 'ի դուռն սրբոյ Գե-
րեզմանին. ուր երգեմք «զՏէր երկնից», և
շուրջ զԳերեզմանաւն գամք 'ի յՈւժաթափման
տեղին ուր երգեմք «զփառս 'ի բարձունս», և
այլն. որ զկնի։

Իսկ Յոյնք յիններորդ ժամու գիշերոյն բանան զսուրբ Յարութեան դուռն, և արկանեն գործ 'ի սուրբ Պատանատեղին, և դան հանդիսիւ 'ի ներքս, և այլն. ըստ կարգի ։ Վասն որոյ բանամք Մեք և Լատինք զաշտանակս սուրբ Գերեզմանին և զՊատանատեղւոյն և լուցանեմք. բայց պշարան կանթեղս լուցանել Մեզ և Լատինաց չէ սովորութիւն ; այլ միայն զեօթն կանթեղսն մեր լուցանեմք, որք են առաջի հանդերձ բաժանման խորանին 'ի վերայ պողոտային. իսկ հանդիսաւոր պատարագ նոցա 'ի վերայ սուրբ Գերեզմանին է, բայց զխորհուրդ Մկրտութեան ունին կատարել յեկեղեցւոջ իւրեանց, զկնի պատարագին ։

Ի 13 Յունվարի, 'ի տօնի ութօրեայ Աստուածայայտնութեանն գիշերային ժամերգութիւնն մեր պաշտի 'ի Սբ Յակոբ ։ Ապա հանդիսիւ գնամք 'ի սուրբ Յարութիւն. արկանի գործ առաջի սուրբ Պատանատեղւոյն, և հանդիսաւոր սուրբ Պատարագն մատուցանի 'ի վերայ կենարար սրբոյ Գերեզմանին. վասն որոյ Յոյնք և Լատինք բանան զաշտանակս Պատանատեղւոյն՝ և զսուրբ Գերեզմանին՝ և լուցանեն, որպէս և Մեք վասն նոցա ։ Այս հանդիսաւոր սուրբ Պատարագն Մեր՝ է փոխանակ Յունաց հանդիսաւոր պատարագին՝ որ 'ի 6 Յունվարի ։

## Յաղագս նորոգ հանդիսին Յունաց, որ եղև յամի Տեառն 1850։

Ի 18 Յունվարի, 'ի տօնի Հայրապետացն Աթանասի և Կիւրղի զարդարեն զճակատն գերեզմանին և լուցանեն զկանթեղս. յերեկոյին զոյգ կոչնակ և զոյգ բուրվառ և հանդիսաւոր ժամերգութիւն առնեն։ Իսկ 'ի գիշերի պատարագն ըստ կարգի՛ է. և ընդ առաւօտն հանդիսաւոր պատարագն 'ի մկնձակն իւրեանց. այս հանդէսս 'ի պատիւ Պատրիարքի նոցա է։

## Յաղագս Ծաղկազարդին Լատինացւոց։

Այս գիտել պարտ է, զի ոչ միշտ հանդիպի ընդ Մեզ 'ի միասին Զատիկն նոցա՝ որպէս յամի Տեառն 1854, զատիկն նոցա եղև 'ի մեր Ծաղկազարդին. և 1855, տօնեցին ընդ մեզ 'ի միասին. և 1856, զատիկն նոցա եղև յԱնառակի կիւրակէն. այսպէս յերեք տարին միանգամ լինի ընդ մեզ զատիկն, ուստի զանազանին հանդէսք նոցա 'ի մերոյս։ Եթէ չիցէ ընդ մեզ զատիկն նոցա, այսպէս առնել պարտիմք։ Ի շաբաթ օրն՝ յերրորդ ժամու տունջեան գնամք 'ի Թափօր նախ քան զԼատինսն. ապա եթէ չիցէ նոցա հանդէս, յետ նոցա ելանեմք 'ի Թափօր ըստ սովորութեանն։ Եւ ապա բանամք զաշտանակս զՊատանատեղւոյն և զսրբոյ Գերեզմանի դրա-

նըն, և պատրաստեմք զշարան կանթեղըն զվե-րինն և զներքին ։ Ի վեցերորդ ժամու Հարկա-նեն Լատինք զզանգակն վասն երեկոյի ժամեր-գութեանն. ապա Յոյնք, և զկնի Մեք. և յետ կոչնակաց իւրաքանչիւր ազգաց, կարգաւ գը-նայ բուրվառն, նախ Յունաց և զկնի Մերն՝ և ապա Խփտաւոցն, և կատարեմք զպաշտօն ժամեր-գութեան մերոյ 'ի Վերնատունն ։ Եւ յետ այ-նորիկ բանան զդուռն սրբոյ Յարութեան. յայն-ժամ լուցանեմք զշարան կանթեղըն և զաշտա-նակս զՊատանատեղւոյն և զդրան Գերեզմա-նին ։ Ապա գայ Լատինն հանդիսիւ 'ի ներքս, արկանի գործ 'ի Պատանատեղին՝ գան 'ի դուռն Գերեզմանին, և գնան 'ի միջնակս իւրեանց ։ Ապա մեծաւ հանդիսիւ ելանեն 'ի Թափօր 'ի սուրբ Տեղիսն, մինչ եկեալ ելանեն 'ի սուրբ Գողգոթայ, յայնժամ լուցանեմք զաշտանակս զսուրբ Պատանատեղւոյն ։

Ի գիշերի պատարագն 'ի վ͞ր ս͞ր Գերեզմանի ըստ կարգի է. Նախ՝ Յոյնք, ապա Մեք. և զկնի Լատինն Հարկանէ զզանգակն, և գայ 'ի դուռն Գերեզմանին ։ Եւ յետ բազում ընթերցմանց, բաժանէ իւրաքանչիւրոց. արանց զոստս արմա-ւենեաց ։ Եւ ելանեն հանդիսիւ 'ի Թափօր շուրջ զԳերեզմանաւ երիցս, և գնան 'ի Պատանատե-ղին, վասն որոյ լուցանեմք զաշտանակս զսուրբ Գերեզմանին և զՊատանատեղւոյն ։ Հուսկ յետոյ կազմեն սեղան շարժական առաջի դրան ս͞ր Գերեզմանին, և դնեն աթոռ 'ի ներքոյ սա-ափձանոց մերձ սեանն մերոյ. և յետ մատու-

ցանկելոյ զհանդիսաւոր պատարագն դառնայ անդրէն 'ի վիճակն իւր, և զսեղանն քակեալ բառնան անտի, և զայլ ամենայն ինչ որ եդան 'ի վերայ :



Յաղագս Առաջ շաբաթու տօնի Լոփինաց:

Յերկուշաբթի ոչ ինչ գոյ նոցա . յերեքշաբթի երեկոյին բանան զդուռն, որոց միաբանք եղանեն արտաքս . զի յաւուր չորեքշաբթի ընդ առաւօտն գնալոց են բազմութեամբ 'ի ձորն Գեթսեմանի առ 'ի կատարել զխորհուրդ ըմբռնմանն, և յեօթներորդ ժամու առնչեան բացեալ զդուռն՝ գան 'ի ներքս լուսելեայն . զի հանդէս կամ թափօր կամ ընթերցմունք ոչ գոյ նոցա, 'ի չորեքշաբթի երեկոյէ մինչ 'ի յԱւագ շաբաթի առաւօտն ոչ գոյ սովորութիւն նոցա զանգակ հարկանելոյ, այլ զտախտակ իմն հարկանեն իբր կոչնակ, և այն ոչ ըստ կարգի . վասն որոյ պարտիմք զկնի կոչնակին Յունաց հարկանել զՄերն անմիջապէս . բայց նախ քան զսկսանելն զայս խորհուրդս, շիջուցանեն զամենայն կանթեղս իւրեանց, որք են արտաքոյ Գերեզմանին, և ոչ զՄերն կամ զՅունաց . և եթէ յանդգնիցին շիջուցանել, զգուշանալ և չթողուլ պարտիմք ամենայն աչալրջութեամբ :

Յերեկոյի այսր աւուր գան 'ի դուռն սրբոյ Գերեզմանին 'ի կատարել զխորհուրդ մաղթանութեան : Նախ՝ դնեն անդ եռանկիւնի աշտանակ մի, յորոյ վերայ գոն հնգետասան մոմակալք,

ուր երգեն զՍաղմոսս կցորդ իւն , և Աւետարանս իւն , և լուցանեն զմոմեղէնսն , և մի մի կցորդաց չէջուցանեն զմոմս . այլ միայն մոմ մի յաշտանակի 'ի վառ , զոր առնու լուսարարն նոցա , և տանի Թագուցանէ 'ի ներքս 'ի Գերեզմանն , և յաւուրս ընթերցուածոց՝ պատուաւորն նոցա 'ի դուրս անկեալ 'ի դուռն Գերեզմանին զմտածական աղօթս արարեալ՝ աւարտին ։ Յայսմ գիշերի զկնի Պատարագին մերոյ , յութերորդ ժամու նախ Մեք և Յոյնք բառնամք զամենայն աշտանակս և զզարդս և զծաղիկս որ 'ի վերայ Գերեզմանին . և դնեմք անդ մի մի յատուկ աշտանակս մշտավառ , որ տևէ մինչ 'ի հինգերորդ ժամու Աւագ ուրբաթու . և Լատինն դնէ երեք զոյգ աշտանակս յաջմէ և յահեկէ հրեշտակի Վիմին , և աշտանակ մի ևս 'ի վերայ Վիմին . և զսուրբ Գերեզմանն զարդարեն ըստ հաճոյից իւրեանց . և արտաքոյ արտաքին դրանն յաջմէ և յահեկէ առընթեր Յունաց մեծագոյն աշտանակաց 'ի ներքոյ աստիճանին դնեն զոյգ մի աշտանակս , և զոյգ մի աշտանակ մեծ առ հիւսիս և առ հարաւ յաջմէ և յահեկէ արտաքոյ սուրբ Գերեզմանին՝ հանդէպ մերս երկոքին կամարացն , յորոց առ կախեալ կան մշտավառ կանթեղքն Մեր . և դայ Լատինն և կազմէ շարժական սեղան առաջի սուրբ դրանն , ուստի պարտ է մեզ բարւոք լուսաւորել զկանթեղս սրբոյ Գերեզմանին , և դնել մոմ յաշտանակն մեր , զի մինչ 'ի հինգ կամ 'ի վեց ժամ ոչ կարէ ոք մտանել 'ի սուրբ Գերեզմանն ։

Եւ յԱւագ հինգշաբթի աւուր իւրեանց ընդ առաւօտն բանան զդուռն սրբոյ Յարութեան, և հանդիսիւ գան 'ի ներքս ամենայն ժողովրդովք 'ի դուռն Գերեզմանին՝ ուր մատչի պատարագըն, և հաղորդին ամենայն քահանայք և ժողովուրդք. բայց խոստովանահայրն կացեալ առընթեր պատարագիչ քահանային, տայ իւրաքանչիւրոց աշխարհականաց կնքեալ թուղթ մի, զոր մի ըստ միոջէ ցուցանելով քահանային՝ հաղորդին. և որ ոչ ունի զնոյն կնիք 'ի ձեռին, արգելուն: Ապա ելանեն հանդիսիւ 'ի թափօր, և պատարագիչն բառնայ զհաղորդութիւնն, և շրջին երիցս զաւուրբ Գերեզմանաւ. և 'ի գնալն 'ի Պատանատեղին, վաղվաղակի բառնան զշարժական սեղանն՝ որ առաջի դրան Գերեզմանին. և եկեալ թափօրապետին մտանէ 'ի սբ Գերեզմանն, և դնէ զհաղորդութիւնն 'ի վերայ բազմոցին 'ի սնարս գերեզմանին, և զարդարեն զայն ամենայն զարդուք ըստ սովորութեան իւրեանց. և դնեն մեծագոյն աշտանակս մոմ առաջի դըրան ներքնոյն՝, և լապտեր 'ի վերայ հրեշտակի Վիմին, ուր մնայ մշտավառ մինչ ցառաւօտ Աւագ ուրբաթու իւրեանց. և կարգաւ խընկարկեն, և զոյգ զոյգ մտեալ 'ի ներքս երկրպագեն. 'ի յաւարտելն՝ և 'ի փակել դրանն սրբոյ Յարութեան, հարկանեմք զճաշու կոչնակն մեր, և սուրբ Պատարագն մատուցանի: Ապա եթէ Աւագ հինգշաբթին լիցէ ընդ մեզ 'ի միասին, նախ քան զպատարագն նոցա և քան զթափօրն, հարկանեմք զկոչնակն մեր, և պատարագեմք 'ի

սուրբ Գերեզմանն. և զկնի մեր՝ եկեալ կալմեն տեղան և պատարագեն, և ելանեն 'ի Թափօր 'ի հանձոյս իւրեանց ըստ մերոյ գրելոյն: Նու եթէ երից ազգացս եւս Աւագ ուրբաթ օրն 'ի միում աւուր պատահիցի, չունիմք սովորութիւն պատարագելոյ. և երբեմն յառաւօտին աւուր պատահի Լատինացւոց, Մեք և Յոյնք պատարագեմք, և նոքա ոչ:

Իսկ Յոյնն ըստ միշտ սովորութեանն զկարգն Ռոնալուային ունի կատարել յարտաքին դաւիթ սրբոյ Յարութեանն, և զջուրն մշտակա սրսկէ 'ի վերայ ժողովրդեանն՝ և աւարտի, 'ի ժամ չորս կամ հինգ: Ի վեցերորդ ժամու գան Լատինք 'ի դուռն Գերեզմանին և կատարեն ըզխորհուրդ Ռոնալուային: Նու յերեկոյի ժամուն հարկանեմք զկոչնակն զկնի Յունաց կոչնակին. ժամերգութիւնն Մեր և խորհուրդ Ռոնալուային կատարեմք 'ի Վերնատունն: Բայց բուրվառն Յունաց և Մերն ոչ մտանէ 'ի սուրբ Գերեզմանն խնկարկել որպէս յայլ աւուրս, այլ առաջի դրանն խնկարկելով դառնան յետս: Այլում երեկոյի Լատինաց Թափօր ոչ գոյ 'ի սուրբ Տեղիս. ուստի Եկեղեցէի կոչնակն Մեր հարկանեմք զկնի Յունաց:



## Յաղագս Աւագ ուրբաթու Լատինաց.

Ընդ առաւօտն յերկրորդ ժամու Լատինք ելեալ հանդիսիւ բարձեալ զսուրբ Հաղորդութիւնն՝ զոր եդին ՚ի վերայ Գերեզմանին, տանին ՚ի սուրբ Գողգոթայ. վասն այսր Մեզ և Յունաց չէ սովորութիւն զկանթեղս լուցանել կամ զաշտանակս, թէ զդրան Գերեզմանին և թէ զՊատանատեղւոյն. Իսկ ՚ի ժամ Թափօրի Լատինաց լուցանեմք զփոքր աշտանակս Պատանատեղւոյն.



## Հանդէս խաչելութեան և թաղմանն Քրիստոսի՝ ըստ Լատինաց.

Ի յիններորդ ժամու տօնելեան Աւագ ուրբաթու, եպիսկոպոս նոցա զգեստաւորեալ միաբանքն թագ ՚ի գլուխ, խաչիւ և գաւազանաւ, նոյնպէս և ամենայն քահանայք, սարկաւագունք և դպիրք նոցա սև զգեստ, գաւազանակիր, զոյգ քղանցաբարձք, և զոյգ խնկարկուք, և զոյգ քահանայք սպիտակազգեստ, խնկովք և մոմեղինօք բարձեալ զխաչն՝ յորոյ վերայ բևեռեալ կայ փայտակերտ պատկերն Քրիստոսի՝ ելանեն ՚ի թափօր հանդիսիւ. նախ գնան ՚ի Հանդերձ բաժանումն ՚ի խորանն Մեր, և զկնի ընթերցմանն միումն ՚ի քահանայից ելեալ առենաբանէ, և անտի գնան ՚ի փուշ պսակն, և անտի ելանեն ՚ի Գողգոթայ, և տարածանեն զխաչն ՚ի Տարածման տե-

ղուղն, ուր պրկեալ բեւեռեն զկերտեալ պատկերն 'ի վերայ խաչին, և ապա բարձեալ անտի կանգնեն 'ի Գողգոթայ, ուր բարձրացաւ Տէրն 'ի վերայ խաչին, անդ միահաղոյն անկեալ երկիրպագանեն ; և լռութեամբ զաղօթս մատծականս մատուցանեն ։ Ապա երգեն զերգս ողբական ձայնիւ, և կարդան զաւետարան խաչելութեանն ։ Իսկ յետ այնորիկ կրկին սարկաւագունք յօրինակ Յովսեփայ և Նիկոդիմոսի . եդեալ զսանդուղն 'ի յետուստ կողմանէ խաչին, հանեն նախ զբեւեռն աջոյ, ապա և զձախոյ ձեռացն և զոտիցն, և մի ըստ միոջէ համբուրեալ՝ տան սպիտակազգեստ քահանայից . Նոյնպէս և 'ի բաց առնուն 'ի գլխոյ նորա զփշեայ պսակն, և իջուցեալ 'ի խաչէն, պատեն մաքուր կտաւօք. զոր պատուեալ անուշահոտ բուրմամբ խնկոց, և բարձեալ 'ի չորեցունց քահանայից, իջանեն 'ի Պատանատեղին, ուր եդեալ յօրինեն զգեղս, և ընթեռնուն զաւետարան . ապա բանայ եպիսկոպոսն՝ զտապանակ խնկոցն, յորում լցեալ կայ կնդրուկ և հալուէ և այլ անուշահոտ խնկեղէք, ցանէ 'ի վերայ մարմնոյն . և մի ոմն 'ի քահանայից ելեալ 'ի բարձր տեղւոջ քարոզէ Արտաքացուց բարբառով ։ Իսկ ապա բարձեալ անտի տանին 'ի սուրբ Գերեզմանն, և առաջի սուրբ դրանն ատենաբանէ քարոզիչն, և անտի առեալ զխաչն՝ տանին լռաբար յեկեղեցի իւրեանց ։

Նման այսր պարտ է մեզ ըստ սովորութեան լուցանել զաշտանակս Պատանատեղւոյն միայն ։ Յայսմ երեկոյի զկնի Յունաց կոչնակին, անմի-

ջապէս հարկանեմք զՄերն , և պաշտեմք զմա-մերգութիւնն ։

# Յաղագս Աւագ շաբաթի աւուր Լատինաց , և լուսաւորեայն ։

Ընդ առաւօտն բանան զդուռն սրբոյ Յարութեան . գայ ժողովուրդն նոցա ՚ի ներքս , և փակեն զդուռն ։ Ապա ելանեն հանդիսիւ յեկեղեցւոյն իւրեանց և գան ՚ի Պատանատեղին , ՚ի յետուստ դրանն , առաջի բաժանեալ կամ երկձղի սեանն . բայց նախ դնեն ՚ի պատրաստ ՚ի վերայ բազմոցի արծաթի վառարանաւ հուր . և յետ ընթերցման ՚ի վերայ հրոյն , գայ Աւագ Թարգմանն նոցա՝ լուցանէ զմի մոմ ՚ի հրոյ անտի , և տայ եպիսկոպոսին . զոր առեալ լուցանէ զմի մոմն ՚ի յերից մոմիցն , որք եդեալ կան ՚ի գլուխ երեքստեղնեայ գաւազանին , զոր բարձեալ ունի ՚ի ձեռին քահանայն , և կացեալ կայ առընթեր եպիսկոպոսին . և անտի սակաւիկ մի յառաջ խաղացեալ՝ լուցանեն զերկրորդ մոմն , բայց երբեմն առաջի Իւղաբերից խորանին Մերոյ լուցանեն . և եկեալ ՚ի դուռն սրբոյ Գերեզմանին , ուր լուցանեն զերրորդ մոմն , և մըտանեն ՚ի Գերեզմանն , և սկսանին պատարագել . և յաւարտելն գնան ՚ի վիճակս իւրեանց ։

Բայց գիտել արժան է , զի ՚ի Շաբաթ երեկոյին Լատինաց լուսարարն և Թարգմանն գան առ տեսուչն Մեր , և խնդրեն ՚ի նմանէ հրաման , զի դիցեն ըստ սովորութեան երկոտասան աշ-

տանակս հանգերձ մոմով 'ի Վերնատանն Սիոն՝ 'ի մէջ վեց կամարացն, զորս 'ի սկսանելն զգիշերային ժամերգութիւնն իւրեանց, եկեալ լուցանեն, յոր մնան 'ի վառ մինչ յաւարտ մեծի Թափօրին, ապա եկեալ շիջուցանեն՝ և բառնան անտի զաշտանակսն. և պարտիմք զգոյշ լինել, և չթողուլ անդ զաշտանակս նոցա զկնի փակման սուրբ Յարութեան դրանն, զի մի ավարութիւն լիցի։ Փոխանակ աշտանակացս այսոցիկ, դնեմք և մեք զմեծ աշտանակս առաջի մերս սեան խաչելութեան սուրբ Պատկերին 'ի գիշերի սուրբ Զատկին մերոյ՝ 'ի ժամ Թափօրին և սրբոյ Պատարագին, ուր մնայ 'ի վառ մինչև յաւարտ պատարագին մերոյ, և այլն։



Յաղագս Լատինացւոց զանգին։

Ի գիշերիս յայսմիկ սկսանին Լատինք հնչեցուցանել զզանգակս, զկնի նոցա հարկանեմք և զմեր կոչնակն անմիջապէս։ Իսկ եկեալ կազմեն շարժական սեղան առաջի դրան սրբոյ Գերեզմանին, և անդ պաշտեն զժամերգութիւնն, և առնեն զլոյս և զձայնաւոր պատարագս։ Ապա ելանեն մեծաւ հանդիսիւ 'ի Թափօր երիցս շուրջ զԳերեզմանաւ. և 'ի չորեսին կողմունս կարդան զԱւետարանս, և դնեն 'ի Պատանատեղին, և բառնան անտի զշարժական սեղանն, և անտի գան 'ի դուռն սուրբ Գերեզմանին, և դնեն 'ի վերնակս իւրեանց։

Յաղագս Գիւտ խաչին Լատինացւոց ։

Տօն Գիւտ խաչի նոցա միշտ անխախտ գայ 'ի մերս Ապրիլ ամսոյ 21, և նոցա անկանի յերրորդ աւուր Մայիսի. նախ քան զամենայն եկեալ խնդրեն հրաման 'ի կառավարչէն Մեքմէ, զի արկանիցեն զծածկոյթս որմոց Գիւտ խաչին. բայց զկնի քսանև չորս ժամուց պարտ է նոցա 'ի բաց առնուլ զնոյն ծածկոյթսն ։ Իսկ վասն այսր հանդիսի լուցանեմք զվերին և զներքին կամարայ Մերոց շարան կանթեղսն, և զաշտանակս Գաստանատեղւոյն՝ և զդրան սրբոյ Գերեզմանին. այնպէս և լուցանեն Յոյնք զաշտանակս և զկանթեղս ։ Իսկ եթէ իցէ Մեզ Թափոր 'ի սմին աւուր, 'ի ցերեկի յերրորդ կամ չորրորդ ժամու գնամք 'ի Թափոր, զի նոքա յերեկոյին հանդիսիւ ունին գնալ 'ի Թափոր ։ Իսկ 'ի գիշերի Թիւ պատարագն նոցա է 'ի սուրբ Գերեզմանն, իսկ ձայնաւոր պատարագն 'ի Գիւտ խաչ է ։ Նոյն աւուր ելանեն 'ի Մեծահանդէս Թափոր երիցս շուրջ զԳերեզմանաւն ;՝ և 'ի սուրբ Գաստանատեղին, և այլն ։



## Յաղագս գալստեան Լատինացւոց 'ի վանս Մեր 'ի սուրբ Յակոբ և 'ի սուրբ Փրկիչ։

Յամենայն ամի 'ի 13 Յունիս ամսոյ՝ որ ըստ Լատինացւոց է 25, որ է տօն սրբոյն Յակոբայ մեծի Առաքելոյն ըստ Լատինացւոց, որք հարկաւ գան բազմութեամբ եկեղեցականաց և աշխարհականաց 'ի վանս սրբոյն Յակոբայ, և Նախատօնակ առնեն յերեկոյին, և յառաւօտու վերստին եկեալ՝ ամենայն կարգաւորք ըստ կարգի նախ թէ պատարագեն առաջի պատկերին սուրբ Փրկչի, ուր կառուցանեն սեղան շարժական. և ապա պատուաւորն նոցա, որ կոչի վէքար՝ այսինքն վէքիլ, որ է Սպանիացի, նա կատարէ մեծաւ հանդիսիւ զձայնաւոր սուրբ Պատարագ 'ի մատուռն սրբոյն Յակոբայ, յորում ամփոփեալ կայ Սքանչելագործ Պատուական Գլուխ նորին։ Եւ գիտելի է՝ զի սոյն ձայնաւոր պատարագն յատուկ իրաւամբ վերապահեալ է Սպանիացի կարգաւորին մատուցանել, որովհետև Արիւնամած Մարմին Սրբազան Առաքելոյս ամփոփեալ կայ 'ի Մայրաքաղաքն Սպանիա։

Նա և Լատինացիք 'ի Հոգեգալստեան իւրեանց յերեկոյի կիւրակէ աւուր գան հանդիսիւ 'ի վանս Մեր սուրբ Փրկչի՝ որ արտաքոյ քաղաքիս սուրբ Երուսաղէմի, և կատարէ ըզՆախատօնակն. և ընդ առաւօտն երկուշաբաթի աւուր վերստին եկեալ՝ նախ թէ պատարագեն ամենայն կարգաւորք նոցա 'ի վերայ կափարիչ Վիմին սրբոյ Գերեզմանին՝ և 'ի սուրբ Բանտն.

և ապա մին 'ի ծերունազարդ և 'ի պատուաւոր եկեղեցականաց նոցա մատուցանէ զձայնաւոր պատարագ 'ի վերայ կափարիչ Վիմին, և ապա արձակին ։



## Յաղագս մարմնոյ և արեան տօնի Տեառն՝ Լատինաց ։

Զկնի Հոգեգալստեան Լատինացւոց յերկրորդ շաբաթու հինգշաբաթի աւուր կատարի տօնս այս միշտ անփոփոխ, վասն որոյ Մեք և Յոյնք 'ի չորեքշաբաթի առաւօտուն բանամք զաշտանակս Պատանատեղւոյն և սրբոյ Գերեզմանի դրանն, և պատրաստեմք զվերքին և զներքին շարան կանթեղս 'ի լուցանել. յաւուր չորեքշաբաթի 'ի վեցերորդ ժամու հարկանի կոչնակն Յունաց, և գնայ խնկարկուն 'ի Գերեզմանն, և այլն. ապա հարկանի Մերն, և գնայ խնկարկիչն 'ի սուրբ Գերեզմանն. հուսկ յետոյ գնայ խափուռոց սարկաւագն ։

Ապա բանան զդուռն սրբոյ Յարութեան, արկանեն գորգ 'ի Պատանատեղին, գան Լատինք հանդիսիւ 'ի ներքս և գնան 'ի Գերեզմանն, և անտի գնան 'ի վիճակն իւրեանց ։

Ապա եկեալ 'ի դուռն Գերեզմանին կազմեն զշարժական սեղան, և զարդարեն զայն արծաթեայ աշտանակօք և զարդուք, և 'ի Պարտիզէ կողմն սեղան մի ևս. 'ի ներքոյ սեղանն կամ մեծի աշտանակացն՝ յորոյ վերայ դնեն զզգեստս, դնի աթոռ յաջմէ դրանն մերձ սեղանն մերոյ սուրբ

խաչելութեանն ; անդ 'ի դուռն Գերեզմանին կատարեն զպաշտօն երեկոյի ժամերգութեան : Ապա հանդիսիւ ելանեն 'ի Թափօր . նախ՝ 'ի սուրբ Պարտէզն , 'ի Բանտն , և այլն . ըստ կարգի : Ի գալն 'ի սուրբ Պատանատեղին լուցանեմք ըզ-մեծ և զփոքր աշտանակսն , բայց այսու կերպիւ , Մեք լուցանեմք զերկուց կողմանց զվեց փոքր աշտանակսն , Յոյնք՝ զԳողգոթայի կողման զերկու մեծ աշտանակսն , և Լատինք զմեր կողման զեր-կու մեծ աշտանակսն , և առնուն գան 'ի դուռն Գերեզմանին և գնան 'ի վիճակս իւրեանց , և բառնան առնուն զսեղանն . և միշտ այսպէս է սո-վորութիւն իւրաքանչիւր ազգացս , զոր անխա-փան առնեմք 'ի հանդիսի միմեանց : Ապա մնայ աթոռն 'ի տեղւոջ իւրում :

Յայսմ երեկոյի չունին սովորութիւն Եկեղե-ցէի՝ զանգակ հարկանելոյ . վասն որոյ զկնի Յու-նաց՝ հարկանեմք զՄերն անմիջապէս :

Իսկ 'ի գիշերի նախ Յոյնն հարկանէ զկոչ-նակն , յետոյ Լատինն , և զկնի Մեք . նախ քան զպատարագն Յունաց , գայ Լատինն 'ի դուռն Գերեզմանին , և կատարէ զպաշտօն ժամերգու-թեան , և գնայ . ապա գայ Յոյնն և պատարա-գէ , և զկնի Յունաց՝ Մեք : Իսկ ապա Լատինն հարկանէ զզանգակն , և գան ամենայն կարգա-ւորք պատարագեն Թիւ 'ի վերայ Գերեզմանին : Իսկ ընդ առաւօտն բանան զդուռն՝ և կառու-ցանեն շարժական սեղան առաջի դրան սուրբ Գերեզմանին , և զարդարեն ամենայն զարդուք , և հանդիսիւ գայ Եպիսկոպոս կամ Պատրիարքն

կատարել անդ զխորհուրդ հանդիսաւոր պատա-րագին, և եօթնիցս փոխեն զիւրեանց եպիսկոպոսին : բայց վասն պատարագի նոցա չէ՛ Մեզ և Յունաց սովորութիւն լուցանել զաշտանակս սրբոյ Գե-րեզմանի դրանն : Նա զկնի եղանեն ՚ի մեծահան-դէս Թափօր, դնելով զսուրբ Հաղորդութիւնն ՚ի մէջ ոսկեղէն և ճաճանչաւոր անօթոյ, որոյ յերկուց կողմանց ասեասնի նշխարին, և շրջին ե-րիցս զԳերեզմանաւ. ՚ի դուռն ՚ի սուրբ Գասա-նատեղին, լուցանեմք զաշտանակն ամենայն՝ ընդ Մեզ և Յոյնք, և փութով բառնան զշարժական սեղանն անտի՝ որ առաջի սուրբ դրանն, և ե-կեալ մտանեն ՚ի սուրբ Գերեզմանն, և խնկար-կեալ պաշտելով գնան ՚ի վիճակս իւրեանց :



Յաղագս Աւագ ուրբաթի աւուր Մեզ և Յունաց :

Յաւագ ուրբաթի օրն բաց առեալ ոչ է սովորութիւն Մեզ և Յունաց և Լատինաց եկե-ղեցեաց պատարագ մատուցանելոյ. վասն որոյ զկնի ժամերգութեան Մերոյ զճաշուն առնեմք առաջի դրանն սրբոյ Գերեզմանին համայն ըն-թերցուածովք, շուրջառաւ և զգեստուք, և առնելով ՚ի ձեռս մեր լուսաւորեալ մոմ. դնեմք յաշտանակն երեքասան մոմեղէնս առաջի նոյն դրանն, և յետ միոյ միոյ ընթերցուածոց և աւե-տարանաց շիջուցանեմք, որպէս ասացաք ՚ի գի-շերային ժամերգութեան ՚ի Վերնատանն .

Գիտելի է, զի այս փոքր հանդէսամ է փոխանակ հանդիսի Թաղմանն Յունաց, զոր առնեն 'ի Շաբաթ գիշերի: Յոյնք այսօր առնուն զուխտաւորս 'ի ներքս բազ հնոյ սովորութեանն. վասն որոյ զկնի ճաշու ժամուն գնամք 'ի Թափոր, և լուցանեմք զաշտանակս Պատանիատեղւոյն:

Այսօր քաղաքապետի վրանն հարկանի առաջի մեծի դրանն, ուստի բազ սովորութեանն կախեմք 'ի մեծ լուսամատէն մերս սեղանատան ճախարոց և առասան՝ զհարկաւոր իրսն անտի իջուցանել 'ի վայր և առնուլ 'ի վեր. և ընդ մեզ Յոյնք ևս առնուն և տան զկարևորսն իւրեանց. բայց զգոյշ լինել պարտ է մեզ չթողուլ Յունաց կախել զայլ իմն առասան, զի մերն է տեղին և լուսամուտն. ուստի ճախարոյն և չուանն մեր լինելոց է և ոչ օտար ազգաց:



## Յաղագս Թաղմանն Քրիստոսի՝ ըստ Յունաց:

Ի Շաբաթ գիշերի 'ի չորրորդ ժամու Յոյնք պաշտեն զժամերգութիւն յեկեղեցւոջ իւրեանց: Եւ ապա ամենեքեան զգեստաւորեալ, ունելով 'ի ձեռս լուսաւորեալ մոմ, խնկօք և մոմեղէնօք ելանեն մեծ հանդիսիւ 'ի Գողգոթայ, ուր զկնի բազում ընթերցման չորեքին զգեստաւորեալ քահանայք բառնան զպատկեր Թաղմանն Քրիստոսի 'ի յուսս իւրեանց, և համայն ժողովրդովք երգելով իջանեն 'ի Պատանատեղին,

յոր եղեալ պատուեն զայն խնկօք անուշիւք և համբուրմամբ ։ Ապա անտի բարձեալ գնան 'ի դուռն Գերեզմանին, յետ բաղում ընթերցմանց շրջին երիցս զԳերեզմանաւն. և յերրորդին տանին 'ի ներքս՝ և դնեն 'ի վերայ սբ Գերեզմանին. և անտի բարձեալ տանին յեկեղեցի իւրեանց ։ Վասն այսր հանդիսի սովորութիւն է լուցանել մեզ զկանթեղս և զաշտանակս Պատանատեղւոյն և դրան սրբոյ Գերեզմանին ։



## Յաղագս Հոգեգալստեան Տօնաց ։

Յայսմ երեկայի ինչ ոչ գոյ նոցա, այլ միայն ազդ առնեն Մեզ և Լատինաց սակս առաւօտեան դրան բացման, վասն որոյ բանամք զաշտանակս միայն. այլ կանթեղս լուցանել թէպէտ ոչ գոյ սովորութիւն. սակայն նոքա ըստ որում լուցանեն զշարանս 'ի մեր Աշխարհամատրան հանդիսի. վասն որոյ ներքին շարանս միայն լուցանեմք ։ Ի կիւրակէի ընդ առաւօտն բանան զդուռն և հանդիսիւ գան 'ի ներքս, 'ի Պատանատեղին առկանին գործ՝ և այլ ամենայն որ ըստ կարգի, և անտի գնան յեկեղեցի իւրեանց, պաշտեն զժամերգութիւնն. բայց հանդիսաւոր պատարագն 'ի սուրբ Գերեզմանն առնեն. ուստի 'ի գիշերի զկնի ժամերգութեան անմիջապէս նախ քան ըզԼատինն սկսանիմք կատարել զխորհուրդ սուրբ Պատարագին 'ի վերայ կենսատու Գերեզմանին, և այլն ։

## Յաղագս Վերացման խաչին Լամբրոնացւոց.

Ի Տէրս յերկրորդում աւուր Սեպտեմբեր ամսոյ՝ խաչ վերացն է Լամբրոնացւոց. յերեկոյին զօրք կամ թափօր ոչ գոյ նոցա յատուկ. բայց 'ի մուտ նոյն ամսոյն զարդարեն զՔր. Տարածմանատեղին, և զսուրբ Գորատիզէ կանթեղն փախեն և դնեն զարծաթի. ուստի և Տէրք և ս փոխեմք և կախեմք զարծաթին. 'ի գիշերիս յայսմիկ լուցանեմք զմեր Վերնատան երից լուսամուից միջի կանթեղսն, որ հայի առ սուրբ Գողգոթայ և 'ի Պատանատեղին, ուր մնան մշտավառ մինչ 'ի վերջ ձայնաւոր պատարագի նոցա. և ընդ առաւօտն զկնի թէ պատարագաց՝ հանդիսիւ բարձեալ բերեն զկենաց փայտն 'ի Տարածման սուրբ Տեղին, և դնեն յԱւագ խորանն, և յետ ձայնաւոր պատարագին՝ վերստին բարձեալ հանդիսիւ տանին 'ի վիճակն իւրեանց. վասն որոյ 'ի պատիւ կենաց փայտին լուցանեմք Տէրք և Յոյնք զսուրբ Գերեզմանի դրան կրկին զոյգ աշտանակսն՝ զմեծն և զփոքրն. աւելի քան զայս չէք ինչ.



## Յաղագս Վերացման խաչին Յունաց ։

Յամենայն ամի միշտ անխափան 'ի 14 Սեպ-տեմբերի ամսոյն կատարի տօնս. վասն որոյ պարտիմք պատրաստել զներքին երից կամարաց շարանս, և Ցօղոկէսի Արեւմտեայց կողման մի և կէս շարանի կանթեղս և զեօթն կանթեղսն՝ որք կան 'ի վերայ պողոտայի Հանդերձի բաժանման, և զաշտանակս զմեծ և զփոքր, զԳերեզմանին և Պատանատեղւոյն լուցանեմք. և փոխարէն նոցա Յոյնք լուցանեն զիւրեանց կանթեղս և զաշտանակս 'ի մեր Գիւտ խաչի տօնին ։ Այլ եթէ իցէ Մեզ այսօր Թափոր շաբաթական, զկնի Լատինաց գնամք 'ի Թափոր 'ի ժամ Ճաշուն և բանամք զաշտանակս ։

Յերեկոյին Յոյնք գան 'ի Ներքս հանդիսիւ, գունդ 'ի սուրբ Պատանատեղին, անտի ելանեն 'ի Գողգոթայ, ուր պաշտեն զժամերգութիւնն, և վասն զայդ բուրվառին նոցա եւս լուցանեմք ըն-փոքր աշտանակին որպէս յաւուր Ուրբաթու ։ Յայսմ երեկոյի չունին Եկեղեցէի կոչնակ. վասն որոյ զկնի Լատինաց զանգակին՝ անմիջապէս հարկանեմք զՄերն ։

Ի գիշերի նախ Յոյնք հարկանեն զյուր կոչնակ, զկնի նոցա Լատինքն հարկանեն զզանգակն, և յետոյ Մեք զմերն, և պատարագն ըստ կարգի է. նախ՝ Յոյնք, զկնի Մեք, յետոյ Լատինքն ։ Յիններորդ ժամու բանան զդուռն, հարկանեն զյուր կոչնակ, հանդիսաւոր պատարագ առնեն 'ի Գողգոթայ, կամ յեկեղեցւի իւրեանց ։ Այլ ելանեն

'ի Թաբոր, ելանելով 'ի Գողգոթայի կողմանէ դը-
րանէն՝ իջանեն 'ի Գիւտ խաչն. անտի ելեալ գան
զկողմամբ Գարտիզեն, և շրջին երիցս զԳերեզ-
մանաւ, և գան 'ի Պատանատեղին, և ելանեն
'ի Գողգոթայ. և փոխանակ այսր հանդիսիս ա-
նիմք մեծահանդէս Թաբոր 'ի տօնի մեր Գիւտ
խաչին:



## Յաղագս խնկարկութեան և լուցանելոյ զմոմեղէնս:

Յամենայն Ուրբաթի աւուրս 'ի վեցերորդ-
ժամու առաւօտեան մինչ հարկանի կոչնակ Յու-
նաց վասն երեկոյի ժամերգութեան, ըստ միջոց
անխափան սովորութեանն վաղվաղակի կանգնա-
չափ մոմ մի առեալ լուսաւորեն Մերոյ տանի և
դնէ յաշտանակին Յունաց 'ի սուրբ Գողգոթայ,
ուր մնայ մինչ խաւարս. յայսմ ժամու Մեք և
Յոյնք ունիմք լուցանել զսուրբ Պատանատեղւոյ
փոքր աշտանակն. այս յետ խնկարկութեան
Յունաց, Մեր և Ղփտւոյ, զկնի այնորիկ շէջու-
ցանեմք. բայց Յոյնն բառնայ զմոմեղէնսն յաշ-
տանակաց իւրեանց. յետոյ Լատինն դնէ զմոմս
յաշտանակն իւրեանց. և զկնի Լատինացւոց
զանգակին և յետ Մեր եկեղեցւոյ կոչնակին, մինչ
Թաբորն դայ 'ի Փուշ պսակն 'ի վերջանալն. մինչ
ունի ելանել 'ի սուրբ Գողգոթայ, յայնժամ
Մեք ելանեմք 'ի Թաբոր 'ի սուրբ Տեղիսն, և
լուցանեն Լատինք զՊատանատեղւոյ փոքր աշտա-
նակսն զՄեր և զիւրեանց, ուր մնայ մշտավառ.

մինչ 'ի վերջ Թափօրին մերոյ, այլ Մեք չի-ջուցանեմք ։

Նաև յամենայն Շաբաթէ աւուր 'ի վեց-երորդ ժամու 'ի Հարկանիլ Յունաց կոչնակին, Մեք և Յոյնք վաղվաղակի լուցանեմք զսուրբ գերեզմանի դրան փոքր աշտանակին յաղագս խնկարկութեան. այլ յետ խնկարկութեան Յունաց և Մեր և Խափշոց չիջուցանեմք ։

Յաղագս կոչնակաց և բուրվառաց ։

Յամենայն Հանդիսի աւուրս զկնի Հարկա-նելոյ կոչնակին մերոյ, յերեկոյի և յառաւօտու Սարկաւագունք Մեր զոյգ բուրվառաւ երթեալ խնկարկեն յամենայն սուրբ Տեղիսն Քրիստոսի միշտ անխափան ։

Այլ 'ի Հասարակ աւուրս բնիկ խնկարկուն յերեկոյի և յառաւօտու գնայ 'ի խնկարկել, բայց նախ Հարկանի կոչնակն Յունաց, և սարկաւագն նոցա գնայ 'ի խնկարկել. մինչ ելանէ 'ի սուրբ Գերեզմանէն, և իջանէ ընդ աստիճանսն` Հար-կանի կոչնակն Մեր. այլ գնայ սարկաւագն մեր 'ի խնկարկել, և զկնի մերն Խափշոց ։

Յամենայն երեկոյի 'ի ժամերգութեան աղաշ-տաման, նախ` Լատինն Հարկանէ զզանգակն իւր. զկնի նոցա Յոյնն Հարկանէ և գնայ բուրվառն. յետոյ Հարկանեմք զմերն, և գնայ բուրվառն մեր ։

Յամենայն աւուր 'ի ժամերգութեան Եկեղե-ցէ, սկսեալ 'ի մեծ Յարութեան Զատկի կիւրակէէն`

մինչև 'ի տօնն Յուռնոց Վերացման սրբոյ խաչի-նախ՝ Լատինն հարկանէ զիւր զանգակն, և եթէ ունիցի բուրվառ, գայ 'ի խնկարկել, և 'ի վերադառնալն զկնի նորա Յոյնն, և ապա յետ նորա զՄեր երկաթի կոչնակն հարկանեմք :

Այսպէս և 'ի Սեպտեմբեր 14. 'ի Յուռնոց խաչվերացի օրէ մինչ 'ի սուրբ Յարութեան Զատկին ճրագալուցի երեկոյին. նախ՝ Յոյնն հարկանէ զկոչնակն Եկեղեցին, զկնի նորա Լատինն, և ապա Մեք զերկաթին :

Գիտելի է, զի Յոյնք յուրեանց խաչվերացի երեկոյին, և 'ի մեծի պահոց Տեառն շաբաթ երեկոյին չունին ամփոփութիւն հարկանել զկոչնակ Եկեղեցին վասն հանդիսին իւրեանց. վասն որոյ զկնի Լատինաց հնչման զանգակին հարկանեմք զՄերն :

Նա և մինչ կամիցիմք 'ի յՈւժամթափման սուրբ Տեղւոյն կատարել զպաշտօն Եկեղեցի ժամերգութեանն, երիցս հնչեցուցանեմք զզանգակն Մեր, որ կախեալ կայ 'ի մէջ լուսամտի ամենեկի կուսամատրչին մերոյ, և չէ՛ պարտ սպասել Յունաց Եկեղեցի զանգակին. բայց եթէ 'ի հանդիսաւոր աւուր հանդիսիցն ասել անդ զԵկեղեցէն, և գտանիցին անդ Աւխաւորք Մեր. ընդերկար հարկանեմք զզանգակն Մեր արտաքս ըղ-Լատինն և զՅոյնն :

Ի հանդիսի աւուրս երեկոյի ժամերգութեան զոյգ կոչնակն Մեր հարկանի՝ մինչ հանդիսապետն մեկնի 'ի դրանէ սրբոյ Գերեզմանին, և կամ հասանի առաջի մատրանց Խափառոյ և Աղօրւոյ :

Իսկ 'ի գիշերային ժամերգութեան՝ կոչնակն Մեր միշտ անխափան հարկանի զկնի Լատինաց զանգակին, բայց եթէ 'ի նմին աւուր չիցէ սովորութիւն Լատինաց հարկանելոյ զզանգակս. յայնժամ հարկանեմք զկոչնակն Մեր զկնի Յունաց կոչնակին անմիջապէս. որպէս գրեցաք յայլում տեղւոջ:

Ի Լուսաւորչի շաբաթու Մեծի պահոց յատուկ դուռն Խփուոց է. բայց չունին հրաման ինքնագլուխ բանալոյ, այլ Մեք բանամք, բայց այսու կերպիւ, նախ հարկանեմք զՄեր զանգակողն, ապա զԽփուոց, յետոյ զԼատինաց, և ապա զՅունաց:

Գիտելի է, զի Յոյնք զկնի պատարագի իւրեանց՝ 'ի ժամ ճաշուն Մեր. պարտին փակել զդուռն Եկեղեցւոյն իւրեանց. որ կայ հանդէպ դրան սրբոյ Գերեզմանին Քրիստոսի:

Նաև 'ի ժամ Թափորին Մերոյ մինչ գտանիմք յայս չորեսին տեղւոջս. 'ի Հանդերձբաժանումն, 'ի Փուշ պսակն, կամ 'ի Պատանատեղին, և 'ի Գողգոթայ, արգելեալ է Յունաց հարկանել կոչնակ կամ հնչել զզանգակն թէ վասն կերակրոյ և թէ վասն դրան բացման:

Լատինք նախ՛ քան զՀամբարձումն իւրեանց երեք օր յառաջ. այսինքն՝ երկուշաբաթի, երեքշաբաթի, չորեքշաբաթի, 'ի ժամ ճաշուն՝ ելանեն 'ի Թափոր շուրջ զԳերեզմանաւն երիցս, և անցեալ ընդ դրանէ Գերեզմանին գնան 'ի վիճակս իւրեանց:

## Յաղագս Լատինացւոց բուրվառին։

Յերեկոյին նախ քան զկոչնակն Յունաց, բուրվառն Լատինացւոց գայ 'ի սուրբ Գերեզմանն, և եկեալ արտաքս յիջանելն ընդ աստիճանն, հարկանէ Յոյնն զկոչնակն, և այլն։ Եթէ գոյ Լատինացւոց բուրվառ, 'ի նշան այսորիկ՝ սուրբ Գերեզմանի դրան փոքր աշտանակաց մամրս՝ ոչ 'ի բաց առնուն Լատինք յաշտանակաց. զոր տեսեալ Յունաց մի հարկանիցեն զկոչնակ մինչև Լատինացւոց բուրվառն եկեալ 'ի Գերեզման, երթիցէ 'ի տեղի իւր։ Ապա թէ ոչ՝ եթէ Յոյնն հարկանիցէ զկոչնակ՝ լինի խռովութիւն։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՅ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՐՀԱՄԱՏՐԱՆ ՏԱՃԱՐԻ

*Յանկացեալ տարեկան հանդիսաւոր Թափօրք և պատարագք՝ ըստ վաղեմի կարգադրութեան պաշտամանց մեծի Առաքելական Աթոռոյն սրբոյ Երուսաղէմի ։*



### Վարագայ սուրբ Խաչ ։

Ի Շաբաթ աւուր՝ յեօթներորդ ժամու յատկապէս տամք բանալ զդուռն սրբոյ Յարութեան ․ Նախ՝ Աւագ լուսարարն 'ի ձեռն կառավարչաց իւրոց՝ պատրաստէ 'ի սուրբ Պատանատեղին կրկին զոյգ աւետարանաբարձս, զոյգ խնկարկիչս, կրկին զոյգ մոմակալս աւետարանաց, և կրկին զոյգ՝ առաջի Հանդիսապետին, և Թափօրական խաչ՝ որոյ առաջի զոյգ մոմակալ և խնկարկու մի առաջի Խաչին, և կարգաւ դասաւորէ 'ի Պատանատեղին ըստ երկայնութեան, և առընթեր աշտանակաց կանգնին սարկաւագունք առ արևելս և առ արևմուտս, և քղանցաբարձք առընթեր նոցին ։

Բայց եթէ Յունաց կամ Լատինացւոց ևս իցէ հանդէս, նախ ըստ կարգի նոքա մտանեն, ապա ազդ առնէ մեզ կառավարիչն Մեր ։

Յութերորդ ժամու հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ, սրբազան Պատրիարքն կամ Եպիսկոպոսն հանդիսապետ եղեալ՝ առաջի նորա գնայ փոխանորդն, որոյ առաջի Աւագ Թարգմանն,

և եռախմբիւ առաջի նոցա, և զկնի Հանդիսապետին Եպիսկոպոսք և Վարդապետք՝ ամենայն եկեղեցականօք գնան 'ի սուրբ Յարութիւն։

Եւ Տեսուչ սուրբ Յարութեանն ընդ առաջ ելանէ Հանդիսապետին 'ի մէջ վաճառանոցին առ 'ի պատուել զնա։ Ի մտանելն Հանդիսապետին 'ի ներքս, Աւագ լուսարարն 'ի յետոյ դըրանն տայ նմա շուրջառ՝ խաչ՝ և գաւազան, կարգէ և երկու քղանցաքարշս յաջմէ և յահեկէ նորին։

"Նախատօնակաւքն՝ ասէ 'ի ձայն, Եւ ես խաղաղ"։

Հանդիսապետն՝ անառնագրեալ ասէ, Օրհնութիւն և փառք"։ և արկանէ խունկ 'ի բուրվառն։

Պատարագիչն՝ երգէ ըստ դասին Շարական՝ զի. "Հրաշափառ աստուած"։ Սարկաւագունք զոյգ բուրվառաւ խնկարկեալ Հանդիսապետին՝ մեծենան մինչ 'ի սուրբ Պատանատեղին։ Հանդիսապետն տայ զգաւազանն Աւագ լուսարարին, և գնոյ կանգնի 'ի գլուխ Պատանատեղւոյն 'ի կողմն Գողգոթային՝ ունելով զերեսս յարեւմուտս։ Եւ առնու զբուրվառն 'ի Նախասարկաւագէն, խնկարկէ Պատանատեղւոյն, Թափօրական խաչին, Աւետարանաց, սուրբ Գողգոթային, և շուրջ զետեղեալն եպիսկոպոսաց և վարդապետաց, և ամենայն ժողովրդոց, և վերստին սուրբ Պատանատեղւոյն; ապա տայ ըզբուրվառն 'ի Նախասարկաւագն, և ինքն 'ի վերայ գորգին 'ի ծունկս անկեալ՝ համբուրէ ըզսուրբ Պատանատեղին Քրիստոսի, և ելեալ առնու զգաւազանն, և գնան Հանդիսաւորքն դա-

տողդաս 'ի սուրբ Գերեզմանն զոյգ զոյգ, մինչ հասանել Հանդիսապետն առաջի Իւղաբերից սե-ղանոյն 'ի մէջ սեանց, ասի Շարական՝ որ. « Առա-քեցար 'ի հօրէ », և այլն ։ Իբրև ժամանեն 'ի դուռն կենդանատու Գերեզմանին, հանդիսաւորքն պար առեալ շուրջ 'ի շուրջ կանգնին ․ աւետարա-նաբարձք առաջի սուրբ դրանն դասակարգ յաջ-մէ և յահեկէ, և Թափօրական խաչն հանդերձ խնկարկու սարկաւագաւն, և զոյգ լուսակալ դպիրք կանգնին առաջի դրան եկեղեցւոյն Յու-նաց ։ Իսկ զոյգ սարկաւագունք մտեալ 'ի սուրբ Գերեզմանն խնկարկեն. ապա Հանդիսապետն մը-տեալ խնկարկէ՝ և տայ բուրվառն 'ի Նախասար-կաւագն ․ և Նորա խաչանիշ խնկարկեալ հրեշ-տակի Վիմին՝ ելանեն արտաքս ։ Հանդիսապետն ելեալ Նստի յաթոռն՝ որ յետս կոյս արտաքին դը-րան եդեալ կայ ։

Ապա ամենայն հանդիսաւորք կարգաւ զոյգ զոյգ մտանեն 'ի Ներքս, և խոնարհեալ Հանդի-սապետին՝ համբուրեն զսուրբ Գերեզմանն Քրի-ստոսի, և ելանեն արտաքս մերոսին խոնար-հելով Հանդիսապետին ։ Ապա ելանէ արտաքս Հանդիսապետն, և շուրջ զԳերեզմանաւն գը-նացեալ ելանեն 'ի Վերնատունն՝ 'ի վիճակն Մեր, ասելով Շարական՝ « Բաքունորէն բացապարեա » ։ Ի մեկնիլ Հանդիսապետին 'ի դրանէ սրբոյ Գե-րեզմանին, և կամ մինչ հասանէ առաջի դրան մատրանաց Խփտուոց և Ասորւոց՝ հարկանի զոյգ կոչնակն Մեր ։ Իբրև հասանէ Հանդիսապետն 'ի գլուխ աստիճանաց 'ի Վերնատանն, ասի Շա-

րական՝ գչ. « Ուրախ լե՛ր սուրբ եկեղեցի », և այլն. և անդէն կատարեն զժամերգութիւն ըստ պաշաճի աւուրն ։

Վասն այսր հանդիսի մերում Ցոյնք միայն լուցանեն զշարան կանթեղս՝ և զաշտանակս Պատանատեղւոյն և զսուրբ Գերեզմանի դրանն՝ յերեկոյի և յառաւօտու 'ի ժամ սուրբ Պատարագին ։

Իսկ յիններորդ ժամու գիշերի հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ՝ դարձեալ ըստ առաջնոյն գնան ամենայն միաբանութեամբ 'ի սուրբ Յարութիւն 'ի Վերնատունն մեր, և պաշտի գիշերային ժամերգութիւնն ։

Ի ճաշուն՝ հարկանի զոյգ կոչնակ 'ի Վերնատունն, երիս Ողորմեայս առաջի դրան սուրբ Գերեզմանին ասի, 'ի սեննեակ կառավարչին ըզգեստաւորի պատարագիչն ։ Եւ անտի սկսանի « Խորհուրդ խորին », և 'ի հասանել պատարագիչ Եպիսկոպոսին 'ի մէջ սեանց, ասի Շարական՝ գչ. « Հրաշափառ աստուած ». Լուսացուցն և Ընտրեալն առաջի դրան սրբոյ Գերեզմանին ։ Սպասն 'ի վերայ հրեշտակի Վիմին դնի ։

Իբրև ընթեռնուն զճաշու գիրքն, ելանէ պատարագիչն՝ և նստի յաթոռն, որ առաջի արտաքին դրան սրբոյ Գերեզմանին դնի. Նոյնպէս և 'ի ժամ վերաբերման ելեալ նստի, սաղաւարտ 'ի գլուխ եդեալ. 'ի մերձենալ վերաբերման առաջի խաչելութեան պատկերին, յայնժամ յառնէ յաթոռոյն՝ զսաղաւարտն 'ի բաց եդեալ. առնու զընծայն, և տարեալ դնէ 'ի վերայ կեն-

սատու Գերեզմանին, և այլն. ըստ կարգին ։
Իսկ յաւարտ պատարագին, ասելով Շարականն՝ Դջ. « Որ զշնորհս աստուածային ». բերեն զպատարագիչն 'ի սենեակ կառավարչին ։
Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք" ։
Հանդխաղեփն, Պահպանիչ և յոյս հաւատա" ։
Իսկ ապա կարգաւ որպէս եկին, երթան 'ի վանս Մեր՝ սուրբ Յակովբայ ։

Գիւտ խաչի ։

Լուսարարն մեր՝ մեծ մոմ մի աշտանակաւ տանի՝ դնէ 'ի Գիւտ խաչն 'ի շաբաթ երեկոյին, ուր մնայ մշտավառ մինչև 'ի կիւրակէ. և զկնի փակման դրանն սրբոյ Յարութեան՝ բառնայ անտի, ըստ հնոյ սովորութեան ։ Այնպէս և Դաստաւորի 'ի շաբաթ երեկոյին ։

Ըստ օրինակի Վարագայ խաչի Շաբաթ երեկոյեան կարգադրութեանն է արարողութիւնն. բայց իբրև ելանէ արտաքս Հանդիսապետն 'ի սուրբ Գերեզմանէն, զկողմամբ սուրբ Պարտիզին գնան 'ի սուրբ Լուսաւորիչ՝ ասելով Շարական, « Սիօնի որդիք զարթիք ». Հանդիսապետն իբրև հասանէ 'ի սուրբ Լուսաւորիչն, և իջանէ 'ի յատակ եկեղեցւոյն՝ երգեն Շարական, Գջ. « Ուրախ լեր սուրբ Եկեղեցի », և այլն. ըստ կարգին ։

Համբերգութիւն ըստ պատշաճի աւուր պաշտի անդ ։ Յութերորդ կամ յիններորդ գիշերոյին ժամու հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ,

զնան տաճարայն Միւռոնաւք եւ ամբիոնական Աւե-
տարանք 'ի սուրբ Յարութիւն, գիշերային ժա-
մերգութիւնք 'ի սուրբ Լուսաւորիչ եկեղեցին
պաշտին՝ ըստ նախնի սովորութեան. յորժամ
երգեն զերրորդ տուն Հարցին՝ “Ուստի բու-
րելովն”. սարկաւագունք զոյգ բուրվառաւ
երիցս խնկարկեն սուրբ խորանին, եւ իջանեն 'ի
Գիւտ խաչ, խնկարկեն անդ՝ եւ դառնան դան
յատեան. եւ երիցս կրկնեն ըստ կրկնութեան՝
“Ուստի բուրելովին”:

Ընդ 'ի սուրբ Լուսաւորչի խորանն մատչի
'ի նմին աւուր Հանդիսաւոր պատարագն, եւ
'ի Գիւտ խաչն Սպասն դնի, յոր 'ի ժամ վերա-
բերման իջեալ՝ Հանդիսիւ վերաբերեն. Օծնի
Առաքելոցին զգեստաւորի Հանդիսապետն:

Աւագ լուսարարն տանի զկենսատու սուրբ
խաչն դնէ 'ի Գիւտ խաչն, եւ երկու աշտանակ
լուցեալ՝ յաջմէ եւ յահեկէ նորին: Յաւուր
սուրբ Պատարագին. Նախատօնակն ասէ 'ի ձայն,
Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք":

Հանդիսապետն ասէ, Օրհնութիւն եւ փառք
Հօր եւ որդւոյ". եւ արկանէ խունկ:

Դասապետն՝ ըստ դասին երգէ բարձրաձայն,
Շարական՝ Բյ. “Այսօր նշան սուրբ խաչին”.

Եւ իջանեն 'ի Գիւտ խաչ, Շարական՝ Ոյ. “Հա-
րաշակերտ եւ զօրեղ”. եւ ասեն Սաղմոս 'ի ձայն,
Ալէլուիա ալէլուիա, “Նշանեցաւ առ մեզ լոյս
երեսաց քոց”, եւ այլն: Աւետարան Մատթ. ԻԴ.
27 համար, “Զի որպէս փայլակն, մինչ 30. եւ փա-
ռօք բազմօք”:

Առաջնորդն՝ փառք քեզ տէր ած մեր. մք խա″.

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս, և այլն։

Առաջնորդն, Եւ ևս խաղաղութեան զտէր։

Հանդիսապետն՝ անտանագրեալ արկանէ խունկ, և առնու զբուրվառն, և խնկարկէ սուրբ խաչին, և համբուրեալ՝ բառնայ անտի, ասելով Շարականն՝ գկ. "Այսօր երևումն մեծի", կամ այ. "Նշանաւ ամենայաղթ խաչիւդ", և այլն։ Եւ եղանեն ամպհովանեաւ ընդ ճանապարհ մը Պարտիզին շար 'ի շար, և շրջին շուրջ զկենատաւ Գերեզմանաւն երկիցս. և յերրորդին Թափօրականն սուրբ խաչն՝ և աւագ խաչվառն որ զկնի Հանդիսապետին, կանգնին յանդիման մը դրան Գերեզմանին Քրիստոսի, որ է առաջի դըրան Յունաց եկեղեցւոյն։

Իսկ Նախընթաց երկոտասան խաչվառք ըստ միշտ սովորական դասակարգութեցն շարակարգեալ մնան։ Աւետարանաբարձ վարդապետք կամ քահանայք առաջի դրան աստուածընկալ Գերեզմանին շարադաս. և Թափօրականք պար առեալ յաջմէ և յահեկէ. Սարկաւագունք մըտեալ խնկարկեն 'ի սուրբ Գերեզմանն, Հանդիսապետյն մտեալ դնէ զսուրբ խաչն 'ի վերայ Վիմի հրեշտակին՝ և 'ի ներքս մտեալ խնկարկէ 'ի սուրբ Գերեզմանն։

Առաջնորդն, Որդի։ Աւետարան Մար. ԺԳ. 32. "Այլ վասն աւուրն այնորիկ, մնչ 37. արթուն կացէք", և այլն։

Առաջնորդն, Եւ ևս խաղաղութեան զտէր։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք, և այլն.

արկանէ խունկ և բառնայ զսուրբ խաչն երկու ձեռամբ, և դարձեալ շուրջ զԳերեզմանաւն երթան 'ի սուրբ Պատանատեղին, ասելով Շարականն՝ բյ. « Պարգևատուն ամենեցուն »:

Սարկաւագն, Որդի: Աւետարան Յովհ. ԺԹ. 38. « Յետ այսորիկ աղաչեաց, մինչ 42. եդին զյն »:

Հանդիսապետն, Հոգւոյն հանգուցելոց քն:

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զՏէր:

Աւետարանիչն, Քրիստոս որդի աստուծոյ ա՛:

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զՏէր:

Հանդիսապետն՝ արկանէ խունկ, և տայ Օրհնութիւն և փառք. և գան 'ի դուռն սուրբ Գերեզմանին, ասելով Շարականն՝ դյ. « Ահագին ձայնիւ », և այլն:

Հանդիսապետն մտեալ 'ի ներքս դնէ զսուրբ խաչն 'ի վերայ Վիմի հերձուածին, և մտեալ խնկարկէ 'ի Գերեզմանն. ապա զբուրվառն 'ի Նախասարկաւագն, և համբուրէ զսուրբ Գերեզմանն, և ելեալ նստի յաթոռ: Յայնժամ սարկաւագունք մտեալ 'ի սուրբ Գերեզման խընկարկեն, ըստ սովորութեան:

Սարկաւագն, Որդի: Աւետարան Մատթ. իէ. 57. մինչ 61, հանդէպ գերեզմանին:

Թափօրականք զոյգ զոյգ մտեալ համբուրեն զսուրբ Գերեզմանն, և զկենաց փայտն, և ելանեն արտաքս: Ապա ձայնիւ Տէր ողորմեա, ըստ սովորութեան:

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբա՛:

Հանդիսաւորն, Կեցո Տէր: Բուն. ամենազօր՛:

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զՏէր՛:

Ջանդխապետն, Օրհնութիւն և փառք Հօր":

Թափօրականք, 'ի ձայն առեն Շարականն, Էջ. "Խաչի քո քրիստոս", և այլն: Ըստ արարողութեան Աւագ ուրբաթու աւուր. խնկարկէ 'ի գերեզմանն և Թափօրականաց, ըստ կրկնութե̃ շարականին: Նոյնպէս երիցս կրկնելով, և ապա "Փառք սուրբ Խաչիդ ալէ". սուրբ Սիօնիդ ա". սուրբ Յարութեանդ ալէ"". "Նշանեցաւ առ մեզ լոյս"". "Ի պտղոյ ցորենոյ"": Կրկնէ "Փառք սուրբ Խաչիդ ալէլուիա": Շարականն՝ Էջ. "Խաչն կենարար". Որ 'ի Հօրէ". Որ լուսա". Այժմ և". Աղաղակէր աստուածային բարբառովն տէր"":

Սարկ—ագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք":

Ջանդխապետն առնու զսուրբ Խաչն սեղանագրէ՝ և ասէ, Պահպանիչ և յոյս հաւատացելոց:

Սարկ—ագն, Եւ ևս խաղաղութեան զտէր:

Ջանդխապետն, Օրհնութիւն և փառք Հօր". և դառնան շուրջ զԳերեզմանաւ ընդ սուրբ Պատանատեղին, գնան 'ի սուրբ Լուսաւորիչ, ասելով Շարականն՝ Էջ. "Ապաւինեցաք 'ի խաչ քո արարիչ յաւիտենից", հինգ առուն:

Ընդ 'ի սուրբ Լուսաւորիչ. Սարկ—ագն, Սբ խա":
Ջանդխապետն, Պահպանիչ. Հայր մեր. Օրհնեալք եղերուք: Եւ դառնան 'ի սուրբ Յակոբ:



Ի տօնի Ոսկօրէից առաքելահայրապետութեան և Անուանա-
կոչութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Գիշերային ժամերգութիւնն 'ի սուրբ Յա-կոբ կատարի, զկնի ժամերգութեան Հարկանի կոչնակ. և ամէն պատարագիչ և հանդիսադիր գնայ 'ի սուրբ Յարութիւն ամենայն միաբա-նութեամբ. և զայլ ամենայն արարողութիւնս և կարգադրութիւնս տես 'ի Վարագայ խաչն:

Եւ շուրջ զԳերեզմանաւն գնան յՈւժա-թափման տեղի սուրբ Աստուածածնին, ասե-լով Շարականն՝ դչ. "Ի լոյս 'ի լուսոյ 'ի հօրէ ո: Ի նմին տեղւոջ ասէ:

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք:

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս հաւատոց": Ի Վերնատունն ոչ ելանեն:

Այս Հարկանի զոյգ կոչնակ 'ի Վերնատունն մեր, ճաշուն ասի առաջի դրան սուրբ Գերեզ-մանին:

Ի սենեակ կառավարչին զգեստաւորի պա-տարագիչն, և այլն. ըստ արարողութեան կար-գի է որպէս զՎարագայ խաչին. զկնի պատա-րագին դառնան 'ի սուրբ Յակոբ:

Եւ յետ սեղանոյն Եպիսկոպոսունք, Ժամօրհ-նօղք, զոյգ Ժամասացք, երկու Խոստովանա-հարք, Նախասարկաւագն բուրվառաւ՝ զոյգ դը-պիր մոմեղինաւ՝ երթեալ առ սրբազան Պատ-րիարքն օրհնեն զվեհարանն:



## ԱՆՑԷ պահոց առաջին շաբաթն՝ որ է տօն Թէոդորոսի զօրավարին։

Յորժամ աւուր Յոյնք և Մեք ունիմք հանդէս և Թափոր 'ի սուրբ Յարութեան տաճարն. նախ Յոյնք կատարեն զհանդէս իւրեանց, և ապա առնեն մեզ. և յիններորդ ժամու հարկանի կոչնակն Մեր, և գնան 'ի սուրբ Յարութիւն ամենայն միաբանք և տէրունական ուխտաւորք՝ ըստ կարգադրութեան Վարագայ խաչին։ Հուսկ յետոյ ելանէ Հանդիսապետն. և շուրջ զԳերեզմանաւ գնան և ելանեն 'ի սուրբ Վերնատունն, ասելով Շարական՝ « Բարքունորէն », և այլն. ըստ կարգի. և զկնի դառնան 'ի սուրբ Յակոբ։

Ի գիշերի պատարագն սրբոյ Գերեզմանին՝ ըստ կարգի է. Նախ՝ Յոյնք, ապա Մեք, յետոյ Լատինքն Թիւ միայն՝ եթէ ընդ մեզ իցէ զատիկն, իսկ զձայնաւորն առնեն 'ի Պարաւէզն. և Յոյնք զկնի հանդիսաւոր պատարագին ելանեն 'ի Թափոր, և Մեք զկնի մեր հանդիսաւոր պատարագի 'ի Վերնատունն՝ ելանեմք 'ի մեծահանդէս Թափոր զԳերեզմանաւն։

Եթէ Լատինացւոց զատիկն 'ի Մեր ծաղկազարդի աւուրն գայ, 'ի շաբաթ երեկոյի բուն բարեկենդանին Մերոյ հանդէս ունին, իսկ յառաւօտուն ինչ ոչ գոյ. միայնակ զարդարեն զսբ Գերեզմանն 'ի նոյն երեկոյին՝ և գան 'ի ներքս, և շրջին շուրջ զԳերեզմանաւն երիցս; և ապա հանդիսիւ ելանեն 'ի Թափոր 'ի սուրբ Տեղիսն. վասն այսր հանդիսի՝ Մեք և Յոյնք լուցանեմք

զՊատանատեղւոյ և զսուրբ Գերեզմանն դրան աշտանակսն, նա և զներքին և զվերին շարան կանթեղսն լուցանեմք։

Եթէ յերկրորդ կիւրակէի մեծի պահոց Մերոց Ծաղկազարդ իցէ Լատինացւոց, 'ի շաբաթ երեկոյի և 'ի կիւրակէ առաւօտու յառաջ քան զՄեզ և զՅոյնս կատարեն զԹափօր իւրեանց ըստ արարողութեան Ծաղկազարդին։

Յիններորդ գիշերային ժամու, հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ, ամենայն եկեղեցական պաշտօնեայք, տէրունական Ուխտաւորք գնան 'ի սուրբ Յարութիւն, 'ի Վերնատունն մեր կատարեմք զգիշերային ժամերգութիւնն՝ և հաշտարար սուրբ Պատարագի խորհուրդն։ Զկնի Առաքելոցին զգեստաւորի Հանդիսապետն հայրապետական զգեստիւ, Վարդապետք և Քահանայք շուրջառաւ, որպէս օրէն է յամենայն աւուր հանդիսաւոր Թափօրի։

Յաւարտ սրբ Պատարագին. Նախաշարականն ասէ, Եւ ես խաղաղութեան զանէր աղաչես"։

Հանդիսապետն՝ տեառնագրելով ասէ, Օրհնութիւն և փառք". և արկանէ խունկ 'ի բուրվառն։

Ժամարարն՝ ըստ կարգի քաղցրաձայն երգէ Շարական, այս. "Որ 'ի լերինն այլակերպ"", և այլն։

Հանդիսապետն՝ իբրև հասանէ 'ի մէջ սեանց տաճարին, ասէ Շարական, Բէ. "Ճառագայթ փառաց"", և այլն։ Զկնի երկիցս շրջելով շուրջ զԳերեզմանաւ, յերրորդին գնան 'ի սուրբ Պատանատեղին, և մինչ հասանեն առաջի դրանց մատրանայ Խփուոց և Ասորւոց՝ երգեն Շարական,

թէ. «Օրհնեցէք մանկունք ընդ երկնայ", և այլն:

Ի սուրբ Պատանատեղին դասաւորեալ կարգ 'ի կարգ ըստ միշտ սովորութեան, յաջմէ և յահեկէ Հանդիսապետին 'ի կողմն Գողգոթայի. և Թափօրականք շուրջ զՊատանատեղեաւ, և ասեն 'ի ձայն. Ալէլուիա ալէլուիա, «Ամպ լուսաւոր հովանի եղև նոցա. ձայն եղև յամպոյն որ ասէ, դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ, դմա լուարուք»:

Սարկաւագն՝ Որդի: Աւետարան Մարկ. Թ. 1. «Եւ յետ վեց աւուր, Վերջ 7. գլխ ընդ խուրանս»:

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբա":

Թափօրականք, Կեցո տէր, և այլն:

Աւետարանիչն, Քում ամենազօր և հրաշալի:

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր:

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր". և գնան 'ի դուռն սուրբ Գերեզմանին, ասելով Շարական, դջ. «Ի Թափօր լերինն ձևացուցեր». գան 'ի դուռն կենսատու սուրբ Գերեզմանին, պար առեալ շար 'ի շար, և այլն. Որպէս 'ի Վարագայ խաչին. գերեզման համբուրել ոչ գոյ: Ասեն 'ի ձայն՝ Ալէլուիա ալէլուիա, «Լերինք ցնծասցեն առաջի տեառն, զի գայ՝ և գայ նա 'ի դատել զերկիր»:

Սարկաւագն, Որթի: Աւետարան Ղուկ. Թ. 28. «Եւ եղև յետ այսց բանից, Վերջ 36. յորս տեսին»: Ապա ձայնաւոր Տէր ողորմեա, ըստ սովորութեան:

Արդ, Ե՛կ տէր յիսուս՝ ողորմեա՛ մեզ, ողորմութեան ժամ է արդէն. Ե՛կ բարեխնամ այս

տուր մեզ, այցելութեան ժամ է արդէն, չնոր-
հիւ սէյ գերեզմանիդ. Ընկալ տէր և ողորմեա:

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան":

Դպիրք. Կեցո տէր, և այլն:

Ա֊եփոխանիչն. Քում ամենազօր և հրաշալի:
Այս հանդիսապետն ելեալ դնէ զթագն 'ի գլուխ

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր:

Հանդիսապետն՝ խաչակնքեալ ասէ, Օրհնու-
թիւն և փառք. և արկանէ խունկ 'ի բուրվառն:
Եւ շուրջ զգերեզմանաւ գնացեալ՝ ելանեն 'ի
վերնատուն 'ի վիճակն մեր՝ ասելով Շարական.
« Բարձունօրէն բացատրեսցուք », և այլն:

Սարկաւագն. Սուրբ խաչիւս աղաչեսցուք":

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ":
Օրհնեալ տէր մեր յս. Հայր մեր որ յերկինս.
Օրհնեալք եղերուք 'ի շնորհաց սբ. հոգւոյն:
Եւ դառնան 'ի սուրբ Յակոբ:



## Մեծի պահոց չորրորդ կիւրակէն՝ որ է Տնտեսին ։

Ի Մեծի պահոց չորրորդ կիւրակէն, որ ասի Տնտեսս. Յունաց Մեծահանդէս յատուկ թափօր գոյ 'ի մէջ սրբոյ Յարութեան. յայնմ աւուր Մեք գնամք հանդիսիւ 'ի սուրբ Համբարձումն, զոր գրեալ եմք յայլ ուրեք ։

***

## Մեծի պահոց հինգերորդ կիւրակէն՝ որ է Դատաւորին ։

Ի շաբաթ աւուր՝ յութերորդ ժամու հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ, սրբազան Պատրիարքն կամ Եպիսկոպոս ամե. հանդիսաւոր գընայ 'ի սուրբ Յարութիւն ամենայն միաբանութեամբ, և այլն. ըստ կարգի ։ Տես 'ի Վարագայ խաչի շաբաթ Երեկոյին ։

Յետոյ ելանէ հանդիսաւորեան 'ի սուրբ Գերեզմանէն՝ և զկողմամբ սուրբ Պատարագին գնայ իջանէ 'ի սուրբ Լուսաւորիչ. ասելով Շարականն, և այլն. կարգաւ որպէս 'ի վերն ցուցաւ ։

Նոյն երեկոյեան ժամերգութիւնն անդ պաշտի ըստ պատշաճի աւուր, յետոյ վերադառնան 'ի սուրբ Յակոբ ։

Յիններորդ գիշերային ժամու հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ. ամենայն եկեղեցականք պաշտօնէիւք, և տէրունական ուխտաւորք գընան վերստին 'ի սուրբ Յարութիւն, 'ի սուրբ Լուսաւորիչ եկեղեցին կատարեն զգիշերային ժամերգութիւնն ։ Նաև 'ի սուրբ Վերնատունն հարկանի զոյգ կոչնակ, ճաշուն առաջի դրան

կենսատու սուրբ Գերեզմանին Քրիստոսի։ Պատարագիչն 'ի սենեակ կառավարչին զգեստաւորի. անդ երգի 'ի ձայն, « Խորհուրդ խորին ». 'ի հասանել ժամարարին 'ի մէջ սեանց՝ երգեն Շարական, դձ. « Հրաշափառ աստուած ». Լուացումն և Ընտրեալն առաջի դրան սուրբ Գերեզմանին ասի. Սպասն 'ի վերայ հրեշտակի Վիմին դնի, և պատարագի Թափօրն շուրջ զգերեզմանաւն լինի, նոյնպէս և վերաբերումն. և յորժամ ընթեռնուն զճաշու գիրքն, և 'ի ժամ վերաբերման, Պատարագիչն հայրապետական ըղգեստիւ ելեալ նստի յաթոռն, որ առաջի դրան սուրբ Գերեզմանին, և մինչ վերաբերումն հասանէ առաջի սուրբ Դրան, Պատարագիչն հանէ զթագն, զեմիփորոնն, և զմատանին. և ապա առեալ զսկիհն անտառնապրէ ժողովրդեան։

Յաւարտ սուրբ պատարագին եթէ Հանդիսաւորն պատարագամատոյցն իցէ. զգենու զեմիփորոնն, և դնէ զթագն և զմատանին, և առնու զխաչ և զգաւազան. ապա եթէ այլ ոք է. 'ի սենեակ Տեսչին զգեստաւորի։

Առաջնորդն ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղու"։

Հանդիսադիրն անտառնապրեալ ասէ, Օրհնութիւն և փառք։ Եւ արկանէ խունկ, և ելանեն 'ի Թափօր։

Ժամարարն, ըստ դասին երգէ բարձրաձայն Շարական՝ ձէ. « Որ պատուիրան. և Հայր, Որ զտիրականդ. Մեծ. Ուրախ լեր մարիամ. Որ. Ուրախ լեր եկեղեցի », և այլն։ Օկնի. երից շըրջելոյ շուրջ զԳերեզմանաւ, գնան 'ի սուրբ Պա-

տանատեղին, երգելով Շարականն՝ Քէ. «Յիսուս միածին. և խաչի քո Քրիստոս. ի ձեռս բարձրացաւ», և այլն։

Ի սուրբ Պատանատեղին շրջապատ դասաւորեալ կարգ 'ի կարգ յաջմէ և յահեկէ Հանդիսապետին, երգեն Սաղմոս 'ի ձայն, Ալէլուիա ալէլուիա, «Ի խորոց կարդացի առ քեզ տէր»։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԱ. 38. «Յիսուս դարձեալ զայրացեալ, մինչ 40. զոր առաքն յիսուս». և ասի Հոգւոցն հանգուցելոց։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր։

Եւ գնան 'ի դուռն կենատու սուրբ Գերեզմանին, ասելով Շարականն՝ Քյ. «Ընդ լուսափայլ։ Ըստ առաջնոյն կարգաւորութեան է արարողութիւնն։

Եւ յետ համբուրման սրբոյ Գերեզմանին, ասեն ձայնիւ. Ալէլուիա ալէլուիա, «Գովեա երուսաղէմ զտէր. և օրհնեա զածն քո սիոն»։ Աւետարան Մարկ. ԺԶ. 16. «Իսկ մնացեալն. մինչ 20. 'ի կատարած աշխարհի»։

Քարոզականն՝ ասեն 'ի ձայն, Տէր ողորմեա է։

Եւրգ, Գերեզմանիդ քո համբուրման. կամ Ե'կ տէր յիսուս ողորմեա մեզ, ողորմութեան։

Սարկաւագն, Աղաչեսցուք զկենատու փրկիչն։

Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա տէր ողոր"։

Աւեփարանիչն, Անկեալ առաջի քո բարերար։

Դպիրն, Յիշեա տէր զպաշտօնեայս քո զծը"։

Աւեփարանիչն, Բարերար և բազում ողորմ։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր։

Հանգիստաղերգն, Օրհնութիւն և փառք հօր: Եւ շուրջ զԳերեզմանաւ անցեալ ընդ սուրբ Գառնանաստաւեղին՝ գնան 'ի սուրբ Լուսաւորիչ. առնելով Շարականն՝ "Խառնուորէն բազում" ի:

Սաղմոսասացն, Սուրբ խաչիւ ազատեցաք:

Հանգիստաղերգն, Պահպանիչ և յոյս հաւատոյ. Ճայսը մեր որ յերկինս. Օրհնեալք եղերուք: Եւ վերադառնան 'ի սուրբ Ցակոբ աւանդայն մեղադանութեամբ:

## Յաղագս ծանուցմերէ:

Ի շաբաթ երեկոյի Ղազարու յարութեան, յետներորդ ժամու հարկանի կոչնակ 'ի սուրբ Ցակոբ, և գնամք 'ի սուրբ Յարութիւն ամենայն բազմութեամբ ըստ առաջնոյ հանդիսաւոր աւուրց սովորութեանց և կարգադրութեանց մերոց. և հուսկ յետոյ 'ի սուրբ Վերնատունն ելեալ, զերեկոյեան ժամերգութիւնն կատարեմք ըստ եկեղեցական արարողութեան մերում: Եւ ապա վերադառնամք 'ի սուրբ Ցակոբ:



## Ողջախոհութիւն Պետրոսի:

Ի մէջ գիշերի հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ ; յաւուր դուռն վանուցն՝ առն ամենայն արանց արժանաւորս միաբանից և ուխտաւորաց, և գնան 'ի սուրբ Յարութիւն: Յետ աւարտման աստուածընկալ Գերեզմանի սեղանական նոյն Պատարագին. 'ի սուրբ Վերնատունն սկսանին պաշտել զգիշերային ժամերգութիւնն:

Այս հարկանի զոյգ կոչնակ, և համառօտ ատենաբանութիւն՝ յաղագս գաղտնեան Քրիստոսի 'ի սուրբ Երուսաղէմ. և անդ մատչի մեր Պատարագ: Զկնի Առաքելոցին՝ զգեստաւորի կանդիլաբերն, յաւուրս հաշտարար պատարագին՝ Նախատօնիմաքն ձայնէ, Եւ եւս խաղաղաւ":

Համբերութեան, խաչակնքեալ ասէ. Օրհնութիւն Աստուածոյն, ըստ դասին երգէ Շարականն՝ Քյ. "Որ զխորհուրդ", և այլն: Այլ իջանեն գաւակարգ 'ի վայր, և շրջին շուրջ զԳերեզմանաւն շար 'ի շար համբարարտաքայլ: Զկնի երկիցս շրջալելոյ շուրջ զԳերեզմանաւ, և մինչ անցանեն ընդ մատուռն խփսուսց, դնեն առ դուռն Սրբազան Պատրիարքին:

Նախ Սաղմոս Թիւ, Ալէլուիա ալէլուիա, "Լերինք ցնծասցեն առաջի տեառն, զի գայ՝ զի հասեալ է տէր 'ի դատել զերկիր": Գիրք՝ Երգ Երգոց, Բ. 8. "Ձայն եղբօր որդւոյ իմոյ, մինչև. զատիկս իմ քերզ": Եսայի, "Ասացէք դստերն Սիոնի, մինչև. և ոչ ըմբռնել": Եփես. Ա. 3. "Օրհնեալ է Աստուած, մինչև 10. և որ ինչ յերկրի 'ի նոյն":

Նոյն Սաղմոս ձայնիւ, Ալէլուիա ալէլուիա, « Օրհնեալ եկեալ անուամբ տեառն », և այլն։ Աւետարան Մարկ. Ժ. 46. « Եւ գան յերիքով. Վերջ ԺԱ. 11. երկոտասանիւքն հանդերձ »։

Սարկաւագն՝ 'ի ձայն բարձր ասէ, Եւ ևս խա՛. Վասն 'ի վերուստ խաղաղութե՛ն. Տէր ողորմեա։ Եւ տեառնագրեսցեն զանդաստան։

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք։

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ։

Դպիրք, Յորժամ եկեալ կենարարդ 'ի գերեզ։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զՏէր։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք Հօր։ Եւ գնան 'ի սուրբ Պատանատեղին, երգելով Շարական՝ տի. « Յիսուս միածին անմահութեց։

Ի սուրբ Պատանատեղին շրջապատ դասակարգեալ. կարգ 'ի կարգ յաջմէ և ձախմէ Հանդիսապետին, երգեն 'ի ձայն, Ալէլուիա ալէլուիա, « Ի խորոց կարդացի առ քեզ տէր տէր », և այլն։ Աւետարան Յովհ. ԺԱ. 1. « Եւ էր ոմն հիւանդ, Վերջ 46. զոր արարն Յիսուս »։

Հանդիսապետն, Հոգւոյն հանգուցելոց քո։

Սարկաւագն, Եւ ևս խաղա. Վասն հանգու՛։

Նէփարանիչն, Քրիստոս որդի աստուծոյ ա՛։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զՏէր։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք Հօր՛. և գնան 'ի դուռն կենսատու գերեզմանին. ըստ առաջնոյ կարգաւորութեան, ասելով Շարական՝ բի. « Ուրախ լեր եկեղեցի սուրբ », և այլն։

Առաջի դրան սբ. գերեզմանին ասի 'ի ձայն, Ալէլուիա ալէլուիա, « Գովեա Եէմ զՏէր », և այլն։

Աւետարան Մատթ. ԻԸ. 16. «Իսկ մետասան աշա-
կերտքն գնացին», Վերջ 20. մինչև 'ի կատարած
աշխարհի ո, և այլն ։

Թափօրականք, Ձայնաւոր՝ Տէր ողորմեա ։

Սարկաւագն, Աղաչեսցուք զկենսատու փրկիչն ։

Աւետարանիչն, Անկեալ առաջի քո բարերար ։

Դպիրքն, Յիշեա տէր զպաշտօնեայս քո ։

Աւետարանիչն, Բարերար և բազումողորմ ։

Սարկաւագն՝ առէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղու" ։

Ժողովուրդն, Օրհնութիւն և փառք հօր" ։

Եւ շուրջ զԳերեզմանաւ գնան ելանեն 'ի սուրբ
Վերնատունն ։

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք՛ ։

Ժողովուրդն, Պահպանիչ և յոյս հաւատոյ" ։

Օրհնեալ տէր մեր յն̃. Հայր մեր որ յերկինս.
Օրհնեալք եղերուք 'ի շնորհաց սր̃ հոգւոյն ։
Ապա ամենայն բազմութեամբ եկեղեցականաց
գան 'ի սուրբ Յակոբ ։



## Յաղագս Ճրագալուցի Տօնից։

Ի սուրբ Զատկի ճրագալուցի շաբաթ աւուր 'ի վեցերորդ ժամու, Հարկանի կոչնակ 'ի սուրբ Յակոբ. ուխտունական բարեպաշտան Թեատուսքը մոմ 'ի ձեռս գնան 'ի սուրբ Յարութիւն։ Նաև Արքաղուն Պատրիարքն միաբան եկեղեցականօք յեօթներորդ ժամու երթեալ ելանէ 'ի սուրբ Վերնատունն մեր. և նստի 'ի ներքոյ առաջնոյ կամարին, որ հայի 'ի վերայ կենսատու Գերեզմանին Քրիստոսի։ Յոյնք ելանեն 'ի Թափօր՝ և շրջին երիցս շուրջ զԳերեզմանաւն։ Նաև Մեր լուսավառն և Յունաց՝ զգեստաւորեալք, երկոտասան մոմ 'ի ձեռս իւրաքանչիւրոց մտանեն 'ի սուրբ Գերեզմանն, և լուցանեն 'ի լուսաւոր կանթեղէ Գերեզմանին Քրիստոսի; Իսկ Խփտոյն և Ասորին 'ի մեր լուսաւորեալէն լուցանեն արտաքոյ ներքին դրան՝ առ Վիմի Հրեշտակին, ըստ նախնական հին սովորութեան իւրեանց։ Մերքն տանին լուսաւորեալ նախ Արքաղան Պատրիարքին, 'ի նմանէ և 'ի միմեանց լուցանեն իւրաքանչիւր ոք զմոմ՝ զոր 'ի ձեռս ունին 'ի պատրաստի ըստ վաղնջուց եկեղեցական արարողութեանց, 'ի նշանակ լուսափայլ յարութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. որոյ 'ի փառս՝ պաշտի և յամենայն համատարած եկեղեցիս հայաստանեայց, և այլոց քրիստոնէից։

Նաև նոյն լուսավառ Վարդապետն զգեստաւորեալ Թագ կամ միթր 'ի գլուխ եդեալ՝ լինի Հանդիսապետ, և ելանեն 'ի Թափօր, շուրջ զսուրբ

Գերեզմանաւն երիցս , ըստ օրինի միւս Թափորաց ։

Սարկաւագն , Եւ եւս խաղաղութեան զտէր"։

Հանդրխապետքն , Օրհնութիւն և փառք, և այլն ։

Քահանայն , ըստ ձայնին երգէ բարձրաձայն Շարական , այս . “ Առաքեցար 'ի հօրէ . և Յարուցեալ տէրն . և Անքննելի հրեշտակն ”։ Յետ երիցս շրջելոյն , դասակարգքն 'ի դուռն սուրբ գերեզմանին , ըստ արարողութեան առաջնոյն ։

Յետ համբուրման և երկրպագութեան՝ Թափօրականք ասեն 'ի ձայն , Ալէլուիա ալէլուիա , “ Գովեա երուսաղէմ զտէր ”. և այլն։ Աւետարան Մատթ. ԻԲ. 16. “ Իսկ մետասան աշակերտքն , Վրջ 'ի կատարած աշխարհի ”։ Այս ձայնաւոր՝ Տէր ողորմեա , երեսուն ։ Երգ ։

Աւետարանիչն , Քում ամենազօր և հրաշալի ։

Սարկաւագն , Սուրբ խաչիւս աղաչեսցուք ։

Հանդրխապետքն , Պահպանիչ և յոյս հաւատոյ ։

Սարկաւագն , Եւ եւս խաղաղութեան զտէր ։

Հանդրխապետքն , Օրհնութիւն և փառք հօր ։

Թափօրականք , երգեն Շարական , “ Բարձունօրէն բացատրեսցուք ”։ Եւ շուրջ զԳերեզմանաւն գնան ելանել 'ի սբ Վերնատունն , քանզի 'ի սուրբ Պատանատեղին ոչ գնան ։ Եւ Յոյնք եւս չունին սովորութիւն յայսմ աւուր երթալ 'ի սուրբ Պատանատեղին ըստ մեզ ։

Յայնժամ հարկանի զոյգ կոչնակ 'ի Վերնատունն մեր ։

Սարկաւագն , Սուրբ խաչիւս աղաչեսցուք"։

Հանդրխապետքն , Պահպանիչ և յոյս , և այլն ։

Ապա երեկոյեան ժամերգութիւն ըստ պա- շաճի աւուր. և սուրբ Պատարագ մատչի 'ի վերնատունն: Ոմանք միայն անդ 'ի վայելել զշնորհս սուրբ Խորհրդոյն. և ոմանք վերադառ- նան 'ի սուրբ Յակոբ՝ վայելել նոյնպէս:



## Սուրբ Յարութիւն Տեառն մերոյ, որ է Զատիկ:

Ի գիշերի Զատկին հարկանի կոչնակ 'ի ս̃ք Յակոբ. սրբազան Պատրիարքն և ամենայն ե- կեղեցականքն և տէրունական ջերմեռանդն ուխ- տաւորք երթան 'ի սուրբ Յարութիւն. 'ի Վեր- նատունն սկսանի ժամերգութիւն ըստ պա- շաճի աւուր: Սրբազան Պատրիարքն զգեստաւո- րի նախ քան զհարցն: Ապա ամենայն զարդուք պատրաստեալ՝ երգելով զհարցի Շարական՝ դէ. «Այսօր մեծ աւետիք», և այլն. իջանեն առա- ջի դրան կենդանատու սուրբ Գերեզմանին, և դա- սակարգեալ շար 'ի շար ըստ աստիճանաց և ու- փորութեան շրջին զսուրբ Գերեզմանաւ հան- դարտաքայլ:

Յերկրորդում Նուագի 'ի հասանելն Թափօ- րի մերում առաջի դրան մատրան Ղպտւոց.

Սարկաւագն, ասէ քարոզ. Եկեալքս ամենե":

Հանդիսապետն, Հզօր յաղթող և սքանչելա":

Դպիրքն, «Մեծացուցէ անձն իմ զտէր». ապա երգելով Շարական՝ դէ. «Աստուածածին տաճար լուսոյ». երթան առաջի դրան ասո-

ուածրընկալ Գերեզմանին. և կանգնին դասա-
դաս ամենայն Թափօրականք. Հանդիսապետն
մտեալ ընդ դուռն՝ նստի յաթոռ, որ զկնի ար-
տաքին դրան եդեալ է: Առաջի դրան սուրբ Գե-
րեզմանին:

Սարկաւագունք երգեն, Եւ ևս խաղաղութե.
Վասն սուրբ տեղւոյս շինութեան և բարեկար":

Թափօրականք, Եղիցի անուն տեառն օրհնեալ:
Աւետարան, Յովհ. ի. 1. "Եւ 'ի միաշաբաթւոջն
մարիամ, մինչ 18. և զայս ինչ ասաց նմա":

Թափօրականք, Փառք յարութեան քո, և այլն:

Սարկաւագն, Զուարճացեալքս մեծաւ ուրա":

Աւետարանիչն, Ամենակեցոյց սրբոյ և մեծի:

Դպիրքն, "Ողորմեա ինձ աստուած լստ":
Եւ եղանեն դարձեալ շուրջ զԳերեզմանաւ ա-
սելով Շարական՝ Տէ. "Այսօր զպատէք", և այլն:
Ապա ևս առաջի դրան Խփուց զտեղի առեալ.

Սարկաւագն ասէ, Երկրպագեմք քեզ տէր.

Հանդիսապետն, Ողորմած գթած Ճշմարիտ:

Դպիրքն, Ալէ". ալէ". "Օրհնեցէք զտէր":
Եւ սակաւիկ մի յառաջ խաղացեալ՝ Հանդիսա-
պետն բազմի յաթոռն, որ անդ պատրաստեալ
կայ: Թափօրականք՝ երգեն զՏէր երկնից Շա-
րականն՝ Տէ. "Այսօր հրեշտակք", և այլն. այլ
յորժամ զվերջին տունն ասիցեն. "Այսօր և
մեք զուարճացեալք". Եպիսկոպոսք, Վարդա-
պետք, և Քահանայք զոյգ զոյգ եկեալ նախ՝
համբուրեն զաջ Հանդիսապետին: Ապա խոնար-
հեալ ողջունեն զմիմեանս և աւետեն՝ ասելով,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց. Օրհնեալ է յա-

բութիւնն քրիստոսի ։ Օրհնի « փառք 'ի բարձունս աստուծոյ », և այլն ։

Սարկաւագն, ասէ քարոզ, Ասասցուք ամենե"։

Հանդիսապետն, Բարեխօս ունիմք սուրբ զմա"։

Սարկաւագն. Յիշեսջիք և զամենայն սուրբս ։

Նջէ+, Գոհանամք զքէն ։ Սուրբ ամ որ յա"։

Նոյն Սաղմոս թիւ. « քեզ վայել է օրհնութի »։ Դուրձ. Ա. 1. « Զքանն առաջին, վերջ մինչև 'ի ծագս երկրի ։ Նոյն ձայնիւ Ալէլուիա ալէլուիա, « Հասեալ կային ուսք մեր », և այլն ։ Աւետարան Մարկ. ԺԶ. 2. « Եւ ընդ առաւօտս, վերջ 8. զի երկնչէին »։

Սարկաւագն, Եւ ևս խաղա". Վա՛ 'ի վերուստ ։ Եւ աեառնագրեսցեն զանգատան ։

Սարկաւագն, Ա՛ խաչիւս աղաչեսցուք զտէր ։

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ"։

Դպիրն, ասէ ժամամուտ, Քանզի յարեաւ ։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր ։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր ։

Եւ անտի յառաջ խաղացեալ հանդարտաքայլ երթան 'ի սուրբ Պատանատեղին ասելով Շարականն՝ դէ. « Յիսուս միածին ». ըստ Տօնացուցին մերոյ ։

Իբրև շարադասին յաջմէ և յահեկէ սուրբ Պատանատեղւոյն. երգեն 'ի ձայն, Ալէլուիա ալէլուիա. « Բարձր առնեմ զքեզ տէր »։ Աւետարան, Յովհ. ԺԱ. 38. « Յիսուս դարձեալ զայրացեալ, վերջ զոր արարն յիսուս »։

Սարկաւագն, Եւ ևս խա". Վասն հանգուցելոյ ։

Նեփորանիչն, Քրիստոս որդի աստուծոյ ։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր ։

Հանդիսապետն, տեառնագրելով՝ ասէ Օրհնութիւն և փառք. և երթեալ անտի դասակարգին ՚ի դուռն աստուածընկալ Գերեզմանին Քրիստոսի. զորոյ զգործառնութիւն տե՛ս յերկրորդ Կիւրակէի, զի նոյն հանգէս է ։ Ասելով Շարական. Բկ. «Քրիստոս յարեաւ», և այլն ։

Թափօրականք՝ երգեն ՚ի ձայն, Ալէլուիա ալէ", «Գովեա՛ երուսաղէմ զտէր. և օրհնեա՛ զա͞ծ» ։ Աւետարան Մատթ. ԻԸ. «Իսկ մետասան, վերջ 20. ՚ի կատարած աշխարհի», և այլն ։

Դպիրքն, ՚ի ձայն ասեն, Տէր ողորմեա՛ ։ Երգ ։

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան" ։

Դպիրքն, Կեցո տէր, և այլն ։

Աւետարանիչն, Քում ամենազօր և հրաշալի ։

Սարկաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր ։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր ։

Եւ շուրջ զԳերեզմանաւն երթալով՝ ելանեն ՚ի վերնատունն, ասելով զերգս, «Նորաստեղծեալ բանն յանէից», և այլն ։

Ապա հարկանի զոյգ կոչնակ ՚ի Վերնատունն մեր վասն պատարագի ։

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք ։

Հանդիսապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ ։

Պատարագիչն, զգեստաւորի ՚ի սենեակ կառավարչին. հաշտարար սուրբ Պատարագն ՚ի վերայ կենսատու սուրբ Գերեզմանին ։ Զորոյ զգործառնութիւնն տե՛ս ՚ի հինգերորդ Կիւրակէի մեծի պահոց ։ Զկնի պատարագին վերադառնան ՚ի սուրբ Յակոբ ։

## Յաղագս Աշխարհամարտան Նորանշէի։

Ի շաբաթ երեկոյին գնամք 'ի սուրբ Յարութիւն. գորգ 'ի սուրբ Պատանատեղին, և այլ ամենայն ըստ կարգի. ժամերգութեան պաշտօնըն կատարի 'ի Վերնատունն, և ապա դառնամք 'ի սուրբ Յակոբ։

Ի գիշերին հարկանի կոչնա՛կ 'ի սուրբ Յակոբ, գնան ամենայն պաշտօնեայք 'ի սուրբ Յարութիւն, 'ի Վերնատունն պաշտի ժամերգութիւնն։ Զկնի հարկանի զոյգ կոչնակ, ճաշուն առի 'ի դուռն կենսատու Գերեզմանին, և պատարագիչն զգեստաւորի 'ի սենեակ կառավարչին. զորին խորհրդաւոր արարողութիւնն Տէ 'ն Վարագայ խաչին։

Վասն այսր հանդիսի մերում Յոյնք և Լատինք յերեկոյի և 'ի ժամ սուրբ Պատարագին, լուցանեն զվերին և զներքին շարան կանթեղն, և զաշտանակս զՊատանատեղւոյն և զորբոյ Գերեզմանին։

Յամի Տեառն 1829. և Հայոց ՌՄՀԸ. այցելութեամբն Աստուծոյ՝ իբրև նորոգեցաւ սրբոյ Գերեզմանի պատարագի հին հրովարտակն, վճիռ հաստաւ արդար դատաստանաւ և համահաճութեամբ դատախազաց. 'ի նոյն ամի, 'ի Սեպտեմբեր երկու. Թէ երեք ազգք Հայք, Յոյնք և Լատինք համախոհ հաւասար ընկերութեամբ 'ի սուրբ Գերեզմանն դիցեն պատկեր, աշտանակ, ծաղիկ, և կախեսցեն կանթեղ, և զայլ անօթս և զարդս եկեղեցական։ Եւ յամենայն աւուր սահ-

մանապրեցաւ պատարագել 'ի վերայ Քրիստոսի կենսատու գերեզմանին ։ Բայց նախ՝ Յոյնք , ապա Մեք , յետոյ Լատինք ։

Այլ 'ի յառկայցեալ հանդիսաւոր աւուրքս՝ եթէ հանդէս աւուրն Յունաց իցէ , նախ Մեք պատարագեմք , ապա Լատինք , յետոյ Յոյնք՝ հանդիսաւոր ։ Իսկ եթէ Մերն իցէ հանդէսն՝ ըստ պայմանեալ կանոնադրութեանց , նախ՝ Յոյնք և Լատինք պատարագեն . յետոյ Մեք՝ հանդիսաւոր ։ Նոյն եթէ Լատինաց իցէ հանդէսըն . նախ Յոյնք և Մեք պատարագեմք , յետոյ Լատինքն՝ հանդիսաւոր ։

Այսպիսի աւուրս՝ միայն հանդիսատէրն զարդարէ զսուրբ գերեզմանն շուրջանակի ըստ հաճութեան ։ Նոյն եթէ 'ի միասին կատարի հանդէսն , որպէս Ծաղկազարդ , Զատիկ , ըստ յառաջասացեալ կարգադրութեանն պատարագեմք , և ընկերութեամբ հաւասար զարդարեմք , թէ ըզսուրբ գերեզմանն , թէ զճրակս դրանն , և թէ զկաթուղիկէն և զշրջապատսն նորա ։ Նոյն իւրաքանչիւր ազգ՝ 'ի մի մի շաբաթ աւել ածէ , և լուանայ զսուրբ գերեզմանն՝ արտաքին շրջանակօք , նմանապէս և զսբ Պատանատեղին 'ի մի մի շաբաթ աւել ածեմք և լուանամք , և զծածկոյթս սփռեմք 'ի փառս մեծ վայելչութեանն Քրիստոսի , որ վասն փրկութեան մերոյ չարչարեցաւ , մեք մաքուր և պայծառ պահեսցուք զանօրինակն սուրբ Տեղին իւր , և փառաւորեսցուք զնա գոհութեամբ և երգօք հոգևորօք , զի և նա մաքրեսցէ զմեզ յամենայն արատոյ մե-

ղաց, և անճառ շնորհօքն լուսաւոր և պայծառ պահելով զհոգիս մեր, փառաւորեսցէ զմեզ անպատում փառօք իւրովք յաւիտեան, ըստ այնմ զփառաւորիչս իմ փառաւորեցից ։

Եւ փոխանակ այսր հանդիսի մերում՝ յառաջին շաբաթուն, որ է Նոր Կիւրակէ, հանդիսաւոր պատարագ ունին Յոյնք ՚ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ ՀԱՐԱԹԱԿԱՆ ԹԱՓՕՐԻ

## ՍՐԲՈՅ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ,

*Որ յԱստուածընկալ և ՚ի Հռչակաւորագոյն Տեառն գերեզմանին Քրիստոսի, ըստ կարգադրութեան առաջնորդութեանց Աթոռոյն Նախնեաց մերոց։*

### Ուրբաթ։

Յիններորդ ժամու զկնի Եկեսցէի կոչնակին՝ գումարին եկեղեցականք առաջի Ուժաթափման տեղւոյ. մինչ հասանի Լատինաց թափօրն ՚ի Փուշ պսակն, առնու շուրջառ մեր թափօրապետն միայն, վարդապետք և քահանայք փիլոնաւ, զոյգ դպիր լուսակալք, և ՚ի ձեռս թափօրականաց վառեալ մոմ. իսկ Նախասարկաւագն զգեցեալ շապիկ՝ ուրար զուսովն, սաղաւարտ ՚ի գլուխն, բուրվառ և խնկամանն ՚ի ձեռին.

1 Մղէ ՚ի ձայն, Եւ ես խաղաղութեան զոհէր։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ սարկաւագն խունկ ՚ի բուրվառն, և դնեն զոյգ զոյգ ՚ի մէջ բեմին, ասելով Շարական՝ բյ. «Սր- ծանօթութեամբն», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Ղուկ. ԻԳ. 17. «Զի հարկ էր մի մի, մինչ 23. ՚ի խաչ հանել»։

Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք։

Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

2 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ անտի երթան 'ի տեղին ուր զհանդերձն Քրիստոսի բաժանեցին, ասելով Շարական՝ դէ. «Ջահն լուսոյ յառաւօտին», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 23. «Իսկ զինուորք, մինչ 24. զայս ինչ գործեցին»։

Սարկաւագն, Փառք քեզ Տէր. Խնդրեսցուք։

Դպիրքն, Կեցո Տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

3 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ անտի իջանեն 'ի Գիւտ խաչ, ասելով Շարական՝ այ. «Հրաշակերտ և զօրեղ», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. ԻԴ. 27. «Զի որպէս փայլակն, մինչ 29. շարժեսցին»։

Սարկաւագն, Փառք քեզ Տէր. Սուրբ խաչիւ։

Դպիրքն, Կեցո Տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Պահպանեա զմեզ Քրիստոս։

Այս աւետարան միշտ 'ի թափօրին՝ առաջի Լատինացւոց խորանին ընթեռնումք։

4 Սարկաւագն՝ 'ի ձայն ասէ, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ անտի ելանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին մեր՝ ասելով Շարական, դէ. «Սրբազարեից գերազայն»։ Այս աւետարան ընթեռնումք առաջի սուրբ Կարապետի սեղանոյն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան, Յովհ. Ա. 29. «Ի վաղիւ անդր տեսանէ, մինչ 34. սա է որդին այ»։

Սարկաւագն, փառք քեզ տէր. Մէջ ձգնաւորաց:
Թափօրապետն, Որ ընտրեցեր և ընկալար, և այլն:

5 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութեան:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Եւ անտի երթեալ ՚ի փուշ պսակ, ուր է սիւնն՝ յոր կապեցին զՔրիստոս ՚ի տանն Պիղատոսի, ասելով Շարականն՝ տյ. "Այսօր ՚ի կատարումն:
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 2. "Եւ զինուորաց արարեալ, մինչև Ծ. ահա այրդ-ցձեզ", և այլն:
Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք:
Դպիրն, Կեցո՛ տէր. Տէր ողորմեա:
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

6 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութեան:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Եւ անտի երթեալ ՚ի սուրբ Գողգոթայ, ասելով Շարականն՝ տհ. "Ի յուրբաթու ժամ յերրորդ":
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 17. "Եւ նոքա առեալ, մինչև 20. և յունարէն":
Եւ ապա ՚ի ծունկս անկեալ ասեն. Սուրբ աստուած՝ երիցս, առանց փառաւորեալն. և ապա կից՝ Տէր ողորմեա: Երգ:
Սարկաւագն, փառք քեզ տէր. Սուրբ խաչիւս:
Դպիրն, Կեցո՛ տէր. Տէր ողորմեա:
Թափօրապետն, Պահպանիչ և յոյս հաւատաց". կամ Առաջի պատուականն, և այլն:

7 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութեան:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:

Այս անուն իջմանն ՚ի սուրբ Պատանանեգին ա-սելով Շարական, Էյ. «Պարգևատուն», և այլն:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 38.
«Յետ այսորիկ աղաչեաց, մինչ 42. եդին զյն»:

Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք:

Դպիրքն, կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛:

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:
Թափօրապետն կանգնի ՚ի գլուխ սուրբ Պատա-նանեգւոյն՝ ՚ի կողմն սուրբ Գողգոթային:

8 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութե:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Այս անուն երթան ՚ի սուրբ Գերեզմանն՝ ասելով Շարական, ոհ. «Առաքեցար ՚ի հօրէ», և այլն:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան, Յովհ. Ի. 10.
«Բայց Մարիամ, մինչ 16. վարդապետ»:
Մինչ բազմութի լսէ՝ առաջի դրանն ընթեռ-նումք զաւետարանն, ապա թէ ոչ՝ ՚ի ներքս ՚ի սուրբ Գերեզմանն:

Դպիրքն՝ ասեն ՚ի ձայն, Տէր ողորմեա՛: Երգ:

Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք:

Դպիրքն. կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛:

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

9 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութե:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Այս ապա շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան ՚ի յՈւժաթափման տեղին սրբուհւոյ Ածածնին, ասելով Շարական՝ Տհ. «Սէրդ սիրով»:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 25.
«Եւ կային առ խաչին, մինչ 30. զհոգին»:

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Սբ զա̃ծածինն :
Դպիրքն, կեցո́ Տէր. Տէր ողորմեա́ :
Թափօրապետն, Ընկալ Տէր զաղաչանս մեր :
Օրհնեալ Տէր մեր. Հայր մեր որ յերկինս.
Օրհնեալք եղերուք 'ի շնորհաց սբ հոգւոյն :

## Շաբաթ :

Օկնի Եկեսցէի կոչնակին, մինչ Լատի-նաց Թափօրն ելանէ 'ի Գիւտ խաչէն 'ի փուշ պսակն Հաստանի.

1 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե̃ :
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր :
Եւ արկանէ խունկ 'ի բուրվառն. և գնան 'ի սբ Բանան՝ ասելով Շարական, Էյ. « Ի գիշերին յորում մատնիւր », և այլն :
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան, Մրկ. ԺԵ. 1. « Եւ վաղվաղակի, վերջ 5. յոյժ պիղատոսի » :
Սարկաւագն, փառք քեզ Տէր. Խնդրեսցուք :
Դպիրքն, կեցո́ Տէր. Տէր ողորմեա́ :
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի :

2 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե̃ :
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր :
Եւ անտի երթան 'ի Հանդերձ բաժանումն, ասելով Շարական՝ Դէ. « Սամկական », և այլն :
Սարկաւագն՝ Որթի. Աւետարան Ղուկ. ԻԳ. 34. « Հայր թո́ղ դոցա, վերջ 38. սա է արքայն հրէից » :

Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք։

Դպիրն, կեցո տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

3 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Իսկ անտի իջանեն 'ի Գիւտ խաչն, ասելով Շարական՝ ոյ. « Անճառելի երևումն », և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. ԻԴ. 30. « Եւ ապա երևեսցի, վերջ 32. ամառն։

Սարկաւագն, փառք քեզ տէր. Սուրբ խաչիւս։

Դպիրն, կեցո տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Առաջի պատուական. կամ Գահոյա"։

4 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Իսկ անտի ելանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին մեր՝ ասելով Շարական, դյ. « Հրաշափառ աստուած », և այլն։ Զայս աւետարան ընթեռնումք առաջի սուրբ Լուսաւորչի սեղանոյն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան, Յովհ. Ժ. 14. « Ես եմ հովիւն, վերջ 16. և մի հովիւ »։

Սարկաւագն, փառք քեզ տէր. Առ Ճգնաւորօքն։

Թափօրապետն, Որ ընտրեցեր և ընկալար։

5 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Իսկ անտի ելանեն 'ի փուշ պսակն, ասելով Շարական՝ դկ. « Այսօր որ 'ի հրեղէն », և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մարկ. ԺԵ. 16. « Եւ զինուորքն, վերջ 20. հանիցեն զնա »։

Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք։

Դպիրն, կեցո՛ տէր ։ Տէր ողորմեա՛ ։

Թափօրապետն, Քուն ամենազօր և հրաշալի ։

6 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե ։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր ։

Եւ անտի ելանեն 'ի սուրբ Լեառն Գողգոթայ՝ ասելով Շարական, գհ․ «Անեղնեալ ծառոյ» ։

Սարկաւագն՝ Որթի ։ Աւետարան Ղուկ․ ԻԳ․ 33․ «Իբրև չոգան 'ի տեղին, մինչև 38․ արքայն հրէից» ։ Եւ 'ի ծունկս անկեալ ասեն, Սուրբ աստուած՝ երիցս ։ Եւ կից ընդ նմին 'ի ձայն ասեն, Տէր ողորմեա՛ ։ Երգ ։

Սարկաւագն, Փառք քեզ տէր․ Մեք խաչիւս ։

Դպիրն, կեցո՛ տէր․ Տէր ողորմեա՛ ։

Թափօրապետն, Առաջի պատուական, և այլն ։

7 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղու՞ ։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր ։

Եւ անտի իջանեն 'ի սուրբ Գաստանատեղին՝ ասելով Շարական, բյ․ «Կենդանին յաւիտենից» ։

Սարկաւագն՝ Որթի ։ Աւետարան Ղուկ․ ԻԳ․ 50․ «Եւ ահա այր մի, մինչև 54․ և շաբաթ լուսանայր» ։

Սարկաւագն, Փառք քեզ տէր․ Խնդրեսցուք ։

Դպիրն, կեցո՛ տէր․ Տէր ողորմեա՛ ։

Թափօրապետն, Քուն ամենազօր և հրաշալի ։

8 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե ։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր ։

Եւ անտի երթան 'ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի, ասելով Շարական՝ ոհ․ «Յարուցեալ» ։

Սարկաւագն՝ Որթի ։ Աւետարան, Մարկ․ ԺԶ․ 1․ «Եւ իբրև էանց, մինչև 6․ ուր եդին զնա» ։

Դպիրն, ձայնաւոր՝ Տէր ողորմեա։ Եւն։
Սարկաւագն, խնդրեսցուք հաւատով միաբան։
Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա։
Քահանայապետն, Քում ամենազօր և հրաշալի։

9 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։
Քահանայապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ ապա շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան 'ի
յՈւժամաթափման սուրբ Տեղին 'ի վիճակն մեր,
ասելով Շարականն, «Երևեցար խնկաբերից»։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 25.
«Եւ կային, մինչ 30. աւանդեաց զհոգին»։
Սարկաւագն, փառք քեզ տէր. Այլ զամենայնն։
Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա։
Քահանայապետն, Ընկալ տէր զաղաչանս մեր։
Օրհնեալ տէր Միր. Հայր մեր որ յերկինս.
Օրհնեալ եղիցուք 'ի շնորհաց ս՟բ հոգւոյն։



## Կիւրակէ։

Մինչ Լատինացուց Թափորն գայ 'ի փուշ պսակն.

1 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։
Քահանայապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ արկանէ խունկ 'ի բուրվառն. և գնան զոյգ զոյգ 'ի սուրբ Բանակն, ասելով Շարականն՝ Էջ.
«Որ թագաւորդ ես թագաւորաց»։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. ԻԷ. 11.
«Եւ եկաց առաջի, մինչ 17. մատնեցին զնա»։

Աշխարհագին, փառք քեզ տէր․ խնդրեցուք։
Դպիրն, կեցո տէր․ Տէր ողորմեա։
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

2 Աշխարհագին՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութ․
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի երթան 'ի տեղին, ուր զհանդերձն Քրիստոսի բաժանեցին, ասելով Շարականն՝ զԴ․ «Վերնականքն․ կամ Պատկառանօք։
Աշխարհագին՝ Որթի։ Աւետարան Մատթ․ իէ․ 35․ «Եւ հանեալ զնա, մինչ 40․ էջ 'ի խաչէդ»։
Աշխարհագին, փառք քեզ տէր․ խնդրեցուք։
Դպիրն, կեցո տէր․ Տէր ողորմեա։
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

3 Աշխարհագին՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութ․
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի իջանեն 'ի Գիւտ խաչն, ասելով Շարականն՝ ...․ «Որ զնախնայն աւիթ»։
Աշխարհագին՝ Որթի։ Աւետարան Մատթ, իԴ․ 32․ «Ի թզենւոյ անտի, մինչ 36․ բայց միայն հայր»։
Աշխարհագին, փառք քեզ տէր․ Սուրբ խաչիւս։
Դպիրն, կեցո տէր․ Տէր ողորմեա։
Թափօրապետն, Պահպանեա․ կամ Առաջի պատ"։

4 Աշխարհագին՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութ․
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի ելանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին մեր, ասելով Շարականն՝ զԴ․ «Որ յարուցանէ»։ Զայս աւետարան ընթեռնումք առաջի սուրբ կարապետի սեղանոյն։
Աշխարհագին՝ Որթի։ Աւետարան Յովհ․ Գ․ 22․

« Ցեւ այսորիկ եկն յա՛, մինչ 27. ՚ի վերուստ »:

Սարկաւագն, փառք քեզ տէր. Սբ Ճգնաւորքն:

Թափօրապետն, Որ ընտրեցեր և ընկալար:

5 Սարկաւագն՝ առէ ՚ի ձայն, եւ ևս խաղաղութէ:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Եւ անտի ելանեն ՚ի փուշ պսակ, ուր է սուրբն՝ յոր կապեցին զՔրիստոս ՚ի տանն Պիղատոսի, ասելով Շարականն՝ դէ. « Ն․յոր յառաջ »:

Սարկաւագն՝ Որթի: Նաւետարան Մարկ. իե. 27. « Յայնժամ զինուորք, մինչ 31. ՚ի խաչ հանել »:

Սարկաւագն, փառք քեզ տէր. Խնդրեսցուք:

Դպիրքն, Կեցո տէր. Տէր ողորմեա:

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

6 Սարկաւագն՝ առէ ՚ի ձայն, եւ ևս խաղաղութէ:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Եւ անտի ելանեն ՚ի սուրբ Գողգոթայ՝ ասելով Շարականն, դէ. « Սոսկալին սերովբէից »:

Սարկաւագն՝ Որթի: Նաւետարան Մարկ. իե. 44. « Զնոյն և աւազակքն, մինչ 50. և արձակեաց զոգին »: Եւ ապա ՚ի ծունկս անկեալ ասեն, զՍուրբ աստուածն՝ երիցս, առանց փառաւորեալի. և զկնի ձայնիւ՝ Տէր ողորմեա:

Սարկաւագն, Փառք քեզ տէր. Սուրբ խաչիւս:

Դպիրքն, Կեցո տէր. Տէր ողորմեա:

Թափօրապետն, Առաջի պատուականն, և այլն:

7 Սարկաւագն՝ առէ ՚ի ձայն, եւ ևս խաղաղութէ:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Եւ անտի իջանեն ՚ի սուրբ Գերեզմանատեղին՝ ասելով Շարականն, բյ. « Կուսածին մարմնով »:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Մարկ. ԺԵ. 42.
"Եւ լինել երեկոյ եղեւ, վերջ 47. ուր եդաւ":
Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք:
Դպիրքն, Կեցո տէր. Տէր ողորմեա:
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

8 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութե:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:
Եւ անտի երթան ՚ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի՝ ասելով Շարական, որ. "Սքանչելի":
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Մատթ. ԻԸ. 1.
"Եւ յերեկոյի շաբաթուն, վերջ 6. ուր կայր":
Թափօրականքն, ձայնիւ՝ Տէր ողորմեա: Երգ:
Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք:
Դպիրքն, Կեցո տէր. Տէր ողորմեա:
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

9 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութե:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:
Եւ ապա շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան ՚ի յԱւժամաթափման տեղին սրբուհւոյ Աստուածածնին՝ ՚ի վիճակն Մեր, ասելով Շարական՝ "Երևեցար":
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 25.
"Եւ կային առ խաչին, վերջ 30. զհոգին":
Սարկաւագն, Փառք քեզ տէր. Ամ զԱստուածածինն:
Դպիրքն, Կեցո տէր. Տէր ողորմեա:
Թափօրապետն, Ընկալ տէր: Օրհնեալ տէր մեր. Հայր մեր որ յերկինս. Օրհնեալք եղերուք:



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## Ի ԴՐԱՆՑ ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ ՄԻՆՉԵՒ Ի ՍԻՒՆՆ ՎՃՌՈՑ, ԵՒ Ի ՊՐՈՊԱՏԻԿԷ ԱՒԱԶԱՆՆ

ՍՐԲՈՑ Յարութեան գաւթէ արեւելեան յանկեանն գոյ փոքրիկ դուռն մի՝ ընդ որ մտանէ 'ի խաղախորդարան, այսինքն փաղախանոյն. եւ է 'ի ձեռս Այլազգեաց, եւ յոյժ անմաքուր. զոր մասն ինչ 1858 գնեցին Յոյնք, եւ շինեցին իբր վաճառանոց։ Յաջմէ կողմանէ առ հիւսիս՝ է մեծագոյն աւերակ մի, որ է բանտ առաքելոյն Պետրոսի, որ գրի 'ի Գործ. ԺԲ. 3—8., եւ ուղղակի գնացեալ մինչ 'ի յեզր խաղախանոցին, դառնալով 'ի ձախմէ 'ի ներքոյ կամարին 'ի մութ շուկայն, 'ի կէս կամարին յաջմէ պողոտային գնայ 'ի պալատն Հեղինէ դշխոյին, եւ է 'ի ձեռս Այլազգեաց, ուր գոն յոյժ մեծամեծ կաթսայք՝ այսինքն խուլկէն. յորս ապուր եփեալ բաժանեն աղքատաց եւ տէրվիշաց իւրեանց։ Եւ 'ի ձախմէ յանկեան փողոցին գոյ հնաշէն մզկիթ մի, որ է դատարան Այլազգեաց. այն է տուն Մատթէոսի աւետարանչին. ուր զսուրբ Աւետարանն գրեաց 'ի լեզու Եբրայեցւոց։ Այսու ճանապարհաւ եւս գնամք 'ի Գերեզմանն սուրբ Աստուածածնի. սակայն չէ՛ սովորական։ Եւ ուղղակի անցեալ մինչեւ ցեզր մութ շուկային 'ի քա-

ձախուսի Ճանապարհն, առ Հիւսիս գնայ 'ի դաւառն Դամասկոսի, զոր Արաբացիք կոչեն՝ պաղըլամաֆ, այսինքն դուռն սեան. քանզի գոյ անդ 'ի ձախմէ կրպակ մի, որոյ յետուստ կողմանն կանգնեալ կայ քարեայ սիւն մի՝ իբր երեք կանգնաչափ, որում տար սիւն վճռոյ. այն է սիճիլ գափուսի, որ աստ հատաւ վճիռ մահու Անմահ Փրկչին մերոյ Յիսուսի. և աստ գրեցաւ 'ի վերայ տախտակին՝ « Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից. Եբրայեցերէն, Դաղմատերէն, և Յունարէն գրով ». Յովհ. ԺԹ. 19, 20:

Զայն տախտակ եղին ևս 'ի գլուխ սեանս այսմիկ, զի երթևեկք ընթերցցին յիւրաքանչիւր լեզու: Եւ դուռնս այս գոլով յեզր քաղաքին, յորմէ ելանէր արտաքս 'ի լեառն Գողգոթայ, որ էր անցք կառափելոյ. ըստ աւանդութեան Հրէից՝ հանեալ զմահապարտսն արտաքոյ քաղաքին սպանանէին, զի մի պղծեսցի քաղաքն սուրբ: Տէր, զի անգիտութեամբ ընդ Սուրբն սրբոց արտաքս հանէին, զի մի սրբեսցին 'ի պղծութեանց հայուոյ, և ազատեսցին 'ի յաւիտենական չարատանջոց: Եւ հանէին զնա արտաքս քան զայգին, և սպանէին. Մարկ. ԺԲ. 8: Ղուկ. Ի. 15:

Մերձ սորին 'ի հիւսիսակողմն տեսանելին կամարք 'ի վերայ պողոտայից, յորոց վերայ են տունք բազումք: Ասի՝ թէ անդ կային կանայք ոմանք, որք իբրև տեսին՝ զի վճիռ մահուն հատեալ, 'ի դրանէ քաղաքիս արտաքս հանէին զՅիսուս, կոծէին զնա և լային. « Դարձաւ առ նոսա Յիսուս

Եւ ասէ ցնոսա · Դստերք Երուսաղեմի՝ մի լայք 'ի վերայ իմ, այլ լացէք 'ի վերայ անձանց և 'ի վերայ որդւոց ձերոց . . . զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի ։ Ղուկ · ԻԳ · 28 · 31 ։

Յաղագս Մեծատան և Ղազարու տանցն, և Ուժաթափման տեղւոյն Քրիստոսի և Սիմոնի, և Թաշկինակի տեղւոյն ։

Իսկ իջանելով առ արեւելս 'ի ներքոյ երկրորդ կամարին՝ յաջմէ գոյ նարակերտ դուռն մի՝ որ էր փուռն հացի, յոր արկին զՎերոնիկեայ կինըն, զմանէ ասեն թէ՝ սա էր արիւնահոս կինն բժշկեալ 'ի Քրիստոսէ · 'ի ձախմէ դրանն երեք աստիճանաւ ելանէ 'ի տուն Վերոնիկեայ, ուր հանդիպեալ Տեառն մերոյ 'ի ճանապարհին, մինչ բարձեալ տանէր ինքնին զծանրագոյն խաչըն, և քրտունք հոսէին 'ի նմանէ · սա Վերոնիկեայ կարկառեաց զվարշամակն իւր առ Յիսուս, զոր առեալ սրբեաց զքրտունս երեսաց իւրոց · յորում ապեալ նկարեցաւ պատկերն իւր 'ի վարշամակն, որպէս գրէ Մարինոս ։

Իսկ աւանդութեամբ՝ թէ զայն տեսեալ Հրէից, արկին զՎերոնիկեայ կինն 'ի հնոցն, և հրկէզ արարին զնա ։

Իսկ իջանելով մինչ 'ի յանկիւն որմոյն յաջմէ կողմանէ, երկու կանգնաչափ 'ի վեր յատակէն, գոյ խոր նշան խաչ յորմն, զորմէ ասեն՝ թէ

Տէրն մեր մինչ բարձեալ զխաչափայտն եղանէր 'ի Գողգոթայ, եհար զձեռն իւր 'ի յորմն. և ասեն թէ՝ փայտ խաչին հպեցաւ անդ, և եղև այն նշանն խոր:

Աստի յանկիւնէն դառնալով յաջմէ՝ տեսանի կամար 'ի վերայ պողոտային, յորոյ վերայ գոյ բարձրաբերձ գեղեցկաշէն պալատն, զորմէ ասի յաւանդութեան՝ թէ անդ էր տունն Մեծատան, որ ագանէր բեհեզս և ծիրանիս. Ղուկ. ԺԶ. 19:

Աստի դառնալով 'ի ձախմէ առ հարաւ, մերձ բաղանեաց է տուն աղքատ Ղազարոսին:

Բայց չերևի ինչ ստուգութի, քանզի Տէրն մեր առակ ասաց զայս, թէ և իցէ ստոյգ եղեալ՝ գոլ իրօք Մեծատունն և Ղազարոս. սակայն ոչ ոք կարէ ճշմարտել զբնակութիւնս սոցա, թէ ուր լեալ իցէ՝ կամ անդ:

Յաջմէ ճանապարհին տեսանի բաղանիք մի, որ կոչի՝ Սուլթան համամի. և 'ի յանկեան նորին 'ի փողոցի անդ ընկողմանեալ կայ քարեայ սիւն մի՝ յերկուս մասունս բաժանեալ, որոյ երկայնութին իբր 13 ոտնաչափ, և է բոլորակ սմախ քար:

Աստ 'ի վերայ սեանս այսմիկ ասի անկաւ Յս փրկիչն մեր 'ի խիստ չարչարանաց մարմնոյն՝ և 'ի ծանրութենէ փայտին կենաց, զոր բարձեալ ունէր 'ի յուս իւր:

Ուր հանդիպեալ Սիմոնի Կիւրենացւոյն, զոր կալան պահակ, զի բարձցէ զխաչ նորա. Մարկ. ԺԵ. 21: Ղուկ. ԻԳ. 26: Ոչ եթէ խնայէին 'ի նա, այլ զի մի մեռցի մինչչև հանեալ 'ի Գողգոթայ՝ 'ի խաչ հանիցեն զնա:

Իսկ մի մասն վերայիշեալ սեանն՝ յամի 1836, բարձին այլազգիք, և տարեալ եդին իբր բաղմոց առ դրանն պալատի բդեշխին. զորմէ ասացաւ՝ ուր էր սեանն Մեծատան. յորոյ վերայ նստողքն ’ի բազմաց անտի ’ի Թանչեց մեռանէին, և ոմանք ’ի նոցանէ անբուժելի ջերմութեան տենդիւ ախտացեալ չարաչար տանջէին ընդ երկար ժամանակ.

Վասն որոյ բարձեալ վերստին բերեալ եդին ’ի տեղւոջ իւրում, որպէս և էրն յառաջ. բայց ոչ միայն անկանգնելուր եղէ, այլ և ակնածանաւորք ’իսկ. և բանիւ բազմաց լուաք՝ որք ցուցադրին պատուիւ պատմեցին մեզ.

Իսկ ’ի նմին սեանն առ Հարբու գոյ վէմ մի, յորոյ վերայ ասի՝ թէ պատարագէին երբեմն Լատինք, այլ այժմ անկոխարանաւ. և ’ի յահէ այլազգեաց ոչ յայտնապէս պատուի ’ի քրիստոնէից, այլ մնայ և եթ.

Իսկ այժմ Հռովմէականք գնեցին զայս բաղանիս՝ Սուլթան Համամի կոչեցեալ. որոյ ’ի հիւսիսակողմանն շինեցաւ 1859 ամին, Հռչակաւոր Հիւպատոսարան Նէմսէի. և ’ի միջի նորա կառուցաւ յատուկ եկեղեցի, որոյ երկայնութիւն է 40 ոտնաչափ, և լայնութիւնն 25.



րիւն դորա՛ 'ի վերայ մեր և 'ի վերայ որդւոց մե-
րոց »։ « Ած զՅիսուս արտաքս՝ և նստաւ 'ի
վերայ բեմին 'ի տեղւոջն որ կոչիւր քարայա-
տակ, և Եբրայեցերէն կապպաթայ ։ Եւ ասէ
ցՀրէայս, ահա թագաւորդ ձեր ցձեզ․․․ », և
այլն ․ Յովհ․ ԺԹ․ 13․ 14 ։ Տեղին է 'ի մէջ պալա-
տին Պիղատոսի 'ի գաւիթն ։

Եւ 'ի ներքոյ կամարին յաջմէ դրոյ 'ի յորմն
խոր տեղի կայ իբր կանգնաչափ մի․ զորմէ ասի
թէ տեղի սուրբ կուսին․ յոր յեցեալ՝ տեսանե-
լով զեղեալսն ամենայն, լայր և արտասուէր ։
Մերձ սորին է դուռն մի մեծ, որ է մզկիթ, զոր-
մէ ասեն երբեմն գոլ եկեղեցի, բայց ոչ ոք այ-
ժմ իշխէ 'ի քրիստոնէից մտանել 'ի ներքս ։

Յաղագս տանն Հերովդէի ։

Մերձ կամարին է չորեք կուսի ճանապարհ,
'ի ձախմէ պողոտային՝ որ գնայ առ Հարաւ, ե-
րևի բարձրաբերձ պալատն Հերովդէի, ուր ա-
ռաքեաց Պիղատոս զՅիսուս առ Հերովդէս․ և
նա արհամարհեաց զնա հանդերձ զօրականօքն
իւրովք, և այպն արարեալ՝ արկ զնովաւ հան-
դերձ սպիտակ, և ետ անդրէն տանել առ Պիղա-
տոս․ Ղուկ․ ԻԳ․ 6․ 12 ։

Աստ եկեղեցի էր յառաջագոյն․ այժմ աւե-
րեալ յանօրինաց, արտաքին ինքեանց բնակու-
թիւն, և այժմ հիմնայատակ է, որպէս ակնե-
րև ցուցանի ։

## Յաղագս տանն Պիղատոսի ։

Գտանելով յետս յապարանից Հերովդէի առ յիշեալ կամարն, որոյ հանդէպ առ արեւելս տեսանի մեծ դուռն մի, այն էր տունն Պիղատոսի, այժմ քաղաքապետն բնակի զօրօք իւրովք, և է պալատ, այսինքն սարայ ։ Աստ խօսեցաւ Պիղատոս ընդ Յիսուսի. և հանդէպ սորին խնդրեաց ջուր, և լուաց զձեռս առաջի ժողովրդեան, որպէս գրեցաւ 'ի վերոյ ։

## Յաղագս Ձաղանաց տեղւոյն և փուշ պսակին ։

Առաջքոյ դրան տանն Պիղատոսի՝ որոյ կից կայ սուն կամարի, և միւս սուն ամրացեալ կայ 'ի յետոյս Ուրմոյ եկեղեցւոյն. 'ի սոյն այս կամարին ստանէ սկսեալ 150 ոտնաչափ երկայնութեամբ նոյն պողոտային, որ գնայ առ արեւելս, է տեղի և վանք Ձաղանացն Քրիստոսի ըստ Աւետարանչացն ։

Այս տեղի յոյժ աւերակ էր՝ անմաքուր և անպատիւ 'ի 600 ամաց հետէ, զոր երբեմն ախոռ առնէին անասնոց. գրէ Մորինոս՝ թէ յամի Տեառն 1619 Յունիսի 14. շինեցաւ գոմ ձիոյ 'ի ձեռն դքսին Երուսաղէմի, ուր զձիս առեալ օթագայէին. ընդ առաւօտն ելեալ տեսանէին զձիսն ամենայն մեռեալ, ուստի քակեալ աւերեցաւ ։

ուստի դուռն մնայ աղխեալ անդարձ և ամայի, բայց 'ի քրիստոնէից ոչ ոք մտանէ անդ :

### Յաղագս Խաբէշերից Եկեղեցւոյն, որ առ տաճկօք. զոր Արաբացիք կոչեն՝ Տէր'ըլ Հապէշ :

Հանդէպ դրան սոյն երրորդ բանտին է պաղատ մի՝ որ գնայ դէպ 'ի հարաւ . անցանելով յառաջին կամարն, որոյ 'ի ձախմէ է փողոց մի անել, այսինքն չըխմազ . յեզր փողոցին տեսանի դուռն մի՝ իբր 30 քայլ հեռի, ուր է եկեղեցի մի գմբէթեայ հնաշէն, սա է տուն Խաղաբեր սուրբ կանանց, և է 'ի ձեռս Այլազգեաց . և հազիւ թողուն քրիստոնէի մտանել 'ի նա :

### Յաղագս տանն Սիմոնի փարիսեցւոյն :

Նոյն պողոտայիւ ուղղակի գնացեալ մինչ 'ի հինգերորդ կամարն, յաջմէ 'ի ներքոյ վեցերորդ կամարին է կամարակապ քանդակածոյ դուռն մի հիւսեալ քարամբք, սա է դուռն տանն փարիսեցւոյն, զորմէ ասի յԱւետարանին: «Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոցն, զի կերիցէ հաց ընդ նմա, և մտեալ 'ի տուն փարիսեցւոյն բազմեցաւ : Ու կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր, իբրև գիտաց թէ բազմեալ է 'ի տան փարիսե-

ցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ նարդեան ազնուի, կայր յետոյ առ ոտս նորա՝ լայր և արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա, և հերով գլխոյ իւրոյ ջնջէր, և համբուրէր զոտս նորա և օծանէր ոդ. Ղուկ. Է. 38։

Թէպէտ անուն փարիսեցւոյս Սիմոն է. բայց ոչ է բորոտն. զի տուն բորոտին է 'ի գիւղն Բեթանիա. այլ սա էր մի ոմն 'ի գիտնոց և 'ի Ռաբունեաց Եբրայեցւոց։

Նոյն կինն մեղաւոր, որ էր 'ի քաղաքին, ոմանք ասեն զՄագդաղենացւոյն՝ որ էր քոյր Ղազարու։ Նա և փարիսեցին տրտնջեաց զՔրիստոսէ, ուստի ասաց Տէրն զառակս երկուց պարտապանաց. Ղուկ. Է. 40։

Ի պատիւ տեղւոյն շինեալ էր անդ վանք, որ ունէր զերկուս եկեղեցիս հոյակապ, որք մինչև ցայսօր ժամանակի կան մնան կիսով չափ խանգարեալ, և ունի քանի մի կամարակապ սենեակս, յորս գործէ բրուտ. և կայ առաջի դրան սենեկի միում սամախէ քար մի, յորոյ վերայ տըպեալ կայ շաւիղ ոտից Քրիստոսի։

Թէպէտ այն տեղիս է 'ի մէջ բազմախուռն բարբարոս ազգաց, սակայն ոմանք հաւատացելոց գնան անդ. քանզի այլազգիք թոյլ տան մըտանել և շրջիլ 'ի նմա, և ապա լռաբար խընդրեն 'ի նոցանէ կամաւոր պարգև։



Յաղագս տանն Յովակիմայ և Աննայի, և տեղւոյ ծննդեան սրբոյ կուսին Մարիամու ։

Դառնալով յետս 'ի տանէ փարիսեցւոյն՝ մինչ 'ի մերձեցեալ արևելեան դրանդաւոյ կամարին, ուր է դուռն երրորդ բանտին Քրիստոսի, գնալով 'ի ներքոյ կամարին, յաջմէ կողմանէ է փողոց և դուռն Սողոմոնեան տաճարին, յահեկէ պարապ է զգուշանալ և չգնալ ընդ այնր. Առաջոյ կամարին դարձեալ գոյ յաջմէ փողոց մի, և դուռն՝ ընդ որ գնայ 'ի Տաճարն. 'ի քառաւղի ճանապարհին՝ անցանելով ընդ այնս ուղղակի՝ գնացեալ մինչ մերձ առ բաղանիսն, ուր 'ի ձախամէ տեսանի բարձրաբերձ կաթուղիկէ եկեղեցի մի, որոյ Աւագ դուռն հայի յարևմուտս, և փոքրն՝ առ հարաւ. ահա այն է տունն Յովակիմայ և Աննայի, ուր ծնաւ սուրբ կոյսն Մարիամ։ Եւ էր սա հռչակաւոր վանք Լատինաց, բայց այժմ է 'ի ձեռս Այլազգեաց, և է նոցա մզկիթ.

Քանզի յամի Տեառն 1187. և Հայոց՝ ՈԼԶ. 'ի Հոկտեմբերի երկու, մինչ Իւսուֆ Սալահատին սուլթանն Եգիպտոսի՝ էառ զԵրուսաղէմ 'ի Լատինաց, յափշտակեաց և զայս 'ի ձեռաց նոցա, և արար իւրեան Վարժարան. վասն որոյ 'ի լեզու նոցա՝ կոչի Սալահիէ կամ Սալիհիէ ։

Եւ 1857 ամի՝ Լատինք գնեցին զբոլոր վանսն, և կանգնեցին պարիսպ, և երկոքին դրանքն ամրացուցին ։

## Յաղագս Քաղանեաց, որ կոչի՛ սուրբ Աստուածածնի ։

Ի ձախմէ Ճանապարհին՝ մերձ պարսպի քաղաքին գոյ փոքր քաղանիք մի, զորմէ ասի յաւանդութեան՝ թէ Աննա ամեալ զաւուրս կոյսն բերեալ անդ լուանայր. և հետք ոտից սոյն կուսին տպաւորեալ կայ 'ի կճեայ աւազան ջրոյն. զոր ցուցանեն անդ. որում ականատես իսկ եղաք. բայց զայս գրեմք 'ի գիտութիւն և ոչ 'ի հրաւէր երթալ անդ յուխտ, և թէ հանդիպիցի գնալ ումեք՝ չէ ինչ վնաս. զի քաղանիք է հասարակաց ։

Մանաւանդ յամի 1857. գնեաց զայն ազգն Յունաց, և է 'ի ձեռս նոցա այժմ ։

## Յաղագս Պրոպատիկէ աւազանին ։

Հանդէպ քաղանեացս է Բեթհեզդայ, այն է հինգ սրահ ունողք. յորս բնակէին ախտացեալքն, հիւանդք, կաղք, կոյրք, գօսացեալք, և անդամալոյծք. որք ակնկալեալ սպասէին յաւալ իջման հրեշտակին Աստուծոյ՝ և յուզման ջուրց Աւազանին. և 'ի տարւոջն քանիցս իջանէր հրեշտակ Տեառն անդ հրամանաւն Աստուծոյ 'ի շարժել զջուրս աւազանին, և որ ոք նախ կանխաւ իջանէր անդ, լուկ և իսկ բժշկիւր, և ոչ մնայր ինչ նշան ախտից և հիւանդութեան 'ի վերայ նորա ։

Ընդ էր երեւունեւութեանց անգամայնն, և ոչ զոք ունելով իւրեան օգնական, կայր մնայր յանբաւժելի յախտս. որպէս և ինքն իսկ խոստովան եղև բանիւ իւրով առ բժշկապետն երկնաւոր, որ գթացեալ՝ առաց նմա վաղվաղակի «Որդի, առ զմահճիճս քո և երթ ՚ի տուն քո»։ Յովհ. Ե. 8։

Բեթհեզդայ՝ որ ըստ Վարդապետաց առի՝ Տուն ողորմութեան, բայց ըստ Եբրայեցւոց՝ թարգմանի Հինգ սրահ, որ էր աւազան մեծ. և այժմ անջրդի՝ և եղեալ իբր աղբիւս, որ է չէօթէ-ն. որոյ երկայնութիւնն է քայլս 170, և լայնութիւնն 63։

Ո՞ր յաւանդութենէ՝ թէ անդ էր փայտ խաչին, որ եղև մեզ փայտ կենաց. և ՚ի նշան ապագայ զօրութեան նորա լինէր բժշկութիւն ՚ի ձեռն հրեշտակին։ Տես ՚ի Հաննա պարտուքն, յերես 280։

Ո՞րն է դուռն Տաճարին, որ կոչի Դուռն հօտից, ընդ որ մածանէին զողջակէզսն ՚ի Տաճարն. զոր այժմ կոչեն՝ Պապըլ-սըթթի Մէրիէմ։

Ո՞ւր առ արևելս է դուռն Բենիամինի, զոր անուանեն՝ Աստուածածնի դուռն։



## Յաղագս Թովմայի առաքելոյ եկեղեցւոյն:

Ելեալ 'ի սուրբ Յակոբայ վանից, և գնացեալ յաջմէ 'ի ներքոյ կամարին՝ տեսանի փողոց մի, որոյ 'ի ձախմէ գոյ փոքր դուռն մի. և առ դրանն տեսանի յարմն կամար մի, որոյ մէջն է գմբէթաձև. սա է Եկեղեցին սրբոյն Թովմայի առաքելոյն, և է հնաշէն: Ադրինոս ասէ՝ թէ սա է տուն Թովմայի. բայց Յայսմաւուրքն մեր՝ յՕգոստոսի քսանևհինգ ասէ, թէ Աստ վաճառեաց Տէրն մեր զԹովմաս առաքեալն Աբբանեայ վաճառականի Հնդկացւոյ, զիարդ և իցէ, թէ այսպէս և թէ այնպէս. Եկեղեցիս կառուցեալ է յանուն սրբոյն Թովմայի, որոյ երկայնութիւնն է քառասուն ոտնաչափ, և լայնութիւնն քսան. և գաւթի երկայնութիւնն 'ի հիւսիսոյ առ հարաւ է երեսուն ոտնաչափ, և լայնութիւնն յարևելից յարևմուտս է տասն ոտնաչափ:

Սա էր յառաջագոյն վանք Ասորւոց ազգին, այժմ 'ի ձեռս Այլազգեաց է. Նաև գոյ այլ ևս երկու Եկեղեցի 'ի հիւսիսակողմն սորին, որք են 'ի յետուստ եկեղեցւոյն Անգղիացւոց, որ կոչի՝ Խուղութերից. իսկ միւսն յարևելս նորին՝ որ անուանի Եաղուղիէ: Սոքա աւերակ են, և Ուխտաւորք ոչ գնան. այլ գրեմք 'ի գիտութիւն հետաքրքիր ոմանց:



Յաղագս Ասորւոց վանից, և եկեղեցեաց դորանն քաղաքին։

Գնացեալ նոյն պողոտայիւ, և 'ի դառնալն 'ի ձախմէ առ հիւսիս, յորոյ վերայ գոյ կամար մի. արտաքոյ կամարին յաջմէ՝ գոյ դուռն մի եկեղեցւոյ, որ է վանքն Ասորւոց, որոյ եկեղեցին կառուցեալ կայ յանուն սուրբ Անանիա. ասեն՝ թէ շինեալ է 'ի Թագաւորաց Քրիստոնէից, որոյ երկայնութիւն է 40 ոտնաչափ, և լայնութիւն 22։

Աւագ խորանի սքանչելագործ սուրբ Պատկերն, զոր աւանդութեամբ՝ թէ Յովհաննէս, որ կոչեցաւն Մարկոս, ձեռամբ իւրով նկարեալ է. և 'ի մէջ եկեղեցւոյն մերձ հարաւային դրան գոյ աւազան մի, զոր Ասորիք կոչեն՝ Աւազան սուրբ Աստուածածնի։ Այս է տուն Յովհաննու, որ կոչեցաւն Մարկոս, զոր յիշեցաք 'ի վերոյ։ Աստ ժողովեալ էին սուրբ Կոյսն Մարիամ, և Յակոբոս Տեառնեղբայրն, և այլք. և կային ընտէպ յաղօթս վասն Պետրոսի առաքելոյն՝ որ էր 'ի բանտի։

Նաև 'ի յարևմտակողմն եկեղեցւոյն է փոքր մատուռ մի՝ յանուն սրբոյն Մինասայ. որոյ երկայնութիւնն է 11 ոտնաչափ, և լայնութիւնն՝ 12. և ջրհոր մի գոյ 'ի նմա. և մեծ ջրհոր մի ևս գոյ 'ի գաւիթն։

Ի Թիւ Հայոց՝ ՌՃՀԶ. Գրիգոր վարդապետ Շղթայակիրն՝ նորոգեաց զվանս, և սպիտակացոյց զեկեղեցին։ Նոյն և յամի Տեառն 1831, նորոգեալ սպիտակացաւ. քանզի Ասորիք հետևող են Ազգի մերում։

Նաև արտաքոյ վանուցն 'ի ներքոյ կամարին սեւանի քարեայ սեան մասն մի, որ է նշան նոյն երկաթեայ դրան քաղաքին, որ ինքնին բացաւ առաջի Պետրոսի. և եմուտ 'ի ներքս և եկն 'ի տուն Մարիամու մօրն Յովհաննու Մարկոսի, որպէս գրի 'ի Գործս, ԺԲ. 2. 17։

## Յաղագս Յունաց սուրբ Գէորգայ վանուց։

Մերձ 'ի վանուցս Ասորւոց, և գնացեալ առ հարաւակողմն՝ որ յանդէմ միոյ սրբոյ Յակոբայ վանքն մեր՝ և 'ի ձախմէ Թաղն Հայոց, մինչ 'ի յեզր վանից մերոց. և 'ի դառնալն յարևելս՝ որ է քառուղիմի ճանապարհն, որ յարևելս է անել, այսինքն չըխմազ. է դուռն մի մեծ երկբացիկ. այն է վանք սրբոյն Գէորգայ, և ունի փոքրիկ եկեղեցի մի, և քանի մի սենեակ։

Նաև 'ի ձախմէ սոյն վանուցս՝ կից է տուն մեծ սեպհական ստացուած վանուցս մեր Յակոբեայ, որ ունի 37 սենեակ, և 13 մաղազայ՝ կամ դուքանի, և 6 մութպախ, և 5 մաքուր ջրհոր, և 3 ջրհոր անմաքուր, և մի փոքր պարտէզ։ Նաև մերձ յաջակողմն սոյն վանուցս ունիմք և այլ տուն մի երեք դրամբք, յորում է իբր 18 սենեակ, 3 մաղազայ, 10 մութպախ և քիլէր, և 3 ջրհոր։ Այս երկու տունք յամի Տեառն 1857 գնեցան, աշխատութեամբ Մեծափառ Սրբազան Պատրիարքին մերոյ, Տ. Յովհաննու Աստուածարեալ Արքեպիսկոպոսին Զմիւռնացւոյ։



## Յաղագս սուրբ Հրեշտակապետի վանուց մերոյ։

Յեւանելն 'ի վանուցն սուրբ Գէորգայ՝ և եկեալ առ հարաւ 'ի Թաղն Հայոց. անդ 'ի ձախմէ է դուռն՝ սուրբ Հրեշտակապետի վանից մերոց. որ է յարևելս սրբոյն Յակոբայ. և 'ի հարաւակողմն քաղաքիս, մերձ առ պարիսպն և առ դուռն Դաւթի։

Սա է յատուկ Եկեղեցի քաղաքացի Հայազգի ժողովրդոց մերոց. յորում և բնակին յաշխարհէ հրաժարեալ հաւատաւոր կանայք, որոց անուն Մայրապետ։ Սա էր տուն Աննա քահանայապետին, ուր և ածաւ Փրկիչն մեր Յիսուս 'ի գիշերի չարչարանաց 'ի ձորոյն Գեթսեմանի. Յովհ. ԺԸ. 13. «Եւ ածեն զնա նախ առ Աննա՝ որ էր աներ Կայիափայի, որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ»։

Նախ յաւանդութենէ, և 'ի պատմութեան Լատինաց՝ թէ յայնժամ Աննա զբաղեալ գոլով 'ի դատաստանի այլոց ուրուք, կապեցին զՅիսուս 'ի ծառն Ձիթենւոյն՝ ուր կայր. և ուժգին ձաղկեցին զնա, և ծառն կայ մնայ մինչև ցայսօր ժամանակի, և պատուի 'ի մէնջ և յայլոց ազգաց։ Եւ յԱրաբացւոց կոչի վանքս այս (Տէր ըլ զէյթունէ) այսինքն վանք ձիթենւոյ։ Սորա եկեղեցին է հոյակապ և յոյժ պայծառ. և կառուցեալ կայ 'ի վերայ չորից սեանց. որոյ երկայնութիւնն 40 ոտնաչափ, և լայնութիւնն 31։ Սորա Աւագ խորանն է յանուն սուրբ Աստուածածնի, յաջմէ և յահեկէ՝ սրբոց հրեշտակա-

պետացն Գաբրիէլի եւ Միքայէլի ։

Եւ 'ի հիւսիսակողմն է սուրբ Մատուռն՝ որ է Առաջին բանտն Քրիստոսի. յորոյ վերայ սեգան Պատարագամատոյց, եւ 'ի ներքոյ նորա բոլորակ փոսն, յատակօք եւ շրջապատօքն գեղեցկակերտ կճեայ. քարամբք յօրինեալ. եւ կրկին միջնավարա կանթեղօք յարդարեալ պատուի. եւ 'ի յետոյս որմոյն է վերոյիշեալ նոյն ծառն ձիթենւոյն։ Եւ 'ի հարաւակողմն է պահարան եւ խորան յանուն սրբոյն Հռիփսիմեայ կուսին, զոր նորոգեալ մեծացոյց եւ կանգնեաց զսեղան անդ Գրիգոր հայրապետ շղթայակիրն, 'ի թիւ Հայոց՝ ՌՃՀԴ. եւ զմասն ինչ 'ի նշխարաց սուրբ կուսին ամփոփեաց անդ, եւ զեկեղեցին զհամայնն սպիտակացոյց. որոյ երկայնութիւնն է 21 ոտնաչափ, եւ լայնութիւնն՝ 10։

Եւ գաւիթ եկեղեցւոյս է ընդարձակ, որոյ երկայնութիւնն է 24 ոտնաչափ, եւ լայնութին 60։ Եւ յաջակողմն է խորան չարչարանաց. եւ ջրհոր մի անդ 'ի գաւթի։ Եւ արտաքոյ եկեղեցւոյն, յորմն արեւելեան յանկեանն է քարն Ովսաննային. քանզի յաւուր գալստեանն Քրիստոսի յԵրուսաղէմ քաղաք, մինչ ասաց առ փարիսեցիս եւ առ դպիրս եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն. Ղուկ. ԺԹ. 40։ Նոյն յաւանդութենէ՝ թէ սա է 'ի քարանցն յայնցանէ։ Եւ ունի յատուկ դուռն մի երկաթի՝ որ ելանէ 'ի փողոցն առ-արեւմուտս, որ անջատէ զերկուս վանս յիրերաց. զսուրբ Յակոբայ եւ զսուրբ Հրեշտակապետի. եւ հանդէպ դրանս է մեծա-

գոյն փայտակերտ գաւառն, ընդ որ մտանէ 'ի մեծ վանս. և առ հարաւ գնալով նոյն պողոտայն այլ յատուկ մեծագոյն դրամբք ելանէ 'ի հրապարակն. ուր յամենայն աւուր Ուրբաթու՝ անուանոց պաճուճեղինաց և չորքոտանեաց վաճառ լինի, որ 'ի յետուստ դրանն Դուլթի. և 'ի ներքոյ պարսպին են տունք ուրկաց՝ և յարևելակողմն հրապարակին է պանդոկ ազգիս Հայոց, կան. մեծ ախոռ, զոր նորոգեցաք 'ի հիմանէ յամի Տեառն 1837։



Յաղագս Յունաց սուրբ Աստուածածնի վանաց. և խփաց պանդոկին։

Ելեալ 'ի տաճարէն մերոյ Յարութեան, և մտեալ 'ի վաճառանոցն 'ի ձախակողմն, տեսանի 'ի գլուխ վաճառանոցին յաջմէ փողոց մի զառ 'ի վեր, և 'ի գագաթ նոյն փողոցին 'ի ձախմէ է նորաշէն պանդոկն խփաւոյ, որ շինեցաւ յամի Տեառն 1839։ Իսկ յաջմէ նոյն փողոցին, հանդէպ պանդոկին է վանքն Յունաց. որ ունի փոքրիկ եկեղեցի մի յանուն սուրբ Աստուածածնի և բազում սենեակս, յորում բնակին մայրապետք նոցա։

## Յաղագս սուրբ Գէորգայ վանուցն Խոփայոյ։

Այս Հռոմէադաւան Յունաց վանուցն է վանքն սրբոյն Գէորգայ, որոյ եկեղեցին կառուցեալ է 'ի վերայ քարից քառանկիւնի սեւոց. բայց առաստաղն յոյժ ցած, և ունի զերիս խորանս, և զմասն ինչ 'ի նշխարաց սրբոյն Գէորգայ զօրավարին։ Ըստ նախնի սովորութեան ամ յամէ 'ի տօնի սրբոյն Գէորգայ. այն է 'ի Վարագայ խաչի պահոց Ուրբաթի երեկոյին բազմութեամբ և հանդիսիւ գնամք կատարել զպաշտօն ժամերգութեան, և առնել նախատօնակն, և վերադառնամք։ Իսկ 'ի շաբաթ աւուր ընդ առաւօտն զկնի ժամերգութեան, գնացեալ անդ կատարեմք զփրկագործ խորհուրդ սուրբ Պատարագին, և վերադառնամք 'ի սուրբ Յակոբ։



## Յաղագս վանաց Յունադաւան Համշէնականաց։

Յամի Տեառն 1847 'ի յարևմտակողմն սուրբ Գէորգայ խոփայոյ վանուց յունադաւան Համշէնականք շինեցին նորոգ 'ի հիմանց վանս, որոյ եկեղեցին է յանուն սուրբ Աստուածածնի. որոյ երկայնութիւնն է 63 ոտնաչափ, և լայնութիւնն 50. որ ունի երիս հոյակապ խորանս ընդարձակ և պայծառ, և 'ի գաւիթն գոն սենեակք. և յատուկ թաղ մի իւր քան սենեկօք, ուր բնակին միաբանք նոցին։

## Յաղագս Լատինաց պատրիարքարանին :

Ի Հարաւակողմն վերոյիշեալ վանուցն է նորաշէն պատրիարքարան Լատինաց՝ որ շինեցաւ յամի 1850 . 'ի մտանելն 'ի ներքս 'ի ձախմէ փաքլոր պարտիզին՝ է փոքրիկ եկեղեցի մի , յորոյ վերայ քանի մի հոյակապ սենեակք են , և յատուկ ճեմարան մի , և այլն :

Իսկ յարևելակողմն սոյն Պատրիարքարանիս բաւական մեծութք էր տուն մի Յունադաւան Հռոմէականի միոյ , որ ունի քանի սենեակս , և ջրհորս , և 'ի ներքոյ մաղազայս վաճառականաց , զոր յայսմ ամի 1859 , տրդեամբք սրբոյ Աթոռոյս գնեաց Ամենապատիւ սրբազան Պատրիարք Հայրըն մեր Հոգևոր :



## Յաղագս Մեծ վանուց Լատինաց :

Յարևմտակողմն քաղաքիս է վանքն Լատինացւոց . եկեղեցին է կաթուղիկէիւ յանուն սուրբ Աստուածածնի , որոյ երկայնութիւնն է 80 ոտնաչափ , և լայնութիւնն 59 . և ունի մետասան խորանս , զերիսն յարևելս հանդերձ աւագ խորանաւն , չորքն առաջի չորից սեանցն , և չորքն առ հարաւ և առ հիւսիս . և է կամարակապ 'ի վերոյ քառից քառակուսի սեանց , բայց ցած յոյժ . և ունի բազում սենեակս , և յատուկ կամարակապ թաղ մի քառակուսի , յորում են սենեակք աւելի քան զյիսուն վան կարգաւորաց . և ունի բժշկարան և հիւանդա֊

նոց, և պորտուկէզս, և արտաքոյ վանուցն յատուկ հիւրանոց՝ իբր սենեակս 45։



## Յաղագս վանաց Ռուսաց։

Ի Հիւսիսակողմն Լատինաց վանուցն է վանքն Ռուսաց, որ ունի հին եկեղեցի մի յանուն սուրբ Միքայէլի հրեշտակապետին. և ունի աւելի քան զվաթսուն սենեակս, և յանդիման վանուցս է Նորակերտ եպիսկոպոսարան, համալսարան, և գանչէլէր։



## Յաղագս Ձիթ վանացն Յունաց.։

Եկեղեցին է յանուն կոստանդիանոսի և Հեղինեայ՝ բայց փոքրիկ. և է կից Վերնատան մերոյ՝ որ 'ի սուրբ Յարութեանն. որոյ կրկին լուսամուտքն հային 'ի ներքս 'ի Վերնատունն մեր. յառաջ փոքրիկ էր վանքս ըստ գրելոյ Հաննա վարդապետին, բայց զվանս Հապեշից՝ որ կոչէր սուրբ Թեկղի, խառնեալ ընդ միմեանս, արարեալ են զերկոսեանն մի, և ընդարձակութեամբ լուսացուցեալ են. ուր նստի Պատրիարքն նոցին և գործակալք, և այլն։



# ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ

Ոմանց Սրբազան Պատրիարքաց՝ և Թագաւորաց մերոց, և երևելի անձանց և իրաց։

Յամի Տեառն 391, կրտսեր եղբայր Բարսղի Կեսարացւոյ՝ Գրիգոր Նիւսացի գնաց յԵրուսաղէմ, և շրջեցաւ ՚ի Տնօրինական տեղիս նորին Հոգւոյն որով արժան է տեսանել զայնպիսի սուրբ Ուխտատեղիս, մինչև ասել նմա, թէ ՚ի սիրտ աստուածասէր ուխտաւորին մնան միշտ Բեթղեհեմ, Լեառն Ձիթենեաց, Գողգոթայ, և սուրբ Յարութիւն. ՚Ի Վարս սրբոյ։

Յամի Տեառն 1169, և Հայոց՝ ՈԺԸ. մայրն Հեթմոյ և Ներսէսի Լամբրոնացւոյ Շահանդուխտ անկիւն գայ յԵրուսաղէմ յուխտ, և դառնայ յերկիր իւր։

Յամի Տեառն 1266, Փնտուխտար թագաւորն Եգիպտոսի կալեալ զերկրորդ Լևոն արքայազն Հեթմոյ առաջնոյ՝ կապանօք տանի յԵգիպտոս ընդ բազում գերիս. նա մինչ ՚ի կապանս էր, խնդրեաց ՚ի նմանէ գալ յԵրուսաղէմ յուխտ, որում հրաման ետ Փնտուխտարն, շղթայիւք և կապանօք եկն յԵրուսաղէմ յերկրպագութիւն սուրբ Տեղեաց, և վերադարձաւ յԵգիպտոս։

Նոյն յամի Տեառն 1269, արձակեալ ՚ի կապանաց՝ գնաց առ հայրն իւր արքայն Հեթում, և յետ վախճանի Հեթմոյ՝ թագաւորէ փոխանակ նորա։

Յամի Տեառն 1271. և Հայոց՝ ՉԼԵ. Սոյն այր եղբայր Լևոնի արքային շինէ յԵրուսաղէմ զպարիսպն սրբոց Հրեշտակապետաց վանուցն: Տես ի Հաննա զարմանալին, յերես 220. բայց զԹիւն սխալ դնէ ԳԼԵ. յերես 110.

Նաև 'ի հիւսիսային կողմն սուրբ Յակոբայ եկեղեցւոյն՝ հիմնարկեալ շինէ եկեղեցի մի յանուն սրբոյն Թէոդորոսի. որոյ երկայնութիւնն է 55 ոտնաչափ, և լայնութիւնն 25: Նաև խորանն յանուն սրբոյն Թէոդորոսի, որոյ 'ի ձախակողմն է մատուռ մի յանուն սրբոյն Մերկերիոսի, որ նահատակեցաւ յամի Տեառն 250: Յաջակողմանն է պահարան մի, ուր և խորան յանուն սրբոյ Կարապետի. և խորան մի ևս առաջոյ մեծի դրանն հարաւային, յանուն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին.

Գրէ Հաննա վարդապետ 'ի պատմութիւն, յերես 110. թէ « Թորոս որդի Լևոնի արքայի մեռաւ սրով. 'ի յիշատակ Որդւոյ իւրոյ շինեաց զեկեղեցիս, որոյ գերեզմանն կայ 'ի հիւսիսային յանկեան եկեղեցւոյն ». զայս չկարացաք ստուգել, թէ ուստի առեալ գրէ զայն.

Ի տարւոջն երիցս հանդիսաւոր Տօնախմբութիւն կատարի յեկեղեցիս այս: Նախ՝ 'ի մեծի պահոց՝ յառաջին շաբաթու շաբաթ օրն, 'ի Տօնի սրբոյն Թէոդորոսի զօրավարին: Երկրորդ՝ 'ի Տօնի սրբոցն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին. և Երրորդ՝ 'ի Տօնի սրբոյն Մերկերիոսի զինաւորին:

Յամի Տեառն 1281, և Հայոց՝ ՉԼ. Յոհան Երզնկացի, և պլուզ կոչեցեալն. այսինքն կապուտակն, որ և ծործորեցի. գայ յԵրուսաղէմ. յՈւխտ և յերկրպագութիւն սուրբ Տեղեաց։

Յամի Տեառն 1320, և Հայոց՝ ՉԾԱ. Երկրորդ Հեթում արքայն մեր գնայ մինչ 'ի դուռն Եգիպտոսի, ուր կանգնէ զյաղթանակ. և անտի գայ յԵրուսաղէմ յուխտ սուրբ Տեղեաց, ուր կացեալ զաւուրս տասնևհինգ գնայ 'ի Կիլիկիա։ Ի պատմութեան Հայոց, Գ. հատոր. յերես 373։

Սա՛ չինէ զխորան մի կից գերեզմանի սրբուհւոյ Աստուածածնին. նաև չինէ խորան 'ի վերայ հրեշտակի Վիմին մնարից սրբոյ Գերեզմանին Քրիստոսի՝ 'ի սուրբ Յարութիւնն։ Տե՛ս Ի. պատմութեան Հաննա վարդապետի, յերես 233. 297։

Յամի Տեառն 1375, և Հայոց՝ ՊԻԴ. Վեցերորդ Լևոն Լուսինեան արքայն մեր հանդերձ Մարիամ թագուհեաւ և փեննա դստերբն գերի վարեցաւ 'ի բռնակալէն Եգիպտոսի 'ի Գահիրոյ քաղաք. և յետ եօթն ամաց գերութեանն և արգելանաց՝ ձեռնտուութեամբ Յովհաննու արքային Գաղղիոյ. յամի Տեառն 1382, և Հայոց ՊԼԱ. Սուլթանն Եգիպտոսի Ահմէտ Ապուլահեթ հաճի Դէրիֆէ կոչեցեալ՝ արձակեաց զնոսա խաղաղութեամբ, տալով և գիր առ Յովհաննէս արքայն Գաղղիոյ. գրեալ յամի Տեառն 1382. և Տաճկաց՝ ٧٨٤, 'ի Րէճէպ ամիս. որք յուղի անկեալ եկին յԵրուսաղէմ յՈւխտ և յերկրպագութիւն սուրբ Տեղեաց՝ և 'ի շնորհակալութի̄ ազատութեան. բայց թագուհին Մարիամ և

դուստրն փեննա խնդրեցին մնալ յԵրուսաղէմ։

Եւ արքայն Լևոն եկեալ յամի Տեառն 1388 գնաց 'ի Հռովմ, 'ի Սպանիա, յԱնգղիա, և 'ի Գաղղիա, առ 'ի գտանել զօգնութիւն, բայց 'ի դերև ել. ապա հիւանդացեալ մեռաւ 'ի Փարիզ 60 ամաց, յետ մետասաներորդ ամի ազատութեան իւրոյ. յամի Տեառն 1393. 'ի Նոյեմբեր տասնևինն, և Թաղեցաւ յեկեղեցւոջ վանացն Կեղիստեանց 'ի Հոյակապ գերեզմանի. ուր և փորագրեալ կայ անուն նորա 'ի վերայ շիրմի մինչև ցայսօր։ Իսկ Թագուհին Մարիամ դշխոյ և դուստրն փեննա կացին մնացին մինչև 'ի վախճան կենաց իւրեանց. յամի Տեառն 1408, և Թաղեցան մերձ տաճարի սրբոյն Յակոբայ։ Ի պատմութիւն Հայոց, Գ. հատոր, յերես 363, 364։

Յամի Տեառն 1631, և Հայոց՝ ՌՁ. Գրիգոր պարոնտէր կոչեցեալ Նաւի Պատրիարք յԵրուսաղէմ. և յամի 1634, և Հայոց՝ ՌՁԳ. ձեռն 'ի գործ արկեալ՝ շինեաց զվանս մեր սուրբ Ծննընդեան՝ որ 'ի Բեթղեհեմ. և նորոգեաց զսուրբ Փրկիչ վանքն մեր. և կամարակապ կառոյց զեկեղեցի սրբոյն Յովհաննու աւետարանչին. որ է կից սուրբ Յարութեան տաճարին. և էառ զերիս կամարս 'ի Լատինացւոց վասն Հայոց 'ի Վերնատանէ սրբոյ Յարութեան, զորմէ գրեցաք այլուր։ Տե՛ս 'ի պատմութիւն Հայոց, Գ. հատոր, յերես 616։

Յամի Տեառն 1640, և Հայոց՝ ՌՂ. շինեաց զջրեմնաթաղն 'ի կողմն արևելից սրբոյն Յակոբայ՝ 'ի վերայ աղօրոյն եղեալ անենկօքն։ Եւ

վճարեաց զդիմեալ բազմամեայ պարտսն սրբոյ Աթոռոյս, և գնեաց զքանի մի գիւղս Աթոռս այս բարեյիշատակ :

Յամի Տեառն 1651, Փիլիպպոս կաթուղիկոսն սրբոյ Էջմիածնի՝ որ յԵրկան գեղջէ փոքր յԱղբակոյ, եկեալ գայ ՚ի Կարին. և անտի գնաց Երուսաղէմ յուխտ՝ ՚ի Պատրիարքութեան Աստուածատրոյ սրբազան արքեպիսկոպոսին, յորում ժամանակի և եկեալ էր Սրբազան Ներսէս կաթուղիկոսն Կիլիկիոյ. ուր կացեալ ամիսս չորս, եւ չինել գլխատակս եկեղեցւոյ սրբոյն Յակոբայ գունազոյն քարամբք, և գեղեցիկ յօրինեալ զաւդարեաց, և զսեամ Աւագ խորանին բարձրացոյց : Նոյն յամի 1652 ելեալ գնաց ՚ի Կոստանդնուպօլիս : Ի պատմութենէ Հայոց, Գ. հատ. յեր. 628 :

Յամի Տեառն 1663, Խաչատուր կաթուղիկոսն Կիլիկիոյ գայ յԵրուսաղէմ յուխտ ՚ի Պատրիարքութեան Նոյն Աստուածատրոյ Սրբազան արքեպիսկոպոսին, որոյ փոխանորդ էր և գործակալ Եղիազար եպիսկոպոսն Անթապցի, որ և բազում շինութիւնս արարեալ էր ՚ի վանս սըրբոյն Յակոբայ, մանաւանդ խորհրդով իւրն հեռատեսութեան՝ ՚ի հարաւակողմն սրբոյն Յակոբայ մեծի եկեղեցւոյն շինէ եկեղեցի մի՝ զոր և կոչեաց Էջմիածին. և ՚ի թիւ Հայոց ՌՃԺԴ. շինեաց զԹաղն Աբեղայից, և զկամարակապ սենեակս ՚ի վերայ մեծին ախոռոյն, որ կոչի պէժար թաղի. և նորոգեաց զսուրբ Գէորգայ վանքըն՝ որ ՚ի Ռէմլէ :

Նոյն յամի 1664, երթայ Եղիազար եպիսկո-

դոս 'ի Բերիա, և ձեռնադրի կաթուղիկոս 'ի վերայ ամենայն Հայոց՝ որ ընդ իշխանութեամբ Օսմանեանց, 'ի Խաչատուր կաթուղիկոսէ Սսեցւոյ. զոր հրաւիրեալ էր 'ի Բերիա. ընդ որ և յառաջագոյն խորհրդակցութեամբ միաբանեալ էին 'ի սիրտ և 'ի հոգի. և երթեալ նստի Եղիազար յԵրուսաղէմ. և Աստուածատուր Պատրիարքն սորա Երուսաղէմի վարէ զնա անտի, և ելեալ գեգերի յայլ և այլ քաղաքս:

Իսկ Յակոբ կաթուղիկոսն սորա Էջմիածնի 1665 գայ յԵրուսաղէմ յուխտ, և երթայ 'ի Կոստանդնուպօլիս, և անտի յԷջմիածին: Իսկ Եղիազար կաթուղիկոս յատուկ արքունի հրովարտակաւ կարգի և Պատրիարք սորա Երուսաղէմի յամի Տեառն 1666:

Իսկ յամի 1667, յաւուր տօնի ծննդեան Յիսուսի փրկչին մերոյ մեծաւ հանդիսիւ կատարէ զխորհուրդ օրհնութեան սրբալոյս Միւռոնին, որպէս գրէ 'ի կոնդակին՝ որ առ ամենայն իշխանս. նաև յիշէ զառատութիւն իւղոյ ծառոց ձիթենւոյն, յոր կապեցաւ Տէրն մեր. որ կայ մինչև ցայսօր 'ի սուրբ Հրեշտակապետաց վանս մեր. և ըստ խնդրանաց Լատինացւոց՝ 'ի Սրբալոյս իւղոյ անտի առաքէ ընծայ Պապին Հռովմայ, որպէս գրէ 'ի ծանուցական գիրս իւր, որոյ ամբողջ օրինակն եդաւ 'ի Ստորագրութեանս յայսմիկ:

Իսկ իբրև ամս երեք վերստին Եղիազար կաթողիկոս գեգերի աստ և անդ 'ի ձեռն Աստուածատուր Պատրիարքին սորա Երուսաղէմի,

որ և 1668 վախճանեցաւ. և յամի 1670 հաս-
տատի Եղիազար Պատրիարք Երուսաղէմի՝ և մի-
անգամայն կաթուղիկոս որբոյ Էջմիածնի. և յա-
մի 1679 վերստին երթայ Յակոբ կաթուղիկոսն
՚ի Կոստանդնուպօլիս:

Իսկ 1680 ՚ի վանս որբոյն Յակոբայ Եղիազար
կաթողիկոս ձեռնադրէ քանի մի եպիսկոպոսու-
նս. և ՚ի նոյն ամի Յակոբ կաթուղիկոսն Էջմի-
ածնի վախճանի ՚ի Կոստանդնուպօլիս: Իսկ միա-
բանք որբոյ Էջմիածնի յայնժամ ընդ երկար խոր-
հելով՝ և զօգուտն Ազգիս առաջի աչաց ունե-
լով՝ յամի 1682, գիր հրաւիրանաց առաքեցին
՚ի սուրբ Երուսաղէմ՝ առ Եղիազար Սրբազան
կաթուղիկոսն՝ գալ յԷջմիածին՝ և նստել ՚ի սեպ-
հական Աթոռ իւր, որ և նա յայսմ ամի գնաց
՚ի Կոստանդնուպօլիս. և զԿարապետ Պատրիարքն
թագաւորեալ քաղաքին ձեռնադրեաց եպիս-
կոպոս, և անտի ըստ խնդրանաց նոցին գնաց
յԷջմիածին ՚ի վարել զհոգևոր իշխանութիւն
իւր: Իսկ զօրինակ հրաւիրանաց գրոյն միա-
բանից որբոյ Էջմիածնի եդեալ եմք յայլում
տեղւոջ, զոր տե՛ս անդ: Իսկ այս ամենայն ընդ-
արձակ տեսանի. ՚ի պատմութ. Հայոց, Գ. հատոր,
Գլ. ԼԶ. յերես 697:

Յամի Տեառն 1713, և Հայոց՝ ՌՃԿԲ. Կոլոտ
Յովհաննէս Պատրիարք Պօլսոյ գայ յԵրուսաղէմ
վասն այցելութեան, ուր մնայ ամ մի և ամիսս
ութն. և դառնայ ՚ի Պօլիս:

Յամի Տեառն 1715, և Հայոց՝ ՌՃԿԴ. Գրի-
գոր Շղթայակիրն ընտրեցաւ Պատրիարք՝ որբոյ

Երուսաղէմի ։ Նոյն ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԶ . յաւուր Վերափոխման սրբոյ կուսին՝ երթայ ՚ի Կոստանդնուպօլիս . և յայնմ ամի Հրաման եղև յԱրքունուստ իւրաքանչիւր ազգաց չլինել զմիաձանին իւր ՚ի սուրբ Յարութիւն ։

Նոյն ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԹ . ՚ի 13 Սեպտեմբեր ամսոյն յաւուր Ուրբաթու . Գրիգոր Շղթայակիր Արքունի Հրովարտակաւ հաստատեցաւ Պատրիարք սրբոյ Երուսաղէմի . և ՚ի 14 Սեպտեմբեր՝ յաւուր Շաբաթու յիշատակեցին ՚ի Պատրիարգին ՚ի Կոստանդնուպօլիս՝ զանուն բազմերախտ Առն այնորիկ , որոյ ձեռնտու իշխանապետք էին Կեսարացի մահտեսի Մելիքսան այլ երևելիք ՚ի գաւառն արքունի . Ապուչեխցի մահտեսի Մուրատեան մահտեսի Յարութիւն . Թեքվեքէլեան մահտեսի Յարութի . Կեսարացի մահտեսի Սարգիս . և Կոստանդնուպօլսեցի մահտեսի Իսրայէլ և մահտեսի Լութֆլին , և այլք բազումք . սոքա էին պատճառ բարութեանց յամենայն իրս սրբոյ Աթոռոյս Երուսաղէմի . վասն որոյ ծանուցան աստէն ամենայնք բարեյիշատակ հոգելոյս անձանցն այնոցիկ ։ Նոյն ելեալ այն Շղթայակիր Հայրապետն մեր ՚ի Պօլսոյ եկն ՚ի Բերիա , որ է Հալէպ . անդ բազում կայուածս գնեաց , և նորոգեաց զհոգետունն սրբոյ Երուսաղէմի , որ կայր անդ ՚ի նախնեաց անտի ։ Նոյն ապա եկն յԵրուսաղէմ ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃՀ . ՚ի 12 փետրվարի ։ Տես ՚ի պատմութիւն Հաննա վարդապետի , յերես 147 ։

Սա շինեաց ՚ի կողմն արևելից սրբոյն Յակո-

բայց՝ քանզի մի ասեմ, և զբանս գնելով խառ-նեալ 'ի վերայ, և ընդարձակեալ լայնացոյց զե-ղեցկանս տէրունական Ուխտաւորաց. և արկանելոյ կողման պարիսպն նորոգ 'ի հիմանց շինեաց. և երեսուն չորս ամս եկաց 'ի Պատրիարքութեան բազմաջանդիւն ճգամբք:

Յամի Տեառն 1749, և Հայոց՝ ՌՃՂԸ. Յա-կոբ Նալեան 'ի Ղրիմայ, որ և Պատրիարք կոս-տանդնուպոլսոյ նստաւ ամս երեք՝ և ամիս մի:

Յամի Տեառն 1752, և Հայոց՝ ՌՄԱ. ըստ Տաճկաց՝ 1117, Եաղուբ աղայ Մեծահամբաւ իշ-խանն եկն ընտանեօք իւրովք յԵրուսաղէմ՝ յՈւխտ և յերկրպագութիւն սուրբ Տեղեաց. 'ի նմին ամի նստաւ 'ի տեղի նորա, զԹէոդորոս Պատրիարք Կորդուացին, որ էր աշակերտ Գրի-գորի Շղթայակրի. և զՅակոբ Պատրիարք տա-րաւ ընդ իւր 'ի Կոստանդնուպոլիս. և ինքն 'ի նմին ամի գլխատեցաւ անդ 'ի Պոլիս, հրամա-նաւ Սուլթան Մահմուտ առաջնոյ:

Յամի Տեառն 1761. վախճանի Թէոդորոս Կորդուացին. և Հայոց՝ ՌՄԺ. 'ի Դեկտեմբեր եօթն: Յամի Տեառն 1762, և Հայոց՝ ՌՄԺԱ. յԱպրիլ տասն և մէկ, յաջորդէ նմա աշակերտ նորա Կարապետ Գանձակեցի կամ Կէնճէցի. և վախճանի՝ 'ի ՌՄԺԷ. Յունուարի քսանևչորս:

Յամի Տեառն 1768, և Հայոց՝ ՌՄԺԷ. յԱպ-րիլ տասնեութ, յաջորդէ Պօղոս Վանեցին. և վախճանի յամի Տեառն 1775, և Հայոց՝ ՌՄԻԴ. 'ի Մայիսի տասնեութ:

Յամի Տեառն 1775, և Հայոց՝ ՌՄԻԴ. 'ի Նոյեմբերի երկու՝ յաջորդէ նմա Յովհաննէս 'ի Քանագեռոյ, և վախճանի ՌՄԽԲ. 'ի Սեպտեմբերի քսան և հինգ: Իսկ ՌՄԽԳ. 'ի փետրվարի տասն և չորս յաջորդէ նմա Պետրոս Եւդոկիացին. յառում ժամանակի եկն Գաղղիացին 'ի Յոպպէ, որոյ Պօնօբարթ անուն արքայն իշխանեցաւ 'ի եւրոպական տանն Փռանկաց մերոց. որ նոյն տունն տոհմային է 'ի ձեռս մեր. անտի եկեալ գայ արքայն 'ի վանս մեր սրբոյն Նիկողայոսի. իբր ժամ մի բազմի 'ի ներքոյ սեանն հոգետան մերում. իսկ Պետրոս պատրիարք գնացեալ 'ի Յոպպէ՝ վախճանի անդ, յամի 1799. և Հայոց՝ ՌՄԽԹ. 'ի Յունիսի քսանևմէկ, ըստ ոմանց՝ 'ի Յունիսի տասնևութ; և ՌՄԽԸ. որոյ գերեզմանն կայ առաջին դրանն եկեղեցւոյ սրբոյն Նիկողայոսի, որ 'ի Յոպպէ:

Յամի Տեառն 1799, և Հայոց՝ ՌՄԾԱ. Յուլիսի տասնևինն, 'ի տօնի Տապանակին յաջորդէ նմա Թէոդորոս Վանեցին. յաւուրս սորա 1808, և ՌՄԾԷ. յամսեանն Սեպտեմբերի այրեցեալ եղև սուրբ Յարութեան տաճարն 'ի 1810, և ՌՄԾԹ: Նա շինեցաւ սուրբ Յարութիւնն, նա և վիճակն մեր վերստին նորոգեցաւ, 'ի Թիւ Հայոց՝ ՌՄԿԳ: Իսկ հրամանաւ բարեխնամ Արքային նորոգեցան հնագոյն հրովարտակք 'ի վերայ սրբոյ Ծննդեան տեղւոյն, և 'ի վերայ սուրբ Աստուածածնի գերեզմանին պատարագելոյ ընկերութեամբ ընդ Յունաց, հաւասարելով ընդ նոսա զաշտանակս, զպատկերս, զկանթեղս, և

զպաշտօն ։ Յամի Տեառն 1818, և ՌՄԿԷ. յՕգոստոսի քսան և երկու, յաւուր Չորեքշաբաթի, վախճանի Թէոդորոս պատրիարքն ։

Յամի Տեառն 1819, և Հայոց՝ ՌՄԿԸ, յամսեանն Օգոստոսի ինն, 'ի տօնի Եփեսոսի սուրբ ժողովոյն. յաջորդէ նմա Գաբրիէլ պատրիարք Նիկոմիդացին. սա յամի 1824, և ՌՄՀԳ. 'ի տասնևինն կամ քսան Օգոստոսի, ըստ խնդրանաց Ազգապետ Ամիրայից ելեալ դիմէ 'ի Կոստանդնուպօլիս ընդ ցամաք՝ վասն ազատութե պարտուց սրբոյ Աթոռոյս, որոյ 'ի Ճանապարհորդելն և 'ի ժամանելն նորա 'ի Գօռըփըռու-խանն, որ է 'ի մէջ փայտասու, և Մամեստիոյ՝ այսինքն Մսիսու. ուրանօր նախկին Պատրիարք Կոստանդնուպօլսոյ՝ Ածարեալ Պօղոս Անդրիանուպօլսեցի Սրբազան Արքեպիսկոպոսին հանդիպեալ, և անդ ուրախ եղեալ ողջագուրեցին զմիմեանս. և ապա Գաբրիէլ Սրբազանն գնայ 'ի Պօլիս, և Պօղոս գայ յԵրուսաղէմ յերորդ աւուր Նոյեմբերի, և կացեալ անդ զաւուրս քառասուն, տեղեկացեալ զորպիսութի Աթոռոյն, և քաջ վերահասու լեալ ամենայն իրաց և գործոց. ապա 'ի տասներեք Դեկտեմբերի ելեալ յԵրուսաղէմէ գնայ յԵգիպտոս, և անտի 'ի Կոստանդնուպօլիս. ուր բազում ջանիւ գուն գործէր ընդ Ազգապետաց յաղագս ազատութեան սրբոյ Աթոռոյս 'ի ծանրաբեռն պարտուց ։

Իսկ երջանիկ Գաբրիէլ Պատրիարք ժամանեալ անդ 'ի մեծն Պօլիս, նոյնպէս և Պօղոս

այցելուն ։ ուր ՚ի ժողովն անդ յետ բազում բանից խօսակցութեան, Գաբրիէլ Արքայեանն Նըատու յիսկիւտար՝ ՚ի տանն Երուսաղէմի, մինչ յամի Տեառն 1829 ։

Այս առաքեցին ընդ սիրովն յարգութեամբ ՚ի քաղաքն Զմիւռնիա՝ առ ՚ի հովուել զբանաւոր հօտն Քրիստոսի, մինչև այց արասցէ Տէր Աթոռոյս Երուսաղէմի ։ բայց լեռնականուակ պարագքն, որք եղեն առ ժամանակ ժամանակ, օր աւուր յաւելոյր և ծանրանայր, մինչ զի լըտողքն անպամ զահիհարեալ ահարեկ լինէին ։ քանզի Թիւն պարտուց էր իբր ութն հազար քսակաց ։ որ պատճառեալ էր ՚ի պատերազմէն Ռուսայ՝ որ էր ընդ Յոյնս և ընդ Օսմանցիս, և երկարեցաւ յամս ինչ ։ վասն որոյ տէրունական Ուխտաւորք՝ մինչ զերիս ամս երկեան ճանապարհորդել ՚ի միջերկրական ծովս ։ վասն այսըր սկսան պարտատէրք օր ըստ օրէ նեղել ըզկառավարիչս և զմիաբանութիւնս Աթոռոյս, որոց ականատես իսկ եղաք ։ Այլ սրտաբեկ սըրբազումար Միաբանք՝ յուշ արտասուս ՚ի խորոց սրտէ մեծաւ յուսով առ Աստուած կարդային յաղագս ազատութեան և պայծառութեան Աթոռոյս ։

Յամի Տեառն 1825, սակս աղքատութեան մեծամեծաց քաղաքիս, և նեղելոյ պարտատեարց զկառավարիչս Աթոռոյս ։ չհանդուրժեալ խորհրդական հօրյն՝ Աւագ լուսարար Մկրտիչ եպիսկոպոս Երևանցի, փոխանորդ Արքայեան Պատրիարքի Եղիա եպիսկոպոս, և զորպիսածի կա-

թասլեա եպիսկոպոսն Եւդոկիացի, և Աբրահամ եպիսկոպոս Երուսաղէմացի. հանդերձ սպասաւորօք ելեալ գաղտ 'ի գիշերի չուեցին 'ի Քերբոն՝ առաջնորդութեամբ Աստուածամեան չէլէպին Քերբոնի, որպէս զի գնասցեալ անտի յԵգիպտոս, դիմեսցեն 'ի Կոստանդնուպօլիս, առ ի կարասցեն գտանել զհնարս ազատութեան պարտուց, և այլն:

Իսկ իբրև լուան մեծամեծք քաղաքին զփախուստ կառավարչացն, առաքեցին հրաւիրակս զկնի նոցա 'ի Քերբոն, բազում երդմամբ յոյնմհետէ չնեղել զնոսա. իսկ վերոյիշեալ չէյխն Քերբոնի՝ երաշխաւոր լեալ եպիսկոպոսաց, յետ երից աւուրց դարձ արարին վերստին յԵրուսաղէմ: Իսկ ապա յետ քանի ինչ աւուրց դարձեալ ապստամբեցան գլխաւորք քաղաքին, և տիրեցին բռնութեամբ ամրոցի քաղաքին. և կալեալ զեպիսկոպոսունս եդին 'ի բանտի. և զկնի երկուց աւուրց արձակեցին զնոսա, և չորք եպիսկոպոսք ելեալ անտի գնացին 'ի Բեթղեհէմ, ուր կացեալ ամիսս չորս, և ապա վերադարձան յԱթոռն:

Իսկ յամի 1826. 'ի տասն Յունիսի ամսոյն մեք եկաք յԵրուսաղէմ յուխտ, և յետ կատարելոյ զուխտս մեր, առաքեցին զմեզ 'ի Բեթղեհէմ իբրև միաբան, ուր մնացաք մինչ 'ի մեծ Զատիկ: Յայսմ ամի 'ի միջոցի ծննդեան և Առաջաւորաց բարեկենդանի, ապստամբեցան Բեթղեհէմցիք. յեղակարծ իմն գրոհ տուեալ յափշտակեցին զերիս վանս. զՄերն, Լատինաց, և Յունաց. յորոց բռնի խնդրէին քառասուն հինգ քսակս.

քանզի յայսմ ամի եկն դուքսն Դամասկոսի յԵրուսաղէմ, և եդ զհարկ 'ի վերայ բնակչաց Բեթլեհէմի քսակս քառասուն և հինգ. և զութն անձինս 'ի գրաւի առեալ, եդ 'ի պահեստի յամրոցին, և ինքն գնաց 'ի Սամարիա. վասն որոյ յափշտակեցին զվանսն, և անտուստ վանուց մերոց էր Հաճնցի Սարգիս վարդապետն, զոր կալեալ նեղեցին յոյժ. իսկ Թարգման Գէորգն երաշխաւոր լեալ՝ ազատեաց զտեսուչն, և էած յԵրուսաղէմ:

Եւ ապա անսեալ բռնաւորացն՝ զի երկարի միջոց հատուցման պարտուցն, եկին 'ի վանս մեր՝ և կալան զլուսարար Մշեցի Պետրոս վարդապետն, և զՊայազիտցի Տէր Յովհաննէսն և Սահակ որդի նորա՝ որք էին Ուխտաւորք յայնմ ամի. զՀացագործ Ղազարն, զկօշկարար Պաղտասարն, և զդռնապան Զէյթունցի Գէորգն, և զՄշեցի Մկրտիչն, ընդ նոսին և զմեզ եդին 'ի մեծ սենեակն 'ի բանտի, մինչ զաւուրս ութն նեղէին զմեզ ծխով: Նոքա իբրև առին զքառասուն և հինգ քսակս 'ի վանուցն երից ազգացս, և արձակեցին 'ի կապանաց զգրաւ առեալ զութն արս, որք եկին հասին 'ի Բեթղեհէմ. ապա եկեալ հանին զմեզ 'ի բանտէ, և յանձնեցին զվանսն յիւրաքանչիւր ազգս:

Եւ որպէս 'ի վերոյ գրեցաք. յաւուրս յայսոսիկ սուրբ Աթոռս մեր անկեալ էր 'ի ներքոյ ծանր և անվճարելի պարտուց՝ զի 'ի քանի ամաց անտի պակասեալ էին Ուխտաւորք վասն պատերազմին Պելոպոննէսոսի՝ որ է Մօրա. և

Արապկերցի Ղուկաս աղային՝ որ առաջին էր բը-ժշկին, արգիլեցաւ մտադրէն 'ի մտանելոյ 'ի վանս մեր ։

Յետ քանի աւուրց եհաս բժշկին յԵրուսաղէմ, և ընդ միւս ալէյին յառենի դատաւորին և միձուհից կոչեցեալ զնոյն Յօհաննէս վարդապետն Զմիւռնացի, ետ քննել զամենայն, և ետ ընթեռնուլ զհոգևորականն արքունի՝ և զմուրհակն պարտապանաց, որ և ամենայն առենակալք ընդ դատաւորին իրաւունս համարեցան տալ մեզ՝ բայց վասն հազար ղուրուշ պահանջմանն, որպէս 'ի վերոյ ասացաւ ։

Յայնժամ Յօհաննէս վարդապետն հանճարեաց յառենի անդ այսպէս ասելով, եթէ չէլէպի Պօղօսին իջէ խնդիրն մեր ․ ըստ սովորութեանն առեալ չէրաճ մի՝ տուք ինձ իլամն ․ և կամ տուք ինձ զգիր մի յայտնելով զպատճառն՝ թէ յինչ միտս չկամիք տալ իլամն ․ և ես առեալ զայն գիր՝ պատրաստ եմ անյապաղ վերադառնալ 'ի Թագաւորանիստ մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս ․ և զայս ասացեալ՝ արտաքս ելանէ յառենէն անտի ․ և բժշկին ես թէև յորդորեալ էր զդատաւորն առ 'ի տալ իլամն, բայց նա չէ ունկն եդեալ՝ կամ անսացեալ բանից նը ։

Ապա բժշկին կոչեաց առ ինքն զնոյն ինքն Յօհաննէս վարդապետն՝ և ասէ, ես ունիմ երթալ 'ի Դամասկոս, եկ և դու ընդ իս ․ և ես 'ի Դամասկոսէ առ դատաւոր քաղաքիս յայնժամ գրեմ այսպէս, թէ առեալ պաշտօնական խարճին՝ տուր իլամն այսր գործոյս ․ ասա թէ ոչ՝

եւ ունիմ գրել 'ի բարձրագոյն Դուռն արքու-
նի, թէ վճարեցաւ 'ի դատարանի առ չլմ վասն
այսր գործոյ, եւ ամենայն Առենակալք հաճ եւ
հաւան գտան, բայց 'ի մեր քան զչափին պահան-
ջելով չլմն, յետոյ կասեցան 'ի գրելոյ չլմն ։

Այս քան բդեշխին հաւանեալ՝ եւ Յոհան-
նէս վարդապետն, եկեալ պատմեաց կառավա-
րիչ Եպիսկոպոսաց սրբոյ Աթոռոյս, եւ հեռա-
տեսութիւ իւրով զայս խորհուրդ եւ եռանդս։
զի եթէ պահանջեսցեն ինչ 'ի Դատարանէ վասն
իւրմին, եւ 'ի չգտանել ձեր օգնական ոք կամ ճար
իմն՝ միայն յանձնառու լիջիք առ զմուրհակ առ-
դատաւորն յանուն Մուստաֆին իւրոյ՝ թէ եւ վաթ-
սուն հազար ղուռուշի իցէ, եւ մի երբէք առա-
ջէք զդրամ մի. եւ զօրութեամբ Տեառն 'ի հա-
սանելն իմ 'ի Կոստանդնուպոլիս՝ յուսամ գտա-
նել զելս հնարից. եւ 'ի Կոստանդնուպոլիս եւս
գրեաց որոց արժանն էր այսպէս. եթէ 'ի կա-
ռավարչաց սրբոյ Աթոռոյս հասցէ առ ձեզ
մուրհակ մի յայս անուն, մի խոստասջիք վճա-
րել յառաջ քան զհասանելն իմ այդր. եւ ել
գնաց ընդ բդեշխին 'ի Դամասկոս ։

Իսկ կառավարիչք դր Աթոռոյս ոչ կարացեալ
գտանել զհնարս ինչ առնուլ չլմն, ետուն ըզ-
մուրհակն վաթսուն հազար ղռշի, եւ առեալ չլմն
առաքեցին 'ի Դամասկոս առ Յոհաննէս վար-
դապետն ։ Որ եւ նա ինքն փութապէս հասոյց
ընդ ցամաք 'ի Կոստանդնուպոլիս, եւ օգնութբ
Գերապատիւ Ազգապետաց էառ յայնժամ ըզ-
հրովարտակն Բաթոխթի, 'ի հատուցանել մինչեւ

վերայ լի էին կանայք. նոյնպէս և 'ի ներքոյ նա-
ւու լի կանամբք և արամբք, բայց չեղև ինչ վը-
նաս ումեք. յորում ամի նորոգեցաւ սոյն եկե-
ղեցին Աստուծոյ և սպիտակացաւ։

Յամի Տեառն 1832, 'ի տասներինն Մարտ ամ-
սոյ 'ի չորրորդ կիւրակէի մեծի պահոց, յայնմ
գիշերի 'ի մէջ որքոյ Յարութեան զկնի Յունաց
պատարագին. գրոհ տուեալ Յունաց արանց
սիկարեանց խորտակեալ կտորեալ մանրեցին
զնորոգ եղեալ բոլորակ պատուհանաղորդ կճեայ
պատուական քարն Ուժաթափման որքոյ Աս-
տուածածնի տեղւոյն, յորում եղեալ էր յառաջ
քան զամիսս ինչ. որ առաքեցաւ 'ի Պօլսոյ 'ի յե-
շատակ երեսուն և վեց անձանց՝ տէրունական
Ուխտաւորաց, որք ծովամոյն եղեալ էին քանի
ամաւ յառաջ 'ի նաւելն յԵրուսաղէմ։

Յամի Տեառն 1834, յաւուր մեծի շաբաթու
Ճրագալուցի, յորում աւուր երկու ազգք Մեք
և Յոյնք առնեմք արարողութիւն լուսաւոր-
եայի ըստ նախնի Հարց մերոց 'ի սուրբ Գերեզ-
մանն Քրիստոսի. և 'ի նմին ժամու մեծազօր
դուքսն Եգիպտոսի Իպրահիմ փաշայն, որ տիրէր
Երուսաղէմի, առեալ ընդ ինքեան զզօրս իւր
աւելի քան զհինգ հարիւր, գայ մտանէ 'ի սուրբ
Յարութեանն տաճար՝ յեօթներորդ ժամու՝ 'ի
պահպանութիւն խուռն բազմութեան Ուխտա-
ւորաց Մեր և Յունաց՝ որք էին աւելի քան ըզ-
տասն հազար անձինս, թող և զայլազան ազգ-
եկաց և բնակաց. և ինքն Իպրահիմ փաշայ ե-
լեալ նստէր 'ի վերնատունն Լատինաց, և զօրքն

'ի ներքս և արտաքս շուրջանակի պահէին ըզ-գուշութեամբ։ Որդ՝ յետ լուսաւորեալին մինչ կամէին ընդ կրունկն դառնալ՝ և ելանել ար-տաքս 'ի տաճարէ անտի սրբոյ Յարութեան, ո-րոյ երկրպագելի դուռն փակեալ գոլով. վասն որոյ յայնժամ ժամու անկան 'ի խուճապ անդ 'ի Հայոց և 'ի Յունաց և յայլոց ազգաց անձինք իբր հա-րիւր յիսուն՝ կս և երեք անձինք 'ի զօրացն Իբ-րահիմ փաշայի, որքս ամենեքեան ճնշատապա-եղեալ մեռան։ Ոնդ էր տեսանել լալումն ող-բումն՝ և աղիողորմ ձայն աղաղակի խուռն բազ-մութեան։ Յայնժամ ամս յաւուր Աշխարհամատ-րան կիւրակէի եղև շարժ, յորմէ բազում հոյ-ակապ շինուածք խախտեցան և կործանեցան։

Ապա յետ այնու ապստամբեալ Գաղանտա-րան Արաբացւոց պաշարեցին զԵրուսաղէմ զա-ւուրս տասն. 'ի ներքուստ և յարտաքուստ մարտ եղեալ ընդ միմեանս կռուէին, մինչ ոչ կարա-ցին զդէմ ունել ապստամբ ֆէլլահից զօրքն Իբ-րահիմ փաշայի, թոյլ ետուն նոցա մտանել 'ի քաղաքն, և զօրքն մտեալ յամրոցն ամրանային. յայնժամ պահու աւար հարին ֆէլլահք զտունս և զվաճառանոցս մինչ ցերկուս աւուրս։

Ապա մինչ լուաւ թէ՝ Իպրահիմ փաշայն բա-զում զօրօք ելեալ 'ի Յոպպէ՝ և գայ յԵրուսա-ղէմ. ամենեքեան ահաբեկ լեալ՝ ցիրեցան ե-ղեալ 'ի փախուստ դառնային. եկն ապա քաջ սպարապետն, և յաղթեալ նուաճեաց զգունդս ապստամբացն, և դիմեաց 'ի վերայ քաղաքին Քէրրոնի՝ և պաշարեալ էառ զայն, զմեծամեծ-

շինեցան զայդ անհնարինք , վերնատունն և ներքը-նատունն , ՚ի մեծի գաւթի հանդէպ կղզեակին մա-մլատանն : Այս քաղաքապետական եղև այն մեծ գաւթին և այլ բազում ատեղիք , և նորոգեցան բազում ջրհորք աւելի քան զքսան . նաև մեծա-ծաւալոյն Ջրհորն կոչեցեալ Ֆէրանի Օղլու , որ է Կեսարացի Պետրոս եպիսկոպոսի յիշատակն :

Այլ և բազում ջանիւք հաստատեցաւ Տը-պարան ՚ի պարծանս ազգիս Արամեայս , որ մինչև ցայսօր ժամանակի չեղև երբէք ՚ի նախնի Հայոցն մերոց :

Նա և յամի Տեառն 1837 շինեցաւ սուրբ Համբարձումն . և յամի 1839 հիմնայատակ ե-ղեալ կործանեցաւ ՚ի ձեռն Լատինաց և Յու-նաց :

Յամի Տեառն 1840 , ՚ի քսան և հինգ ամսոյն Ապրիլի , Գաբրիէլ Սրբազան Պատրիարքն՝ փոխե-ցաւ առ Աստուած : Այս ՚ի նոյն ամի՝ ՚ի քսան և չորս Հոկտեմբերի յաջորդեաց նմա Զաքարիա Պատրիարքն՝ որ էր ՚ի սահմանաց Տարանոյ ՚ի Կա-մրայ գեղջէ . յաւուրս սորա Թէպէտ չեղև ինչ երևելի գործ և շինութիւն . սակայն պատրաստե-աց զնիւթ շինութեան , և արար հիմնարկու-թիւն Թաղի միոյ , որ կոչէր Լիմոնի պարտէզ . էառ և զքանալին սրբոյ Ծննդեան տաճարին եր-կաթի դրանն ընկերութեամբ ընդ Յունաց . բայց յետ միոյ ամսոյ՝ կաշառօք դարձեալ յետս ա-ռին Յոյնք զքանալին :

Յամի Տեառն 1841 , եկն Անգղիոյ եպիսկո-պոսն յԵրուսաղէմ , և սկսաւ հիմնարկութիւն

եկեղեցւոյ նոցա. որ եղև կատարումն շինութեանն 1848։

Յամի Տեառն 1845. 'ի սկիզբն Մարտի նորատ Ցունաց Պատրիարքն յԵրուսաղէմ, որ երկու հարիւր ամօք յառաջ մինչև ցայսօր Պատրիարքն նոցա նստէր 'ի Կոստանդնուպօլիս. թէպէտ այժմ ևս է 'ի Կոստանդնուպօլիս։

Յամի Տեառն 1846, 'ի եօթն Մայիսի եղև վախճան Զաքարիա Պատրիարքի։

Յամի Տեառն 1847, 'ի տասներեք Փետրուարի յաջորդեաց նմա Կիրակոս Պատրիարքն Երուսաղէմայ, յաւուրս սորա շինեցաւ 'ի Հայրաւանկոցն վանուցս, 'ի վերայիշեալ Լիմոնի պարտէզն նորոգ հոյակապ թաղ մի, հիմնարկեալն 'ի Զաքարիա Պատրիարքէ. որոյ երկայնութիւն է 155 ոտնաչափ, և լայնութիւն 75. և ունի քառասունևութն սենեակս. և 'ի մէջի ընդարձակ գաւիթ, և 'ի սրահին գեղեցիկ պարտէզ, ունի և եօթն ջրհորս. և առաջի սենեկացն երկաթեայ ճաղիւ ամրացեալ. որոյ Աւագ դուռն մերձ 'ի ջրհորն, որ կոչի Քիլէճ Խողի, և փոքր դուռն մի՝ որ ելանէ ընդ հարաւ։

Նա և շինեցան քանի մի հոյակապ սենեակք 'ի յետոյս տաճարի սուրբ Յակոբայ եկեղեցւոյն առ արևելս կոյս՝ 'ի վերայ դրանն աղօրւոյն. առ որ ելանէ տասն և վեց աստիճանաւ, որոց լուսամուտքն երկուքն հային յարևմուտս դէպ 'ի սուրբ Տաճարն. չորքն՝ 'ի վերայ հրապարակին մեծի, և միւսքն 'ի հիւսիս 'ի վերայ տանեաց աղօրւոյն՝ և յարևելս։

Նաև ոսկեզօծ գեղեցկացեալ ծաղկեցան և պայծառացան, խաչկալք սուրբ Յակոբայ եկեղեցւոյն, և գմբէթն սուրբ Գլխադրին. կաթուղիկէք սուրբ Խաչին և Ամբիոնին, և այլ ամենայն խոյակք և բուխղք շրջապատօք սուրբ Պատկերաց. վերնատունն խորանաց սուրբ Էջմիածնի, սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Մինասայ խաչկալք. նաև սուրբ Հրեշտակապետի և որբոյ Ծննդեան՝ որ 'ի Բեթղեհէմ, ներքին եկեղեցւոյ խաչկալք ոսկեզօծ գեղեցկացան։

Յամի Տեառն 1847, հիմնարկեալ շինեցաւ եկեղեցի հռոմէադաւան Յունաց՝ 'ի հիւսիսակողմն պատրիարքարանին Լատինաց. որոյ առաջին Պատրիարք Մաքսիմոս եկն յԵրուսաղէմ և կացեալ ամիս ինչ, և ելեալ գնաց 'ի Վերիտոն՝ որ է Պէրութ, և անտի 'ի Դամասկոս։

Յամի Տեառն 1848, 'ի Յունվար հինգ՝ նըստաւ Լատինացւոց Պատրիարք յԵրուսաղէմ, որ և սկիզբն եղև Պատրիարքութեան նոցա յԵրուսաղէմ, զի 'ի բնէ անտի ոչ էր։

Յամի Տեառն 1848, 'ի տասներկու Ապրիլի յերկրորդում աւուր սուրբ Զատկին, յետ ելանելոյ Եկեղեցւոյն, 'ի յերրորդ ժամու տուընջեան յեղակարծ իմն ինքնին լուցան և վառեցան կանթեղք և լապտերք սուրբ Յակոբայ եկեղեցւոյն, յորում էին բազումք Ուխտաւորաց; և երևելի ականատեսք Աստուածասէր Իշխանաց, որք ականատեսք եղեն, և մինչ ձայն աւետեաց հնչեցին յականջս եկաց և բնակաց, և ուղղորաց ևս, ուստի դարձան յետս յԵրու-

տաղէմ․ և եկեալ խառնեցան յայս յամենայն ազ-
գաց բարեպաշտէից, այլ և ՚ի հեթանոսաց և ՚ի
հրէից․ յորոց ոմանք ՚ի նոցանէ լիքն տեսին
զսքանչելիսն՝ հիացեալ գոհութեամբ փառս
վերառաքէին տուողին բարեաց․ և ոմանք ՚ի
նոցանէ տաշեալ յանձրաս լցեալ բերանոցաց
ծնցին, այսպէս առնէին լոյսն մինչև զերկու ժամս․

Յամի Տեառն 1850, ՚ի քսան և չորս Մայիսի
յերկրորդ ժամու գիշերոյ՝ յանկարծ իմն եղև
վախճան Կիրակոս Սրբազան Պատրիարքի․ որում
ընտրեցաւ յաջորդ ՚ի Պոլիս ՚ի չորս Յուլիսի,
Զմիւռնացի Յովհաննէս Սրբազան Արքեպիսկո-
պոսն, ըստ խնդրոյ հոգեգաւմար Միաբանութեան
սրբոյ Աթոռոյս, և ըստ միաբան և միահաւան
ընտրութեան Ազգային ժողովոյն բազկացելոյ ՚ի հո-
գևորական և յաշխարհական երևելեաց ՚ի Մայ-
րաքաղաքն Կոստանդնուպօլիս․ որ և նորին Սըր-
բազնութիւնն ՚ի բազում ամաց հետէ վարէր
զպաշտօն փոխանորդութեան սրբոյ Երուսաղէ-
մի ՚ի Կոստանդնուպօլիս․ առ որ հրաւիրակ ա-
ռաքեցան յԱթոռոյս՝ երեք վարդապետք, Մատ-
թէոս Կեսարացին, Ղուկաս Բալուեցին, և Յա-
կոբոս Կեղիպօլցին, և կրկին Սարկաւագունք․
ընդ որս Նորընտիր Սրբազան Պատրիարքն եկեալ
՚ի Պօլսոյ՝ եկն եհաս յԵրուսաղէմ յիններորդ
աւուր Նոյեմբերի․ և ՚ի տօնի սրբոց Հրեշտա-
կապետացն նստաւ յԱթոռ Պատրիարքութեան․
որ այժմ խնամօքն Աստուծոյ վարէ զբարձրա-
գոյն Իշխանութիւնն ամենայն բարեկարգու-
թեամբ․ որում Տէր տացէ զօրութիւն և կա-

վերայ բուրաստանին, և ունի չորս սենեակս առ հիւսիս և առ հարաւ. և առ արևելս ունի Աւագ միջնադուռն, որոյ առաջի փոքր սրահ և մեծ լուսամուտ մի, և յաջմէ նորին մեծագոյն յատուկ սենեակ մի. հանդէպ միջնադրանն չորեքին աստիճանաւ 'ի վայր՝ են անդ կրկին սենեակ և սպասաւորաց, որոց յանդիման է յատուկ գրատուն. և առ հիւսիս է Աւագ դուռն տաճարին՝ ընդ որ ելանէ 'ի սուրբ Մինասայ Թաղին. զորմէ գրեցաւ 'ի վեր:

Այս շինեցաւ նորոգ Թաղ մի 'ի հիմանց՝ հոյակապ և գեղեցկադիր 'ի հարաւակողմն վանուցս իբր քառասուն և վեց սենեկօք. որոյ դուռն հայի 'ի հիւսիս, և միանայ ընդ հարաւ հանդէպ պարտիզին, յաջմէ ճանապարհին՝ որ գնայ 'ի վանս սուրբ Հրեշտակապետին, որոյ երկայնութիւնն է 185 ոտնաչափ, և լայնութիւն 100. որոյ յիշատակարանն եդեալ կայ 'ի ճակատ դրանն այսպէս:

« Ողորմութեամբն Աստուծոյ աւարտեցաւ հիմնակառոյց գեղեցկաշէն Չամլը Թաղս Ազգասէր Տ. Տ. Յովհաննու Սրբազան Պատրիարքի Զմիւռնացւոյ. աջակցութեամբ խորհրդական սուրբ Եղբարց 'ի պարծանս լրութեան Ազգի. 1853, 'ի վերջ Մայիսի »:

Յամի Տեառն 1857, յաւուրս սոյն բարեյիշատակ Սրբազան Պատրիարքիս եղև հիմնարկութիւն Նորակերտ Ուսումնարանին՝ որ կառուցաւ առ արևելս Չամլը Թաղին՝, որ ունի չորս սենեակս՝ իբր դասարան, երկուքն առ հիւսիս

և երկուքն առ Հարաւ. և երկայնութիւն իւրաքանչիւրոցն է եօթն կանգուն՝ և լայնութիւն վեց կանգուն և վեց մատն. և ՚ի միջի ունի սրահ՝ իբր հանգստարան ուսանողաց. որոյ երկայնութիւնն է քսանևհինգ կանգուն և կէս. և լայնութիւնն ինն և կէս կանգուն. որոյ աւագ դուռն հայի ընդ արևմուտս՝ ՚ի Չամըլը Թաղըն, և զօրութեամբ Տեառն մերձ է կատարումըն շինութեանն յետ քանի ամսոց, զոր Տէր յաջողեսցէ ՚ի պարծանս սրբոյ Աթոռոյս և ՚ի պայծառութիւն լուսաւորեալ ազգիս Հայոց։

Նոյն յամի Տեառն 1857, և ՚ի փետրվարի 13, երջանկափառ Տ. Տ. Ներսէս Ե. Սրբազան կաթուղիկոսն սրբոյ Էջմիածնի փոխեցաւ յանցաւոր կենցաղոյս առ ի յանանց կեանսն երանութեան իբր իննսուն և չորս ամաց։

Նոյն ՚ի սմին ամի՝ եղև սկզբնաւորութիւն նստելոյ ՚ի սուրբ Երուսաղէմ արքեպիսկոպոսի միոյ ՚ի Ռուսաց ազգէն։

Նոյն յայսմ ամի 1858, և ՚ի Դեկտեմբերի մէկ, համակամ հաճութեամբ բոլոր լուսաւորեալ ազգիս Հայոց եկեղեցականաց և աշխարհականաց, որ յԱսիա և յԵւրոպիա ընդ իշխանութեամբ կրկին Մեծազօր տէրութեանց Օսմանեանց և Ռուսաց, ընտրեցաւ ՚ի նոյն Սրբազնագոյն կոչումն կաթողիկոսութեան և մեծի քահանայապետութեան լուսաւորչերամ ժողովրդեանն ամենայն Հայոց՝ Կոստանդնուպօլսեցի Ամենապատիւ և Երջանկափառ Տ. Մատթէոս Առաքելագործ Սրբազան Արքեպիսկոպոսն, զոր Տէր ՚ի պար-

ծառս ազգիս բազմամեայ կենօք պարգեւեացէ ։

Եւ յայսմ ամի 1858, սկիզբն եղեւ 'ի սուրբ Երուսաղէմ Նասելոյ Հիւպատոսի մեծի տէրութեանն ինքնակալին Ռուսաց, որպէս գՀիւպատոսս այլ տէրութեանց ։



# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՐԱՒԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Աստի մինչ ՚ի ԲԵԹՂԵՀԷՄ երկու ժամ է։

Ելեալ ՚ի դրանէ Դաւթի, որ ըստ Արաբացւոց կոչի պապըլ խալիլ։ Յաջմէ կողմանէ առ պարսպաւ գնայ իջանէ ՚ի ձորն Հսկայից ըստ ոմանց մեկնչաց. յոր եկին լրտեսք՝ և տեսին անդ զՀսկայս. «Տեսաք անդ հսկայս, և էաք յաչս նոցա որպէս մարախս». Թուոց. ԺԳ. 34։ Ընթանելով ընդ կամուրջն, և ընդ ցամաք աղբիւրն. ելանէ խուն ինչ զառ ՚ի վեր ՚ի դաշտն. ՚ի ձախմէ ճանապարհին գոյ աւերակ մի՝ զոր կոչեմք Յուդայի գիւղ, յորում է մզկիթ մի, այս է գիւղն չար խորհրդոյ զոր մեք ասեմք Յուդայի գեղ, և յԱրաբացւոց կոչի տէր ապու—թօռ. քանզի Կայիափայ քահանայապետն արար ժողով քահանայից և իշխանաց Հրէից, ուր մարգարէաբար վճռեցաւ վասն Քի մեռանել. «Լաւ է մեզ, զի այր մի մեռանիցի ՚ի վերայ ժողովրդեանս, և մի ամենայն ազգս կորիցէ». Յովհ. ԺԱ. 50։ Զայս գիւղ գնեցին Յոյնք 1857։

Հանդէպ սորին է նորաշէն քանի մի տուն Յունաց. յարևմտակողմն սորին է նորակերտ պալատ Հիւպատոսին Անգղիացւոց։ Ըստ իբր քարընկեց մի՝ է տուն կամ աշտարակ Սիմէոնի ծերունւոյն, որ ՚ի քառասնօրեայ գալստեան Փրկ-

չին մերոյ՝ եկն ՚ի Տաճարն Սողոմոնեան, որ ըն-
կալաւ զնա ՚ի գիրկս իւր, և աղերսէր ՚ի Նմա-
նէ արձակիլ ՚ի խաղաղութիւն. Ղուկ. Բ. 28:

Գոն յաջմէ և յահեկէ ճանապարհին հնա-
գոյն աշտարակք աւերակ. զորոց ասեն ոմանք՝
լինել հնձան. և ոմանք՝ տեղի խորանաց երից
մոգուցն, և այլ ոմանք՝ զայլ ինչ. ՚ի մէջ ճանա-
պարհի իբր տասն րոպէիւ մերձ սուրբ Եղիայի
վանուցն՝ գոյ մեծ ջրհոր մի. զորմէ ասի աւան-
դութեամբ՝ թէ անտի մինչ ցայսվայր երևե-
ցաւ մոգուց, և աստ անյայտ եղեալ՝ ծածկեցաւ
՚յաչաց նոցա: զոր Արաբացիք կոչեն պիր ըլ Նճմ,
այսինքն հոր աստեղն. յաջմէ նորին արտաքոյ
ճանապարհին հեռի իբր քարընկէց մի՝ գոյ ա-
ւերակ եկեղեցի մի, յանուն Ամբակումայ մար-
գարէին, և է տեղի վանուց, ըստ պատմագը-
րութեանց Լատինաց: Գրէ Մարինոս՝ թէ ե-
րեք մղոնաւ հեռի յԵրուսաղէմէ, մերձ վա-
նուցն սրբոյն Եղիայի գոյր բևեկնի ծառն՝ ընդ
որով նստաւ Տէրն մեր հանդերձ Մարեմաւ
մարբն և Յովսեփաւ. բայց յամի Տեառն 1619,
այրեցաւ բևեկնին ՚ի ձեռն հողագործ Արա-
բացւոց:



## Յաղագս սուրբ Եղիայի վանուցն ։

Ի ձախմէ Ճանապարհին է վանք Եղիայի մարգարէին . ուր եկն մարգարէն , յորժամ փախչէր 'ի ձեռաց Յեզաբելայ . որպէս գրի , Գ . Թագ . ԺԹ . 5 . 8 . " Եւ նստաւ ընդ բեւեկնեաւ ... և 'ի քուն եմուտ , և ննջեաց ընդ տընկովն ։ Սորա եկեղեցւոյ երկայնութիւնն է 92 ոտնաչափ , և լայնութիւնն 51 .

Սա էր յառաջագոյն ազգին Վրաց . և է այժմ 'ի ձեռս Յունաց . աստ ննջեաց մարգարէն , որոյ տեղին ցուցանեն յեկեղեցւոջ 'ի հիւսիսային յորմն , որ է 'ի ձև գերեզմանի , յորում գոն բազում մեծամեծ սենեակք . և շուրջ նովաւ բազում ձիթենիք և այգիք . արտաքոյ վանուց 'ի վերայ Ճանապարհի գոյ ջրոյ ջեղիլ մի , յորմէ երթևեկք ըմպեն . և յաջմէ պողոտային է ձիթենի մի , և 'ի ներքոյ նորին վէմ մի հաւասար գետնոյն փոսորակ իբր մարդաչափ , և ումանք ասեն՝ թէ աստ ննջեաց մարգարէն ։



## Վասն աշտարակին Յակոբայ՝ և գերեզմանին Ռաքելայ ։

Իբր կէս ժամու հեռի 'ի սուրբ Եղիայի վանուցն , 'ի ձախմէ Ճանապարհին գոյ աւերակ մի , որ է Աշտարակն , ուր էջ Յակոբ նահապետն մինչ գայր 'ի Միջագետաց ։ Եւ 'ի ձախմէ է գերեզման Ռաքելայ , զի յերկունս գոլով

Ռաքէլ՝ ուր ծնաւ զԲենիամին. մեռաւ և թաղեցաւ անդ. և կանգնեաց Յակոբ արձան 'ի վերայ շիրմի նորա: «Այլ եղև իբրև մերձեցաւ 'ի Քաբրաթա երկիր, մտանել յԵփրաթա, ծընաւ Ռաքէլ... մեռաւ Ռաքէլ և թաղեցաւ 'ի ճանապարհին Եփրաթայ, այն խակ է Բեթղեհէմ. և կանգնեաց Յակոբ արձան 'ի վերայ շիրմի նորա, այն է արձան շիրմի Ռաքելայ մինչև ցայսօր դ. Ծննդ. ԼԵ. 16. 20:

## Յաղագս վիմին Քրիստոսի:

Յելանելն 'ի վանուցն սուրբ Եղիայի, յաջմէ ճանապարհն՝ որ գնայ 'ի Քեբրոն. այն է հայր Աբրահամ, արտաքոյ ճանապարհին 'ի ձախմէ, իբր քարընկեց մի առ արևմուտս, գտցի վէմ մի, որոյ մէջն փորեալ է փոս, և ձևացեալ իբր օրօրոց. զորմէ ասեն՝ թէ 'ի կոտորիլն մանկանց, առեալ Մարիամ և Յովսէփ զմանուկն Յիսուս՝ կամէին փախչիլ յԵգիպտոս, հասին զինուորք նոցա առ 'ի սպանանել զմանուկն, անդ մտեալ թաքեան, և անտես եղին յաչաց նոցա:

Այլ լուր ոմանց՝ թէ կին ունէր զմանուկն իւր պահեալ անդ, և մինչ աղերսանօք աղաչէր զԱստուած վասն մանկանն, և յաւաքել լինէր, ետես զհոյլս մանկանց կոտորելոյն իբրև զերամս աղաւնեաց թռուցեալք յերկինս, յայն ժամ 'ի ——— եկեալ զգուշութեն մայրական, ելն

ու պահէրձան ։ և մատնեաց զմանուկն իւր նա- ցա․ զոր 'ի խողխողելն անողորմ դահճացն ։ կատարիչն տեսանէր զհոգի մանկանն իւր լու- սաւորիլ աղաւնի թռուցեալ յերկինս ։ Տե՛ս 'ի Յայսմաւուրս ․ Մայիսի պատմեալ ։



Վան․ Պէրճայլ գեղջն ։

Հանդէպ գերեզմանի Թովքերայ՝ հեռի 'ի նմանէ իբր տասն և հինգ քայլ, է գիւղն Պէր- ճայլ, որոյ բնակիչքն են Յոյնք ․ զորմէ ասեն՝ գոլ առուն Եփրաթա ․ և ոմանք թէ՝ է առուն Աբի- աթարայ քահանային, ուր եկեր Դաւիթ զհացն առաջաւորութեան, Ա․ Թագ․ ԻԱ․ 6 ։ Այս անդ փոքրիկ եկեղեցի մի յանուն սրբոյն Նիկողայոսի, որոյ երկայնութիւնն է 32 ոտնաչափ, և լայնու- թիւնն 21 ։

Յայսմ գիւղիս շինեցին Լատինք 12 ամաւ յառաջ ժամատուն մի, բայց յամի 1854, յամ- սեանն փետրվարի յափշտակեցին Յոյնք, և վա- նեցին անտի զԼատինս ։

Այս յամսեանն Օգոստոսի, հրովարտակաւ Սուլթան Մէճիտ արքային սկսան Լատինք հիմ- նարկել և շինել անդ հոյակապ վանք նորոգ 'ի հիմանց յարևելս կոյս հնոյ տեղւոյն․ որոյ եր- կայնութիւնն է 174 կանգուն, և լայնութիւնն 124․ շրջապատ պարիսպն չորեքին դրամբք, որոց երկուքն յարևելս, մին առ հիւսիս, և միւսն

առ Հարաւ ։ Սրբոյ եկեղեցւոյ երկայնութիւնն է 95 ոտնաչափ, և լայնութիւնն 35 ։ և սիւնք 50 մեծ և փոքր ։ և ՚ի մէջի ունին յատուկ վարժարան և Ջրհոր հինգ ։ քսան և չորս աշակերտս, տասն և չորս կարգաւոր, որոյ բոլոր միաբանք են յիսուն ։



### Յաղագս Ջրհորոյն Դաւթի ։

Ի գերեզմանէն Ռաքելայ մինչ ՚ի Ջրհորն Դաւթի է իբր տասն րոպէ ՚ի գլուխ լերինն ՚ի բարձրաւանդակ տեղւոջ, ուստի երեւի քաղաքըն Բեթղեհէմ. յորոյ ջրոյն ցանկայր Դաւիթ ըմպել, որպէս գրի. Բ. Թագ. ԻԳ. 15. 16. Այլ ցանկացաւ Դաւիթ և ասէ, ո՞ արբուսցանէր ինձ ջուր ՚ի Ջրհորոյն Բեթղեհեմի, որ առ դրանն է ։ որպէս ասի և յոտանաւորս. Կամ-եալ զՋուր մարգարէին, եհեղ առ ոտս իւր Արարչին. հորն օրինակ սրբոյ Կուսին, Ջուրն հանգոյն մերոյ Փրկչին, որում ցանկայր՝ երանելին, հոգւով ըմպել՝ ջուր կենդանին ։

## ՄԻԵ

### Յաղագս քաղաքին Դաւթի, որ է Բեթղեհեմ։

Բեթղեհէմ ըստ վարդապետաց՝ Թարգմանի տուն հացի. յորում տուաւ մեզ հացն կենաց իջեալն յերկնից. Յովհ. Զ. ԾԱ. «Ես եմ հացն կենդանի որ յերկնից իջեալ»։

Եւ 'ի լեզու Ասորւոց՝ նշանակէ տուն մսոյ, զի անդ ծնեալ բանն Աստուած, եառ մեզ զմարմին եւ զարիւն իւր 'ի կերակուր եւ ըմպելի հոգւոց. «Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է. եւ արիւն իմ ճշմարիտ ըմպելի է»։ Յովհ. Զ. ԾԵ։

Թէպէտ քաղաքս այս ըստ նիւթոյն եւ ըստ քանակութեան կրտսեր եւ փոքր համարի, բայց ըստ զօրութեան մեծագոյն քան զամենայն քաղաքս՝ որ յերկիր. քանզի Իշխան իշխանաց՝ եւ Տէր տէրանց եղ տուն, եւ հզօր քան զամենայն իշխանս Յուդայ՝ որք եղեն 'ի սմանէ. «Եւ դու Բեթղեհէմ տուն Եփրաթայ՝ սակաւաւոր իցես լինել 'ի հազարաւորս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իսրայէլի, եւ ելք նորա 'ի սկզբանէ աւուրց յաւիտենից»։ Միքիա. Ե. Բ։

«Եւ դու Բեթղեհէմ երկիր Յուդայ, ոչ ինչ կրտսեր ես յիշխանս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ իշխան, որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻսրայէլ»։ Մատթ. Բ. Զ։

Բնակիչք Բեթղեհէմի՝ են քրիստոնեայք Յոյնք եւ Լատինք իբր հարիւր տուն. եւ այլ Մելք քսան տուն. քանի մի տուն Ղփտի. եւ քառասուն եւ հինգ տուն Տաճիկք, եւ 'ի նմա են հնգետասան թաղք, որոց իշխանք կամ ռէիս են հնգետա-

սան, որք 'ի լեզուս Արաբացւոց կոչին ջէէֆ. յորոց մին է յազգէ մերմէ, և յարգոյ յայս ամենեցուն, երեքտասանքն 'ի Յունաց՝ և 'ի Լատինաց, և մին 'ի Տաճկաց:

Ներքս քաղաքիս է հռչակաւոր և մեծակառոյց եկեղեցին սրբոյ ծննդեանն Քրիստոսի, գրեթէ կայ 'ի մէջ յառկայցեալ երից վանուցն՝ Մերոց, Յունաց, և Լատինաց:

Նախ գնայ 'ի մեծ արտաքին հրապարակն, որոյ 'ի հիւսիսակողմն է վանքն մեր. որոյ յանկեանն է երկաթի դուռն ախոռին, 'ի հարաւակողմն է գերեզմանատուն Յունաց, և 'ի յարեւելս է հրաշակերտ Եկեղեցին սրբոյ ծննդեան: Ի մէջ հրապարակին գոն երկու մեծագոյն ջըրհոր, որոց մին ունի կրկին բերան, և միւսն մի:

Յարևելս կայ է երկաթեայ փոքր դուռն մի, ընդ որ մտանէ 'ի սուրբ ծնունդն: Առաջի դրանս է փոքր գաւիթ, որոյ երեքին կողմունքն են քարեայ բազմոց, կամ սէկի՝ յորս նստին: Ի մտանելն 'ի ներքս՝ է փոքր գաւիթ մի, որոյ երկայնութիւն է 32 ոտնաչափ, և լայնութիւնն 21:

Յաջմէ առ հարաւ է երկաթի դուռն վանուց մերոց, յորոյ վերայ գոյ փոքր լուսամուտ մի սենեկին մերոյ, և կանթեղ մի առ կախեալ 'ի վերայ դրան. 'ի ձախմէ առ հիւսիս է դուռըն մի, որ կոչի Հին ջաղաց՝ որ 'ի ձեռս Մեր էր յառաջ, զոր յափշտակեցին Յոյնք. և առ արեւելս է փայտաշէն մեծ դուռն, յորոյ ներքին սեմոց և բարաւորաց վերայ գրեալ կայ յիշատակարան. "Ի Թիւ Հայոց ՌՃՁ. կազմեցաւ

դուռնս սուրբ Աստուածածնի , ձեռամբ Տէր Աբրահամի՝ և Տէր Առաքելոյ , 'ի թագաւորութեան Հեթմոյ կոստանդեի ո. Տես 'ի Հանձն պափմու—ըխան , յերես 320 . զորս Յոյնք օր ըստ օրէ եղծանեն ։

Ի մտանելն ընդ փայտեայ դուռն է գաւիթ մեծի եկեղեցւոյն , յորում գոն քառասուն սիւնք . որոյ երկայնութիւնն է 103 ոտնաչափ , և լայնութիւնն 91 ։ Ընդ հարաւ է դուռն Յունաց վանուց , և յաջմէ դրանն է մեծ. բոլորակ աւազան . և առ Հիւսիս է դուռն վանուց Լատինացւոց , և առ արևելս ունի զերիս դրունս եկեղեցւոյն . որոյ միջին Աւագ դուռն , և 'ի նորին ձախմէ դուռն յատուկ Յունաց է , ընդ որս ոչ մտանեմք և ոչ ելանեմք . և յաջմէ եղեալ դուռն Մեր է , և ա՛ն ևս ընկերութեամբ ընդ Յոյնս . որոյ է կրկին բանալի , որոց մին առ մեզ է , և միւսն առ Յոյնս . 'ի վերայ դրանս է փոքր պատկեր մի և կանթեղ մի Մեր , և Յունաց միայն փոքր պատկեր մի . յաջմէ դրանս մինչ 'ի սիւնն Այրին և Աւագ խորանին գոն կրկին շարանք , մին Մեր և միւսն Յունաց , բայց 'ի մեր շարանի եղեալ կանթեղսն ետուն բռնութեամբ բառնալ , մինչ ցայս վայր չտան թոյլ կախել ըզկանթեղս . նոյնպէս և շարան մի ևս ունիմք 'ի սուրբ Այրի սիւնէն մերմէ մինչ 'ի մեր Աւագ խորանի սիւն , զնորին կանթեղսն ևս ետուն բռնութեամբ բառնալ , այս կրկին շարանք մեր միայն մերկ կախեալ 'ի դրանէս ուղղակի մինչ 'ի խորանն Թլփատութե . և միւս Աւագ խորանն բոլոր շրջա-

պատն Մեր է. մեք աւել ածեմք և սրբեմք, և ունիմք կանթեղ մի առաջի Թլփատութեան խաջանին. 'ի ձախմէ Նորին Հօր և պահարան մեծ վասն զգեստուց մերոց. և ունի խորանս՝ և յասամուտ-յետուստ խորանիս, և լուսամուտ մի առ հիւսիս, և յանկիւնէն մինչ 'ի յանկիւնն՝ առ արևելս է լուսամուտ մի ևս. և պատկեր մեծ Վերափոխման. առաջի Նորա կանթեղ մի և մամակալ ջահ մի ևս միով կանթեղաւ. վեց կանթեղ 'ի գլուխ աստիճանաց սուրբ Այրին, և երկոտասան կանթեղք յաջմէ և յահեկէ սեանն, և պատկեր մի 'ի վերայ սեանն, և աշտանակ առաջի Նորա. կրկին կանթեղք առաջի խորանին Մերոյ, մոմակալ ջահ մի ևս միով կանթեղաւ. և կրկին կանթեղ ևս 'ի ձախակողմեան դրան: վեց կանթեղ ևս առաջի շրջապատ պատկերաց. 'ի ձախակողմն մինչ առ Ամպիոն մեր. և հանդէպ Աւագ սեղանին մերոյ է դուռն մի անուանեալ Լատինաց. ընդ որ գան 'ի յԱյրն և գնան. բայց 'ի գրանէն մինչ 'ի ճանապարհն՝ որ գնայ յԱյրն, ոչ ունեմք փոխանակ կամ գործ. ուստի զգուշանալ պարտիմք, զի մի՛ կագ և կռիւ լինիցի. զի 'ի բազում ամս եղև կռիւ, յորմէ բազում վնաս եղև. և ոչ մի ինչ օգուտ մեզ, և Նոցա. իսկ չորս սիւն 'ի մէջ որմոյն են և չորքն 'ի մէջ եկեղեցւոյ. երկուքն՝ 'ի յետուստ կողմանէ Աւագ խորանին և Այրին, որք լինին յիսուն սիւնք.



## Յաղագս սուրբ Այրին, ուր ծնաւ Տէրն մեր։

Սուրբ Այրն ունի զերկուս դրունս. 'ի ձախմէ Աւագ խորանին դուռն՝ որ առ հիւսիս, եւ երեքտասան աստիճանաւ իջանէ յԱյրն. յաջմէ խորանին որ առ հարաւ, որ է Մեր դուռն, եւ իջանէ յԱյրն տասնեւվեց աստիճանաւ. 'ի ճակատ դրանս ունիմք փոքր պատկեր մի եւ կանթեղ մի, նոյնպէս եւ Յունաց. ըստ որում ընկերութեամբ է. 'ի վերայ սրբոյ սեղանոյն ծննդեան ունիմք վեց կանթեղս մշտավառ. նոյնպէս վեց Յունաց, եւ չորս Լատինաց, բոլորն տասն եւ վեց։ Իսկ 'ի շրջապատի փոքր պատկերքն են Յունաց. եւ կեդրոն սուրբ Տեղւոյն է բոլորակ վէմ, եւ արծաթապատ, որոյ շրջապատն եւ յատակն կճեայ քարամբք յարդարեալ. եւ 'ի վերայ նորա սեղան պատարագամատոյց, յորոյ վերայ անխափան յամենայն աւուր պատարագեմք. նախ՝ Յոյնք, եւ ապա Մեք. յաւուրս պատարագին Յունաց՝ նախ դնեմք զպատկեր խորանին, խաչ, Աւետարան, չորս աշտանակս. եւ յիշատակարանս արծաթապատ. զկնի սուրբ Պատարագին մերոյ 'ի բաց առնումք անտի զամենայն, եւ լուսարարն Յունաց փակէ զխորանն վանդակաւ. զի ոչ է սովորութիւն պատկերաց մնալ անդ, ոչ նոցա եւ ոչ մերն. 'ի ճակատ խորանին ունիմք զերիս փոքրիկ պատկերս. եւ 'ի չորս յաջմէ եւ յահեկէ մետաքսեան կանթեղս, նոյնչափ եւ Յունաց եւ Լատինաց գոն։

Իսկ 'ի մէջ Ծննդեան եւ Մսրոյ սուրբ Տեղեաց

չին մերոյ՝ եկն 'ի Տաճարն Սողոմոնեան, որ ընդ-կալաւ զնա 'ի գիրկս իւր, և աղերսէր 'ի Նմանէ արձակիլ 'ի խաղաղութիւն. Ղուկ. Բ. 28։

Գոն յաջմէ և յահեկէ ճանապարհին հնագոյն աշտարակք աւերակ. զորոց ասեն ոմանք՝ լինել հնձան. և ոմանք՝ տեղի խորանաց երից մոգուցն, և այլ ոմանք՝ այլ ինչ. 'ի մէջ ճանապարհի իբր տասն րոպէիւ մերձ սուրբ Եղիայի վանուցն՝ գոյ մեծ ջրհոր մի. զորմէ ասի աւանդութեամբ՝ թէ աստղն մինչ ցայսվայր երևեցաւ մոգուց, և աստ աներևոյթ եղեալ՝ ծածկեցաւ յաչաց նոցա։ զոր Արաբացիք կոչեն պիր ըլ նճմ, այսինքն հոր աստեղն. յաջմէ նորին առաջքոյ ճանապարհին հեռի իբր քարընկէց մի՝ գոյ աւերակ եկեղեցի մի, յանուն Ամբակումայ մարգարէին, և է տեղի վանուց, ըստ պատմագրութեանց Լատինաց։ Կրէ Մարինոս՝ թէ երեք մղոնաւ հեռի յԵրուսաղէմէ, մերձ վանուցն որբոյն Եղիայի գոյր բևեկնի ծառն՝ ընդ որով Նստաւ Տէրն մեր հանդերձ Մարեմաւ մարբն և Յովսեփաւ. բայց յամի Տեառն 1619, այրեցաւ բևեկնին 'ի ձեռն հողագործ Արաբացւոց։



## Յաղագս սուրբ Եղիայի վանուցն։

Ի ձախմէ ճանապարհին է վանք Եղիայի մարգարէին. ուր եկն մարգարէն, յորժամ փախչէր 'ի ձեռաց Յեզաբելայ. որպէս գրի, Գ. Թագ. ԺԹ. 5. 8. «Եւ ննջեաց ընդ բաեկնեաւ... և 'ի քուն եմուտ, և ննջեաց ընդ արեկաւն»։ Սորա եկեղեցւոյ երկայնութիւնն է 92 ոտնաչափ, և լայնութիւնն 51։

Սա էր յառաջագոյն ազգին Վրաց. և է այժմ 'ի ձեռս Յունաց. աստ ննջեաց մարգարէն, որոյ տեղին ցուցանեն յեկեղեցւոջ 'ի հիւսիսային յորմն, որ է 'ի ձև գերեզմանի, յորում գոն բազում մեծամեծ սենեակք. և շուրջ նովաւ բազում ձիթենիք և այգիք. արտաքոյ վանուց 'ի վերայ ճանապարհի գոյ ջրոյ ջեղուլ մի, յորմէ երթևեկք ըմպեն. և յաջմէ պողոտային է ձիթենի մի, և 'ի ներքոյ նորին վէմ մի հաւասար գետնոյն փոսորակ իբր մարդաչափ, և ոմանք ասեն՝ թէ աստ ննջեաց մարգարէն։

## Վասն աշտարակին Յակոբայ՝ և գերեզմանին Ռաքելայ։

Իբր կէս ժամու հեռի 'ի սուրբ Եղիայի վանուցն, 'ի ձախմէ ճանապարհին գոյ աւերակ մի, որ է Աշտարակն, ուր էջ Յակոբ նահապետն մինչ գայր 'ի Միջագետաց։ Եւ 'ի ձախմէ է գերեզման Ռաքելայ, զի յերկուսն գալով

եկեղեցւոյ նորա . որ եղև կատարումն շինութեանն 1848 ։

Յամի Տեառն 1845, 'ի սկիզբն Մարտի նըտաւ Յունաց Պատրիարքն Յերուսաղէմ, որ երկու հարիւր ամօք յառաջ մինչև ցայսօր Պատրիարքն նոցա նստէր 'ի Կոստանդնուպօլիս . Թէպէտ այժմ ևս է 'ի Կոստանդնուպօլիս ։

Յամի Տեառն 1846, 'ի եօթն Մայիսի եղև վախճան Զաքարիա Պատրիարքի ։

Յամի Տեառն 1847, 'ի տասներեք Փետրվարի յաջորդեաց նմա Կիրակոս Պատրիարք Երուսաղէմայ, յաւուրս սորա շինեցաւ 'ի հարաւակողմն վանուցս, 'ի վերոյիշեալ Լիմոնի պարտէզն նորոգ հոյակապ թաղ մի, հիմնարկեալն 'ի Զաքարիա Պատրիարքէ . որոյ երկայնութիւն է 155 ոտնաչափ, և լայնութիւն 75 . և ունի քառասունևութն սենեակս . և 'ի մէջն ընդարձակ գաւիթ, և 'ի սրահին գեղեցիկ պարտէզ, ունի և եօթն ջրհորս . և առաջի սենեկացն երկաթեայ ճաղիւ ամրացեալ . որոյ Աւագ դուռն մերձ 'ի ջրհորն, որ կոչի Քիւրքճի բաղչէ, և փոքր դուռն մի՝ որ ելանէ ընդ հարաւ ։

Նաև շինեցան քանի մի հոյակապ սենեակք 'ի յետոյս տաճարի սուրբ Յակոբայ եկեղեցւոյն առ աւելեալ կայս՝ 'ի վերայ դրանն աղօրւոյն . առ որ ելանէ տասն և վեց աստիճանաւ, որոց լուսամուտքն երկուքն հային յարևմուտս դէպ 'ի սուրբ Տաճարն . չորքն՝ 'ի վերայ հրապարակին մեծի, և միւսքն 'ի հիւսիս 'ի վերայ տանեաց աղօրւոյն՝ և յարևելս ։

Նա և ոսկեզօծ գեղեցկացեալ ծաղկեցան և պայծառացան, խաչկալք սուրբ Յակոբայ եկեղեցւոյն, և գմբէթն սուրբ Գլխադրին. կաթուղիկէք սուրբ Խաչին և Ամբիոնին, և այլ ամենայն խոյակք և բաւիղք շրջապատօք սուրբ Պատկերաց. վերնատունն խորանաց սուրբ Էջմիածնի, սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Մինասայ խաչկալք. նաև սուրբ Հրեշտակապետի և սրբոյ Ծննդեան՝ որ 'ի Բեթղեհէմ, ներքին եկեղեցւոյ խաչկալք ոսկեզօծ գեղեցկացան։

Յամի Տեառն 1847, հիմնարկեալ շինեցաւ եկեղեցի հռոմէադաւան Յունաց՝ 'ի հիւսիսակողմն պատրիարքարանին Լատինաց. որոց առաջին Պատրիարք Մաքսիմոս եկն յԵրուսաղէմ և կացեալ ամիս ինչ, և ելեալ գնաց 'ի Վերիտոն՝ որ է Պէրութ, և անտի 'ի Դամասկոս։

Յամի Տեառն 1848, 'ի Յունվար հինգ՝ նըստաւ Լատինացւոց Պատրիարք յԵրուսաղէմ, որ և սկիզբն եղև Պատրիարքութեան նոցա յԵրուսաղէմ, զի 'ի բնէ անտի ոչ էր։

Յամի տեառն 1848, 'ի տասներկու Ապրիլի յերկրորդում աւուր սուրբ Զատկին, յետ ելանելոյ Եկեղեցւոյն, 'ի յերրորդ ժամու աւուրնջեան յեղակարծ իմն ինքնին լուցան և վառեցան կանթեղք և լապտերք սուրբ Յակոբայ եկեղեցւոյն, յորում էին բազումք Ուխտաւորաց; և երևելի ականաւորք Աստուածատէր Իշխանաց, որք ականատեսք եղեն, և մինչ ձայն աւետեաց հնչեցին յականջս եկաց և բնակաց, և ուղևորաց եւս, ուստի դարձան յետս յԵրու-

տաղէմ. և եկեալ խռնեցան յայժ յամենայն ազ-
գաց քրիստոնէից, այլ և 'ի հեթանոսաց և 'ի
հրէից. յորոց ոմանք 'ի նոցանէ իբրև տեսին
զզարմանչելիսն՝ հիացեալ գոհութեամբ փառս
մատուցանէին տուողին բարեաց, և ոմանք 'ի
նոցանէ աղաչեալ յանձնիւս լեալ բերանացոյց
մնացին, այսպէս տևեաց լոյսն մինչև զերիս ժամս.

Յամի Տեառն 1850, 'ի քսան և չորս Մայիսի
յերկրորդ ժամու գիշերոյ՝ յանկարծ իմն եղև
վախճան Կիրակոս Սրբազան Պատրիարքի. որում
ընտրեցաւ յաջորդ 'ի Պօլիս 'ի չորս Յուլիսի,
Զմիւռնացի Յովհաննէս Սրբազան Արքեպիսկո-
պոսն, ըստ խնդրոյ հոգեգումար Միաբանութե
Սրբոյ Աթոռոյս, և ըստ միակամ և միահամուռ
ընտրութե Ազգային ժողովոյն բաղկացելոյ 'ի հո-
գևորական և աշխարհական երևելեաց 'ի Մայ-
րաքաղաքն Կոստանդնուպօլիս, որ և նորին Սր-
բազնութիւնն 'ի բազում ամաց հետէ վարէր
զպաշտօն փոխանորդութեան սրբոյ Երուսաղէ-
մի 'ի Կոստանդնուպօլիս. առ որ հրաւիրակ ա-
ռաքեցան յԱթոռոյս՝ երեք վարդապետք, Մատ-
թէոս Կեսարացին, Ղուկաս Բաղիշեցին, և Յա-
կոբոս Կելիպօլցին, և կրկին Սարկաւագունք.
ընդ որս նորընտիր Սրբազան Պատրիարքն եկեալ
'ի Պօլսոյ՝ եկն եհաս յԵրուսաղէմ յիններորդ
աւուր Նոյեմբերի. և 'ի տօնի սրբոց Հրեշտա-
կապետացն նստաւ յԱթոռ Պատրիարքութե.
որ այժմ խնամօքն Աստուծոյ վարէ զբարձրա-
գոյն իշխանութիւնն ամենայն բարեկարգու-
թեամբ, որում Տէր տացէ զօրութիւն և կա-

վերայ բուրաստանին, և ունի չորս սենեակս առ հիւսիս և առ հարաւ. և առ արևելս ունի Աւագ միջնադուռն, որոյ առաջի փոքր սրահ և մեծ լուսամուտ մի, և յաջմէ նորին մեծագոյն յատուկ սենեակ մի. հանդէպ միջնադրանն չորեքին աստիճանաւ 'ի վայր՝ են անդ կրկին սենեակ և սպասաւորաց, որոց յանդիման է յատուկ գրատուն. և առ հիւսիս է Աւագ դուռն տրապեզին՝ ընդ որ ելանէ 'ի սուրբ Մինասայ. Թաղն. զորմէ գրեցաւ 'ի վեր.

Եւ շինեցաւ նորոգ Թաղ մի 'ի հիմանց՝ հոյակապ և գեղեցկադիր 'ի հարաւակողմն վանուցս իբր քառասուն և վեց սենեկօք. որոյ դուռն հայի 'ի հիւսիս, և միանէ ընդ հարաւ հանդէպ պարտիզին, յաջմէ ճանապարհին՝ որ գնայ 'ի վանս սուրբ Հրեշտակապետին, որոյ երկայնութիւնն է 185 ոտնաչափ, և լայնութիւն 100. որոյ յիշատակարանն եդեալ կայ 'ի ճակատ դրանն այսպէս.

« Ողորմութեամբն Աստուծոյ աւարտեցաւ հիմնակառոյց գեղեցկաշէն Զմռը Թաղս Ագատէր Տ. Տ. Յովհաննու Սրբազան Պատրիարքի Զմիւռնացւոյ. աջակցութեամբ խորհրդական սուրբ Եղբարց 'ի պարծանս լրդութեան Ազգիս. 1853, 'ի վերջ Մայիսի ».

Յամի Տեառն 1857, յաւուրս սոյն բարեյիշատակ Սրբազան Պատրիարքիս եղև հիմնարկութիւն նորակերտ Ուսումնարանին՝ որ կառուցաւ առ արևելս Զմռը Թաղին՝, որ ունի չորս սենեակս՝ իբր դասարան, երկուքն առ հիւսիս

և երկուքն առ հարաւ. և երկայնութիւն իւ-
րաքանչիւրոցն է եօթն կանգուն՝ և լայնութիւն
վեց կանգուն և վեց մատն. և 'ի միջի ունի սը-
րահ՝ իբր հանգստարան ուսանողաց. որոյ եր-
կայնութիւնն է քսանևհինգ կանգուն և կէս.
և լայնութիւնն ինն և կէս կանգուն. որոյ ա-
ւագ դուռն հայի ընդ արևմուտս՝ 'ի Չամլը Թա-
ղըն, և զօրութեամբ Տեառն մերձ է կատարու-
մըն շինութեանն յետ քանի ամաց, զոր Տէր
յաջողեսցէ 'ի պարծանս սրբոյ Աթոռոյս և 'ի
պայծառութիւն լրութեան ազգիս Հայոց:

Նոյն յամի Տեառն 1857, և 'ի փետրվարի 13,
երջանկափառ Տ. Տ. Ներսէս Ե. Սրբազան Կա-
թուղիկոսն սրբոյ Էջմիածնի փոխեցաւ յան-
ցաւոր կենցաղոյս աստի յանանց կեանսն երա-
նութեան իբր իննսուն և չորս ամաց:

Նոյն 'ի սմին ամի՝ եղև սկզբնաւորութիւն
նստելոյ 'ի սուրբ Երուսաղէմ արքեպիսկոպոսի
միոյ 'ի Ռուսաց ազգէն:

Նոյն յայսմ ամի 1858, և 'ի Սեպտեմբերի մէկ,
համակամ հաճութեամբ բոլոր լրութեան ազ-
գիս Հայոց եկեղեցականաց և աշխարհականաց,
որ յԱսիա և յԵւրոպիա ընդ իշխանութեամբ
կրկին Մեծազօր տէրութեանց Օսմանեանց և
Ռուսաց, ընտրեցաւ 'ի նոյն Սրբազնագոյն կա-
չուածս կաթողիկոսութեան և մեծի քահանայա-
պետութեան լուսաւորչերամ ժողովրդեանն ա-
մենայն Հայոց՝ Կոստանդնուպօլսեցի Ամենապա-
տիւ և Երջանկափառ Տ. Մատթէոս Առաքելա-
գործ Սրբազան Արքեպիսկոպոսն, զոր Տէր 'ի պար-

ծանս ազգիս բազմամեայ կենօք պարգեւեսցէ ։

Եւ յայսմ ամի 1858, սկիզբն եղեւ 'ի սուրբ Երուսաղէմի Նստելոյ Հիւպատոսի մեծի տէրութեանն Ինքնակալին Ռուսաց, որպէս գՀիւպատոսս այլ տէրութեանց ։



# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՐԱՒԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Աստի մինչ ՚ի ԲԵԹՂԵՀԷՄ երկու ժամ է ։

Ելեալ ՚ի դրանէ Դաւթի, որ ըստ Արաբացւոց կոչի պապըլ խալիլ ։ Յաջմէ կողմանէ առ պարսպաւ գնայ իջանէ ՚ի ձորն Հսկայից ըստ ոմանց մեկնչաց. յոր եկին լրտեսք՝ և տեսին անդ զՀսկայս. « Տեսաք անդ Հսկայս, և էաք յաչս նոցա որպէս մարախ »․ Թուոց. ԺԳ. 34 ։ Անցանելով ընդ կամուրջն, և ընդ ցամաք աղբիւրն. ելանէ խուն ինչ զառ ՚ի վեր ՚ի դաշտն. ՚ի ձախմէ ճանապարհին կայ աւերակ մի՝ զոր կոչեմք Յուդայի գիւղ, յորում է մզկիթ մի, այսէ գիւղն չար խորհրդոյ զոր մեք ասեմք Յուդայի գեղ, և յԱրաբացւոց կոչի փէր ապու Թօռ. քանզի Կայիափայ քահանայապետ ագարակ ժողովք քահանայից և իշխանաց Հրէից, ուր մարգարէաբար վճռեցաւ վասն Քի մեռանել. « Լաւ է մեզ, զի այր մի մեռանիցի ՚ի վերայ ժողովրդեանս, և մի ամենայն ազգս կորիցէ »․ Յովհ. ԺԱ. 50 ։ Զայս գիւղ գնեցին Յոյնք 1857 ։

Հանդէպ սորին է Նորաշէն քանի մի տուն Յունաց. յարևմտակողմն սորին է Նորակերտ պալատ Հիւպատոսին Անգղիացւոց ։ Աստի իբր քարընկեց մի՝ է տուն կամ աշտարակ Սիմէոնի ծերունւոյն, որ ՚ի քառասնօրեայ գալստեան Փրկ-

չին մերոյ՝ եկն 'ի Տաճարն Սողոմոնեան, որ ըն-
կալաւ զնա 'ի գիրկս իւր, և աղերսէր 'ի Նմա-
նէ մրձակիլ 'ի խաղաղութիւն. Ղուկ. Բ. 28:

Դոն յաջմէ և յահեկէ ճանապարհին հնա-
գոյն աշտարակք աւերակ. զորոց ասեն ոմանք՝
լինել հնձան. և ոմանք՝ տեղի խորանաց երից
մոգուցն, և այլ ոմանք՝ այլ ինչ. 'ի մէջ ճանա-
պարհի իբր տասն քայլիւ մերձ սուրբ Եղիայի
վանուցն՝ գոյ մեծ ջրհոր մի. զորմէ ասի աւան-
դութեամբ՝ թէ աստղն մինչ ցայս վայր երևե-
ցաւ մոգուց, և ասա անյայտ եղեալ՝ ծածկեցաւ
'յաչաց նոցա: զոր Արաբացիք կոչեն պիր ըլ Նճմ,
այսինքն հոր աստեղն. յաջմէ նորին արտաքոյ
ճանապարհին հեռի իբր քարընկէց մի՝ գոյ ա-
ւերակ եկեղեցի մի, յանուն Ամբակումայ մար-
գարէին, և է տեղի վանուց, ըստ պատմագը-
րութեանց Լատինաց: Դրէ Մարինոս՝ թէ ե-
րեք մղոնաւ հեռի յԵրուսաղէմէ, մերձ վա-
նուցն սրբոյն Եղիայի գոյր բևեկնի ծառն՝ ընդ
որով նստաւ Տէրն մեր հանդերձ Մարեմաւ
մարբն և Յովսեփաւ. բայց յամի Տեառն 1619,
այրեցաւ բևեկնին 'ի ձեռն հողագործ Արա-
բացւոց:



## Յաղագս սուրբ Եղիայի վանուցն ։

Ի ձախմէ ճանապարհին է վանք Եղիայի մարգարէին. ուր եկն մարգարէն, յորժամ փախչէր 'ի ձեռաց Յեզաբելայ. որպէս գրի, Գ. Թագ. ԺԹ. 5. 8. « Եւ նստաւ ընդ բեւեկնեաւ... և 'ի քուն եմուտ, և ննջեաց ընդ տընկովն »։ Որոյ եկեղեցւոյ երկայնութիւնն է 92 ոտնաչափ, և լայնութիւնն 51 ։

Սա էր յառաջագոյն ազգին Վրաց. և է այժմ 'ի ձեռս Յունաց. աստ ննջեաց մարգարէն, որոյ տեղին ցուցանեն յեկեղեցւոջ 'ի հիւսիսային յորմն, որ է 'ի ձև գերեզմանի, յորում գոն բազում մեծամեծ սեննեակք. և շուրջ նովաւ բազում ձիթենիք և այգիք. արտաքոյ վանուց 'ի վերայ ճանապարհի գոյ ջրոյ ջեղուլ մի, յորմէ երթևեկք ըմպեն. և յաջմէ պողոտային է ձիթենի մի, և 'ի ներքոյ նորին վէմ մի հաւասար գետնոյն փոսորակ իբր մարդաչափ, և ոմանք ասեն՝ թէ աստ ննջեաց մարգարէն ։



## Վասն աշտարակին Յակոբայ՝ և գերեզմանին Ռաքելայ ։

Իբր կէս ժամու հեռի 'ի սուրբ Եղիայի վանուցն, 'ի ձախմէ ճանապարհին գոյ աւերակ մի, որ է Աշտարակն, ուր էջ Յակոբ նահապետն մինչ գայր 'ի Միջագետաց ։ Եւ 'ի ձախմէ է գերեզման Ռաքելայ, զոր յերկուսն գոլով

Ռաքէլ՝ ուր ծնաւ զԲենիամին. մեռաւ և թա-ղեցաւ անդ. և կանգնեաց Յակոբ արձան ՚ի վերայ շիրմի նորա: « Այլ եղև իբրև մերձեցաւ ՚ի Քաբրաթա երկիր, մտանել յԵփրաթայ, ծը-նաւ Ռաքէլ... մեռաւ Ռաքէլ և թաղեցաւ ՚ի ճանապարհին Եփրաթայ, այն ինքն է Բեթղե-հեմ. և կանգնեաց Յակոբ արձան ՚ի վերայ շիր-մի նորա, այն է արձան շիրմի Ռաքելայ մինչև ցայսօր ». Ծննդ. ԼԵ. 16. 20:

## Յաղագս վիմին Քրիստոսի:

Յելանելն ՚ի վանուցն սուրբ Եղիայի, յաջ մէ ճանապարհն՝ որ գնայ ՚ի Քեբրոն. այն է Հայր Աբրահամ, արտաքոյ ճանապարհին ՚ի ձախ մէ, իբր քարընկէց մի առ արևմուտս, գոյ վէմ մի, որոյ մէջն փորեալ և փոս, և ձևացեալ իբր օրօրոց. զորմէ ասեն՝ թէ ՚ի կոտորելն մանկանց, առեալ Մարիամ և Յովսէփ զմանուկն Յիսուս՝ կամէին փախչել յԵգիպտոս, հասին զինուորք նոցա առ ՚ի սպանանել զմանուկն, անդ մտեալ թագեան, և անտես եղեն յաչաց նոցա:

Այլ ըստ ոմանց՝ թէ կին ոմն զմանուկն իւր պահեաց անդ, և մինչ աղերսանօք աղաչէր զԱստուած վասն մանկանն, և յուսաբեկ լինէր, տեսեալ զհոյլս մանկանց կոտորելոյն իբրև զե-րամս աղաւնեաց թռուցեալք յերկինս, յայն ժամ ՚ի բաց եղեալ զգութն մայրական, եկն

առ դահճիճն ։ և մատնեաց զմանուկն իւր նա- յել․․ զոր 'ի խաղխողելն անողորմ դահճացն ։ կատարիչն առաքանէր զհոգի մանկանն իւր լու- սաւորել աղաւնի թռուցեալ յերկինս ։ Տե՛ս 'ի Յայսմաւուրս ․ Մայիսի քսանեւմէկ ։



Վանք Պէլճալայ Գեղջ ։

Հանդէպ գերեզմանի Բուքելայ՝ հեռի 'ի նմանէ իբր տասնեհինգ րոպէ, է գիւղն Պէլ- ճալայ, որոյ բնակիչքն են Յոյնք ․ զորմէ ասեն՝ գոլ տուն Եփրոսթա ․ և ոմանք թէ՝ է տուն Աբի- ամթարայ քահանային, ուր եկեր Դաւիթ զհացն առաջաւորութեանն, Ա. Թագ. ԻԱ. 6 ։ Այս անդ փոքրիկ եկեղեցի մի յանուն սրբոյն Նիկողայոսի, որոյ երկայնութիւնն է 32 ոտնաչափ, և լայնու- թիւնն 21 ։

Յայսմ գիւղս շինեցին Լատինք 12 ամսոյ յառաջ ժամատուն մի, բայց յամի 1854, յամ- սեանն փետրուարի յափշտակեցին Յոյնք, և վա- նեցին անտի զԼատինս ։

Այս յամսեանն Օգոստոսի, հրովարտակաւ Սուլթան Մէճիտ արքային սկսան Լատինք հիմ- նարկել և շինել անդ հռչակաւոր վանք նորոգ 'ի հիմանց յարևելս կոյս հնոյ տեղւոյն ․ որոյ եր- կայնութիւնն է 174 կանգուն, և լայնութիւնն 124 ․ շրջապատ պարիսպն չորեքին դրամբք, որոց երկուքն յարևելս, մին առ հիւսիս, և միւսն

առ հարաւ ։ Որոյ եկեղեցւոյ երկայնութիւնն է 95 ոտնաչափ, և լայնութիւնն 35 ։ և ունենայ 50 մեծ և փոքր ․ և 'ի միջի ունին յատակ վարժարան և ջրհոր հինգ ․ քառն և չորս աշակերտ, տասն և չորս կարգաւոր, որոց բոլոր միաբանք են յիսուն ։



## Յաղագս Ջրհորոյն Դաւթի ։

Ի գերեզմանէն Բոսքելայ մինչ 'ի ջրհորն Դաւթի է իբր տասն րոպէ 'ի գլուխ բլրինն 'ի բարձրաւանդակ տեղւոջ, ուստի երևի քաղաքըն Բեթղեհէմ․ յորոյ ջրոյն ցանկայր Դաւիթ ըմպել, որպէս գրի․ Բ․ Թագ․ ԻԳ․ 15 ։ 16 ․ Ո՜վ ցանկացաւ Դաւիթ և ասէ, ո՞ արբուցանէր ինձ ջուր 'ի ջրհորոյն Բեթղեհէմի, որ առ դրանն է ․․ որպէս տեսի ։ և յատանաւորս ․ Առեալ զջուր մարգարէին, եհեղ առ ոտս իւր առբարչին․ Հորն օրինակ սրբոյ Կուսին․ ջուրն համգոյն՝ միոյ Փրկչին, որում ցանկայր՝ երանելին, հոգւով ըմպել՝ ջուր կենդանին ։

Յաղագս քաղաքին Դաւթի, որ է Բեթղեհեմ։

Բեթղեհեմ ըստ վարդապետաց՝ Թարգմանի տուն հացի. յորում տուաւ մեզ Հացն կենաց իջեալն յերկնից. Յովհ. Զ. ԾԱ. «Ես եմ հացն կենդանի որ յերկնից իջեալ»։

Եւ 'ի լեզու Արաբացւոց՝ Նշանակէ տուն մսոյ, զի անդ ծնեալ բանն Աստուած, եառ մեզ զմարմին և զարիւն իւր 'ի կերակուր և ըմպելի հոգւոց. «Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է. և արիւն իմ ճշմարիտ ըմպելի է»։ Յովհ. Զ. ԾԶ։

Թէպէտ քաղաքս այս ըստ նիւթոյն և ըստ քանակութեան կրտսեր և փոքր համարիւր, բայց ըստ զօրութեան մեծագոյն քան զամենայն քաղաքս՝ որ յերկրի. քանզի Իշխան իշխանաց՝ և Տէր տէրանց ել աստի, և հզօր քան զամենայն իշխանս Յուդայ՝ որք ելին 'ի սմանէ. «Եւ դու Բեթղեհեմ տուն Եփրաթայ՝ սակաւաւոր իցես լինել 'ի հազարաւորս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իսրայէլի, և ելք նորա 'ի սկզբանէ աւուրց յաւիտենից»։ Միքիա. Ե. Բ։

«Եւ դու Բեթղեհեմ երկիր Յուդայ. ոչ ինչ կրտսեր ես յիշխանս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ իշխան, որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻսրայէլ»։ Մատթ. Բ. Զ։

Բնակիչք Բեթղեհեմի՝ են քրիստոնեայք Յոյնք և Լատինք իբր հարիւր տուն. և այլ Ազգ քսան տուն. քանզի մի տուն Ղփտի. և քառասուն և հինգ տուն Տաճիկք, և 'ի նմա են հնգետասան Թաղք, որոց իշխանք կամ ռէյս են հնգետա-

սան, որք 'ի լեզուս Արաբացւոց կոչին ճէլ։ յորոց մին է յազգէ մերմէ, և յորդոյ յաչս ամենեցուն, երեքտասանքն 'ի Յունաց՝ և 'ի Լատինաց, և մին 'ի Տաճկաց։

Յեզեր քաղաքիս է հռչակաւոր և մեծակառոյց եկեղեցին սրբոյ ծննդեանն Քրիստոսի, գրեթէ կայ 'ի մէջ յանկացեալ երից վանուցն՝ Մերոց, Յունաց, և Լատինաց։

Նախ գնայ 'ի մեծ արտաքին հրապարակն, որոյ 'ի հիւսիսակողմն է վանքն մեր. որոյ յանկեանն է երկաթի դուռն արտաքին, 'ի հարաւակողմն է գերեզմանատուն Յունաց, և 'ի յարեւելս է հրաշակերտ Եկեղեցին սրբոյ ծննդեան։ Ի մէջ հրապարակին գոն երկու մեծագոյն ջըրհոր, որոց մին ունի կրկին բերան, և միւսն մի։

Յարևելս կոյս է երկաթեայ փոքր դուռն մի, ընդ որ մտանէ 'ի սուրբ ծնունդն։ Առաջի դրանս է փոքր գաւիթ, որոյ երեքին կողմունքն են քարեայ բազմոց, կամ սէքի՝ յորս նստին։ Ի մտանելն 'ի ներքս՝ է փոքր գաւիթ մի, որոյ երկայնութիւն է 32 ոտնաչափ, և լայնութիւնն 21։

Յաջմէ առ հարաւ է երկաթի դուռն Վանուց մերոց, յորոյ վերայ գոյ փոքր լուսամուտ մի սենեկին մերոյ, և կանթեղ մի առ կախեալ 'ի վերայ դրան. 'ի ձախմէ առ հիւսիս է դուռըն մի, որ կոչի Հին Ջաղաց՝ որ 'ի ձեռս Մեր էր յառաջ, զոր յափշտակեցին Յոյնք. և առ արեւելս է փայտաշէն մեծ դուռն, յորոյ ներքին սեմոց և բարաւորաց վերայ գրեալ կայ յիշատակարան. «Ի թիւ Հայոց՝ ՌՃՁ. կազմեցաւ

դուռնս սուրբ Աստուածածնի , ձեռամբ Տէր Աբրահամի՝ և Տէր Առաքելոյ , 'ի Թագաւորութեան Հեթմոյ կոստանդեի ». Տես 'ի Հանն. պափմոլբիան , յերես 320. զորս Յոյնք օր ըստ օրէ եղծանեն :

Ի մտանելն ընդ փայտեայ դուռն է գաւիթ մեծի Եկեղեցւոյն , յորում գոն քառասուն սիւնք . որոյ երկայնութիւնն է 103 ոտնաչափ , և լայնութիւնն 91 : Առ հարաւ է դուռն Յունաց վանուց , և յաջմէ դրանն է մեծ բոլորակ աւազան . և առ հիւսիս է դուռն վանուց Լատինացւոց , և առ արևելս ունի զերիս դրունս եկեղեցւոյն . որոյ միջի Աւագ դուռն , և 'ի նորին ձախմէ դուռն յատուկ Յունաց է , ընդ որս ոչ մտանեմք և ոչ ելանեմք . և յաջմէ եղեալ դուռն Մեր է , և ա՛ն ևս ընկերութեամբ ընդ Յոյնս . որոյ է կրկին բանալի , որոց մին առ մեզ է , և միւսն առ Յոյնս . 'ի վերայ դրանս է փոքր պատկեր մի և կանթեղ մի Մեր , և Յունաց միայն փոքր պատկեր մի . յաջմէ դրանս մինչ 'ի սիւնն Այրին և Աւագ խորանին գոն կրկին շարանք , մին Մեր և միւսն Յունաց , բայց 'ի մեր շարանի եղեալ կանթեղսն եասուն բռնութեամբ բառնալ , մինչ ցայս վայր չտան թոյլ կախել ըզկանթեղս . նոյնպէս և շարան մի ևս ունիմք 'ի սուրբ Այրի սիւնէն մերմէ մինչ 'ի մեր Աւագ խորանի որմն , զնորին կանթեղսն ևս եասուն բառնալ , այս կրկին շարանք մեր միայն մերկ կախեալ՝ 'ի դրանէս ուղղակի մինչ 'ի խորանն Թըլփատութե̃ . և միւս Աւագ խորանն բոլոր շրջա-

պատճառ Տէր է . մեք ունել անձեմք և սրբեմք , և ունիմք կանթեղ մի առաջի Թլփատութեան խա-չանին . 'ի ձախմէ նորին հոր և պահարան մեծ-վան զգեստուց մերոց . և ունի խորանն՝ և յու-սամուտ-յետուստ խորանիս , և լուսամուտ մի առ հիւսիս , և յանկիւնէն մինչ 'ի յանկիւնն՝ ա-պակեայ է լուսամուտ մի ևս . և պատկեր մեծ Վերափոխման . առաջի նորա կանթեղ մի և մո-մակալ ջահ մի ևս միով կանթեղիւ . վեց կան-թեղ 'ի գլուխ աստիճանաց սուրբ Այրին , և երկոտասան կանթեղք յաջմէ և յահեկէ սեանն , և պատկեր մի 'ի վերայ սեանն , և աշտանակ առաջի նորա . կրկին կանթեղք առաջի խորանին Տերոյ , մոմակալ ջահ մի ևս միով կանթեղիւ . և կրկին կանթեղ ևս 'ի ձախակողմեան դրան ; վեց կանթեղ ևս առաջի շրջապատ պատկերաց , 'ի ձախակողմն մինչ առ Ամպիոն մեր . և հանդէպ Աւագ սեղանին մերոյ է դուռն մի անուանեալ Լատինաց , ընդ որ գան 'ի յԱյրն և գնան . բայց 'ի գրանէն մինչ 'ի ճանապարհն՝ որ գնայ յԱյրն , ոչ ունեմք փոխանակ կամ գործ , ուստի զգուշանալ պարտիմք , զի մի կագ և կռիւ լինիցի . զի 'ի բազում ամս եղև կռիւ , յորմէ բազում վնաս եղև . և ոչ մի ինչ օգուտ մեզ , և նոցա . իսկ չորս սիւն 'ի մէջ որմոյն են և չորքն 'ի մէջ ե-կեղեցւոյ . երկուքն՝ 'ի յետուստ կողմանէ Աւագ խորանին և Այրին , որք լինին յիսուն սիւնք .



## Յաղագս սուրբ Այրին, ուր ծնաւ Տէրն մեր :

Սուրբ Այրն ունի զերկուս գրունս, 'ի ձախմէ Աւագ խորանին դուռն՝ որ առ հիւսիս, երկոտասան աստիճանաւ իջանէ յԱյրն. յաջմէ խորանին որ առ հարաւ, որ է Մեր դուռն, իջանէ յԱյրն տասնեւմէկ աստիճանաւ. 'ի ձախակ դրանս ունիմք փոքր պատկեր մի եւ կանթեղ մի, նոյնպէս եւ Յունաց. ըստ որում ընկերութեամբ է. 'ի վերայ որոց աւագութն ծննդեան ունիմք վեց կանթեղս միշտավառ. նոյնպէս վեց Յունաց, եւ չորս Լատինաց, բոլորն տասն եւ վեց : Իսկ 'ի շրջապատի փոքր պատկերքն են Յունաց. եւ կեդրոն սուրբ Տեղւոյն է բոլորակ փառ, եւ արծաթապատ, որոյ շրջապատն է յատակին կճեայ քարամբք յարդարեալ. եւ 'ի վերայ նորա սեղան պատարագամատոյց, յորոյ վերայ անխափան յամենայն աւուր պատարագեմք. նախ՝ Յոյնք, եւ ապա Մեք. յաւուրս պատարագին Յունաց՝ նախ դնեմք զպատկեր խորանին, խաչ, Աւետարան, չորս աշտանակս. եւ յիշտակարանս արծաթապատ. զկնի սուրբ Պատարագին մերոյ 'ի բաց առնումք անտի զամենայն, եւ լուսարարն Յունաց փակէ զխորանն վանդակաւ. զի ո՛չ է սովորութիւն պատկերաց մնալ անդ, ո՛չ նոցա եւ ո՛չ մերն. 'ի ձախակ խորանին ունիմք զերիս փոքրիկ պատկերս. եւ 'ի չորս յաջմէ եւ յահեկէ մետասան կանթեղս, նոյնչափ եւ Յունաց եւ Լատինաց դոն :

Իսկ 'ի մէջ ծննդեան եւ Մսրոյ սուրբ Տեղեաց

գոյ կճեայ սիւն մի, որոյ առաջի գոն երկքին աշտանակք մշտավառ . աջակողմեանն՝ Մեր է, միջինն Յունաց, և ՚ի ձախմէ եղեալն Լատինաց. յաջմէ և յահեկէ սեանն՝ երեք երեք աստիճա-նաւ իջանէ ՚ի սուրբ Մսուրն . յորում եղա-մանկացեալն Յիսուս . որոյ յատակն և շրջապատն մարմարիոնեայ քարամբք յօրինեալ, յորոյ վե-րայ հինգ կանթեղ մշտավառ և վանդակապատ, հանդէպ Մսրոյն՝ խորան մի է ; յոր պատարագեն Լատինք միայն, ուր ընծայամատոյց եղեն երե-քին մոգքն . Մսուրն կայ առ արևմուտս, և սե-ղանն՝ յարևելս, և վանդակապատ, և են ՚ի ձեռս Լատինացւոց . ունիմք անդ ՚ի Յայրին երկու պատկեր ՚ի յորմն հարաւոյ, և երկու ՚ի հիւսիս, և երկու՝ յարևմուտս . Այրի երկայնութիւնն է 40 ոտնաչափ, և լայնութիւնն 11 . յատակ և որմքն են բովանդակ մարմարիոնեայ . ՚ի կողմն արևմտեան գոյ դուռն՝ ընդ որ մտանէ ՚ի պա-հարանս նշխարաց կոտորելոց սուրբ Մանկանց, անդ են և գերեզմանք Հերոնիմոսի վարդապետի Լատինաց, և Եւսեբիոսի աշակերտի նորին ըստ Մարինոսի, և այլ խորանս . և անտի քսան և հինգ աստիճանաւ ելանէ յեկեղեցին Լատինաց . զոր-մէ ունիմ խօսել՝ ըստ կարգի :

Ի յետուստ Աւագ խորանի Յունաց մինչ ցա-ւագ դուռն՝ երկայնութեամբ է 93 ոտնաչափ, ՚ի հիւսիսոյ կողմն կամարին յատակէն մինչ ՚ի հարաւակողմն Յունաց՝ 120 ոտնաչափ, գոյ մեծ դուռն՝ ընդ որ ելանէ յերկուց կողմանց քսան աստիճանաւ, և մտանէ ՚ի վանս Յունաց . ՚ի ձախ-

մէ Աւագ խորանին ութն պատուհանաւ՝ բարձր է յատուկ եկեղեցի մի յանուն սուրբ Գէորգայ, յերկոսին կողմանս սենեակք. յարևմուտս և առ հարաւ ունի զերկոսին դրունս՝ ընդ որս մտանէ 'ի վանս նոցա. և առաստաղ եկեղեցւոյն և մեծի գաւթին է սագաշէն և փայտակերտ յանգուտ փայտից, յորոց վերայ համակ կապար տախտակամած, և յատակն բոլոր մարմարիոնեայ քարամբք յօրինեալ. որ նորոգեցաւ յամի 1843։



## Յաղագս վանուց Մերոյ։

Վանքն Մեր է յարևմտակողմն մեծի եկեղեցւոյ սուրբ Ծննդեան, և ունի եկեղեցին զերիս խորանս. Աւագ խորանն՝ յանուն սուրբ Աստուածածնի, աջակողմեանն՝ սրբոյն Յակոբայ. և ձախակողմն՝ սուրբ Ստեփաննոս. և յաջմէ նորին Պահարան, յանուն Յովակիմայ և Աննայի. որոյ երկայնութիւնն է 40 ոտնաչափ, և լայնութիւնն 31. և գեղեցկակերտ համակ կըճեայ սուրբ Աւազան. որ շինեցաւ յամի Տեառն 1848 'ի յիշատակ Մշեցի Թադէոս ծերունազարդ հոգևսէր վարդապետին. բայց բնակիչք Բեթղեհէմի անուանեն զայս եկեղեցի սուրբ Յակոբ, վասն զանազան սքանչելագործութեանն. զի բազում ախտաժէտք եկեալ անդ բժշկին, զոր նորոգեաց Գ. Պարոնտէր Հայրապետն, 'ի Թիւ Հայոց՝ ՌՀ. յամի Տեառն 1620։

Իսկ առաջ ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃՂ․ մետրապոլին Նու-
րադեաց Գրիգոր Հայրապետն Շղթայակիր ան-
ուանեալն, յամի Տեառն 1726․ և արքունական
հրամանաւ երկուց գնեբքին եկեղեցին․ և որքա
գործեաց անդ զերկս խորանս յանուն անուան
սուրբ Երրորդութեանն․ բայց այժմ անշնա-
առւն ձևացեալ է այն․ Տես ՚ի Հանհա պարփակեալ
յերես 183։ Այսոյ գաւթի երկայնութիւնն է 22
ոտնաչափ, և լայնութիւնն 28։

Յամի Տեառն 1830 մինչ ՚ի 1850, հետզհե-
տէ մասնաւորաբար նորոգեցան անդ սենեակք
և այլ կարևոր տեղիք, և ջրհորք, և ունի քա-
նի մի սենեակս․ յատուկ Պատրիարքարան, սե-
ղանատուն, փուռն հացի, և խոհարան մեծ, և
ջրհորս մեծ․ ունի երկու գաւիթ, և պարտէզ
ընմնի․ և յատուկ ձիթահան մի ևս հաստա-
տեցաւ յամի Տեառն 1858, արդեամբք և ջա-
նիւք ծերունազարդ Տեառն Եղիա վարդապե-
տին․ և արտաքոյ վանուց բաղում ձիթաստան
և յատուկ Տեառն և Միաբանիք․ որք անխափան
կատարեն զպաշտօն ժամերգութեան, և մա-
տուցանի յամենայն աւուր ահաւոր խորհուրդ
սուրբ Պատարագին ՚ի վերայ հրաշափառ ծը-
նընդեան երկրպագելի սուրբ Տեղւոյն․ և երբ
բերեն ըստ պատշաճին յայլ սուրբ Խորանս և ՚ի
վանս, ՚ի փրկութիւն հոգւոց կենդանեաց և ննջե-
ցելոց Ազգիս․ և դատափարակ մի ևս կայ անդ․
որ վարժէ և մարզէ զմանկունս Ազգիս մերոյ։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՑ ԾՆՆԴԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ՝ ՍՈՒՐԲ ԱՅՐԻՆ, ԵՒ ՎԱՆՈՒՑ ՄԵՐՈՑ



### Յաղագս զանգակին և կոչնակին Մեր և Յունաց:

Յամենայն գիշերի 'ի սկիզբն ժամերգութեան Յունաց ըստ սովորութեանն. նախ՝ նոցա զանգակն հնչի, և եկեալ պաշտեն յԱւագ խորանն զժամերգութիւնս իւրեանց. ապա մերձ յաւարտն զմեր զանգակն հնչեմք, և իջեալ կատարեմք անդ զգիշերային ժամերգութեան պաշտօնն, զի մի խառնակ լինիցին ձայնք ժամերգութեան մեր և նոցա, և ձանձրացուցիչք միմեանց: Նոյն յերեկոյին նախ զանգակն մեր հնչեցուցանեմք ըստ միշտ սովորութեանն, և իջեալ պաշտեմք զժամերգութիւնն. և զկնի աւարտմանն հնչի զանգակն Յունաց, և եկեալ կատարեն զժամերգութեան պաշտօն իւրեանց:



### Յաղագս խնկարկութեան:

Միշտ անխափան յամենայն աւուր թէ 'ի գիշերի և թէ յերեկոյի, մեր բուրվառն պարտ է գնալ 'ի սուրբ Այրն 'ի խնկարկել, բայց 'ի գիշերի. կամ նախ քան զթիւ պատարագն Լու-

ախնայ գնալ պարտիմք, կամ յետոյ. և մինչ Լատինք, կամ Յոյնք պատարագեն անդ, չէ՛ պարտ մեր խնկարկու Սարկաւագին իջանել 'ի սուրբ Այրն, այլ սպասել մինչև աւարտեսցեն զպաշտամունս իւրեանց ։

## Յաղագս Գաւթեան Ուխտաւորաց Մերոց ։

Ի գալ տէրունական Ուխտաւորաց մերոց՝ նախ լուսարարն մեր ազդ տանէ Յունաց լուսարարին, զի բացցէ զվանդակ սրբոյ Ծննդեան սեղանոյն, ուր դնեմք զսուրբ Պատկերն, խաչ, Աւետարան, և աշտանակս, և ծածկոյթս, և զհարկաւոր իրս ։

Նաև ազդ առնեմք Լատինաց լուսարարին, գիտել և տեղեկանալ, թէ յայնմ ժամու ունի՞ն իջանել 'ի Թափոր կամ 'ի խնկարկութի, թէ ոչ՝ եթէ փութով կամին իջանել, սպասեմք մինչև յիջանել նոցա 'ի սուրբ Այրն՝ և 'ի վերադառնալն. ապա եթէ անագան ունին գալ, յայնժամ տանիմք զՈւխտաւորսն մեր 'ի սուրբ Ծնունդն, առաջի դրան սուրբ Այրին առ լուսարարն շուրջառ և խաչ կառավարչին, խնկօք և մոմեղինօք ։

Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե ։

Վարդապետն՝ Օրհնութիւն և փառք. ասելով Շարական, Տէ՛ր. « Խորհուրդ մեծ և սքանչելի » իջանեն 'ի սուրբ Այրն ։ Աւետարան, Ղուկ. Բ. 8. 20. « Եւ հովիւքն էին ». Եւ երգի ձայնիւ

« փառք 'ի բարձունս աստուծոյ »: Նուագարան, « Եւ եղև իբրև վերացաւ ». « Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ »: Նշգ. « Արեգական արդարութեան ». « Ի վայելչութիւն սրբոց »:

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան:

Դպիրքն, Կեցո՛ Տէր. Տէր ողորմեա՛:

Վարդապետն, Քում ամենազօր և հրաշալի: Նշա համառօտ ծանուցումն:

Սարկաւագն, Սուրբ խաչիս աղաչեսցուք:

Վարդապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ:

Բայց պարտ է զգուշանալ, 'ի ժամ Թափօրի Լատինացւոց. չթողուլ զխաչ, զաւետարան, զաշտանակս, և զծածկոյթս մեր 'ի վերայ սեղանոյն, այլ պատկերն միայն մնասցէ անդ. ապա եթէ անընտել և համբակ լիցի լուսարարն մեր, և ոչ բարձցէ զնոսա 'ի սեղանոյն, յայնժամ լինի խառնակութիւն՝ կարգ և կռիւ ընդ Լատինս: Նաև յետ կատարելոյ զՄեխոսս իւրեանց; զսուրբ Պատկերն և զայլ՝ որ 'ինչ կայ 'ի վերայ սեղանոյն, պարտիմք 'ի բաց առնուլ անտի. ապա Յունաց լուսարարն եկեալ ըստ սովորութեանն փակէ վանդակաւ զխորանն, և գնայ. զի զվանդակ բանալն և փակելն է պաշտօն նորա, և ոչ մեր:



## Յունվարի հինգ և վեց ։

Ի Հրաշափառ սուրբ ծննդեան ճրագալուցի երեկոյին ըստ սովորութեանն, զՍրբազան Պատրիարքն մեր և կամ զՀանդիսապետն հանդիսիւ տանիմք 'ի սուրբ Այրն. բայց նախ պարտիմք դնել զսուրբ Պատկերն 'ի Խորան սուրբ ծննդեան, ուր մնայ անխախտ մինչ ցերիս աւուրս ըստ միշտ սովորութեանն, ապա յերրորդում աւուր զկնի սրբոյ Պատարագին մերոյ 'ի բաց առնումք անտի։ Որդ՝ խաչիւ և աւետարանաւ, և աշտանակօք, և ծածկութիւ զարդարեմք զսուրբ Այրն, զամենայն կանթեղս և զջահս և զմոմեղէնս լուցանեմք. և արկանեմք զորգ առաջի սուրբ Տեղւոյն։ Նաև պատրաստել պարտիմք կրկին զոյգ աւետարանաբարձս, չորք զոյգ դպիրս լուսակալ. զոյգ բուրվառս, գաւազանակիր, և զոյգ քշանցաբարձս, և շար 'ի շար դասակարգել 'ի մեծի գաւթի յաջմէ և յահեկէ փայտաշէն մեծի դրանն.

Ապա իջանէ Սրբազան Պատրիարքն հանդերձ Ուխտիւք եկեղեցւոյ 'ի փոքր գաւիթն. ուր 'ի յետուստ փայտեայ մեծի դրանն տայ Աւագլուսարարն նմա շուրջառ, խաչ, և գաւազան։

Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր. և արկանէ խունկ 'ի բուրվառն։

Դասապետն՝ ըստ դասին երգէ քաղցրաձայն, Շարական՝ Տյ. « Հրաշափառ աստուած »։

Մինչ հասանի առ դրան սրբոյ Այրին, եւ-

դէ Շարականն՝ գյ. «Ուրախ լե՛ր ո՛վ եկեղեցի», և իջանեն ՚ի սուրբ Ծննդեան Այրն. և այն. որ ըստ կարգին ։

Յետ կատարելոյ զՈւխտս իւրեանց, պաշտի ժամերգութիւնն առաջի Աւագ խորանին մե-րոյ, և սուրբ Պատարագն մատուցանի ՚ի վերայ սրբոյ Ծննդեան տեղւոյն. և զկնի սրբոյ Պատա-րագին ասելով Շարականն, գի. «Խորհուրդ մեծ և սքանչելի», տանիմք զՍրբազան Պատրիարքն ՚ի վանս մեր ՚ի սեղանատունն ։ Ընթերցուած, «Եւ հովիւքն էին». «Փառք ՚ի բարձունս Այ»։ Ընթերցուած, «Եւ եղև իբրև». «Եւ յամենայն ժամ օրհնեսցուք զքեզ»։ Եւն. «Արեգական ար-դարութեան»։

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան.
Դպիրն, Կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛։
Վարդապետն, Քում ամենազօր և հրաշալի։
Սարկաւագն. Սուրբ խաչիւս աղաչեսցուք։
Վարդապետն, Պահպանիչ և յոյս հաւատոյ։

Նաև նախ քան զերեկոյի ժամերգութիւնն դնի կրկին մեծ աշտանակ յաջմէ և յահեկէ դը-րան սուրբ Այրին ՚ի վերին աստիճանին, որ մնայ մինչ ցերկրորդ օրն. ապա զկնի սուրբ Պա-տարագին ՚ի բաց առնումք անտի. քանզի Լա-տինք ևս ՚ի ծննդեան իւրեանց, և յայլ տօնա-կան աւուրս Տօնից դնեն զոյգ մի աշտանակ ՚ի վերայ ներքին աստիճանաց, ըստ Մեզ և ըստ Լատինաց առնեն և Յոյնք դնելով առաջի երկ-րորդ դրանն ։

Յայնմ երեկոյիս ազդ առնէ Թարգմանն մեր

Յունաց . իբր հրաման տանել . զի առաջի Ա-ւագ խորանին՝ նոցա սփռեմք կարպետս և սփռոց , յորոց վերայ կանգնին ժողովուրդ մեր :

Նոյպէս և յերեկոյի և յառաւօտու ծնընդեան Յունաց ազդ առնեն մեզ , զի ժողովուրդք նոցա կանգնին 'ի Մեր եկեղեցին . վասն որոյ զգորգ և զամենայն ինչ 'ի բաց առնումք անտի , և զմի ոմն 'ի մէնջ պահապան կացուցանեմք անդ . զի մի վնաս տացեն խորանաց և պատկերաց մերոց :

Յայս երիս աւուրս ըստ որում սուրբ Պատկերն մեր մնայ անխախտ 'ի սուրբ ծննդեանն խորանին , ուստի Յոյնք 'ի ժամ պատարագի իրեանց զպատկերն դնեն առաջի մերս պատկերին . և զկնի պատարագին 'ի բաց բառնան : Նոյպէս և մեք 'ի նոցին ծննդեան երիս աւուրս զսուրբ Պատկերն մեր դնեմք առաջի պատկերին նոցա , և յետ սրբոյ Պատարագին 'ի բաց առնումք : Նոյպէս առնեմք մեք և նոքա եթէ հանդիպեսցի Աւետաւոր յայս երիս աւուրս՝ դնի պատկերն , և այլ ամենայն ինչ . և ապա բառնի անտի :

Ի 13 Դեկտեմբերի , Լատինացւոց ծննդեան յառաւօտու միայն որքան կարգաւոր գտանիցի անդ , երեք երեք անգամ թիւ պատարագեն 'ի խորան սուրբ Մօրոյն . վասն որոյ համբերութք պարտիմք սպասել մինչև ցվերջն . բայց հանդիսաւոր պատարագն 'ի վանս իւրեանց առնեն :

Ի 25 Դեկտեմբերի , Յունաց ծննդեան , Ղփտին և Ասորին գան 'ի սուրբ ծնունդ՝ 'ի

վանս Մեր․ Խաչին պատարագէ յերեկոյի և յառաւօտու յԱւագ խորանն մեր, և Աւուրն 'ի Թլփատութեան խորանն մեր․ բայց Աւուրց պատարագի զգեստն Մեք տամք, ըստ սովորութեանն։

Ի Մեր սուրբ ծննդեան յերեկոյի և յառաւօտու Յոյնք ըստ կարգադրութեան զժամերգութեան պաշտօն 'ի վանս իւրեանց կատարեն, բայց պատարագն ըստ կարգի է, որպէս յայլ աւուրս․ նախ Նոքա պատարագեն, և ապա մեք հանդիսաւոր։

Սոյնպէս և Յունաց ծննդեան յերեկոյի և յառաւօտու զպաշտօն ժամերգութեան 'ի վանս Մեր ունիմք կատարել, այսինքն 'ի վերին եկեղեցւոյն․ բայց պատարագն ըստ կարգի է․ նախ նոքա հանդիսաւոր, և ապա մեք։

Ի սուրբ ծննդեան գիշերի՝ զՏէր յերկնից ասելով իջանեն 'ի սուրբ Այրն, և ընթեռնուն անդ զԱւետարանս, զկնի Սուրբ աստուածին՝ «խորհուրդ մեծ» ասելով՝ ելանեն 'ի վեր, բայց երբեմն զԱւետարանսն հանդէպ առաջի դրան սուրբ Այրին ընթեռնուն․ և ապա սուրբ Պատարագն մատչի յԱւագ խորանն՝ և սուրբ Մկրտութեան խորհուրդն կատարի անդ․ և ապա հանդիսաւոր պատարագն մատչի 'ի վերայ սրբոյ ծննդեան տեղւոյն՝ զկնի պատարագին Յունաց։

Նաև 'ի մեծի Հինգշաբաթի աւուր պատարագն 'ի սուրբ Այրն է․ բայց Ոտնլուայն կատարի յերեկոյին առաջի Աւագ խորանին։

Իսկ 'ի մեծի Ուրբաթու գիշերային ժամեր-

գութիւնն առաջի Աւագ խորանին կատարեմք , նոյնպէս և զԹաղմանն արարողութի յերեկոյին անդանօր առնեմք ըստ նախնի սովորութեանն ։

Ի Վերափոխման կիւրակէի զկնի սուրբ Պատարագին մերոյ 'ի սուրբ Այրն Ծննդեան խաղող օրհնի ։

Ի Ծաղկազարդի առաւօտու ըստ սովորութե Հայաստանեայցս անդաստան առնեմք անդ . այլ 'ի Թափօր ոչ ելանեմք որպէս զՅոյնս 'ի մեծ գաւիթն . զի չէ սովորութիւն , և արգելեն զմեզ ։ Բայց դռնբացէքի խորհուրդն երեկոեան 'ի վանս մեր կատարեմք . զի ըստ սովորութեանն անդ գան ժողովուրդք մեր , և բանան զխորագոյրն ձրի ։

Ի Հինգ Տաղաւարս եթէ Արքայական Պատրիարքն , կամ յԵպիսկոպոսաց մին ոչ եկեսցէ 'ի սուրբ Ծնունդն՝ յերեկոյի և յառաւօտու ըստ սովորութեան զՏեսուչ տեղւոյն՝ Հարակեան աներով ըստ պատշաճի , 'ի սուրբ Ծննդեան եկեղեցւոյն տանիմք 'ի վանս մեր ։



Յաղագս ըռնայման սուրբ Տեղւոյն ։

Յամենայն չաբաթու կրկին անգամ 'ի Չորեքշաբաթու և 'ի Շաբաթ աւուրս անխափան լուանամք և մաքրեմք զՔրիստոսի Ծննդեան սուրբ Տեղին միայն , թէպէտ և յառաջ աւել ևս ածէաք 'ի սուրբ Այրն , բայց այժմ խափանեալ է 'ի Հակառակորդաց ։

Գիտելի է եւ՝ զի եթէ դիպուածով խաք-բեկանիցի կանթեղն մեր կամ իւղն հեղցի, մեք ժողովեմք և մաքրեմք. եթէ Յունաց՝ Յոյնք. եթէ Լատինաց՝ Լատինք. բայց բազում անգամ հակառակին մեզ չթողուլ, այլ չէ՛ պարտ երկընչիլ և անսալ բանից նոցա:

Յաւուր ծննդեան Լատինաց ըստ սովորութեան Տեառն մեր թարգմանաւ և կարգաւորօք գնան 'ի վանս նոցա 'ի շնորհաւորել զծնունդըն. սոյնպէս և Յունաց ծննդեան գնան 'ի շընորհաւորել զնոցայն. և նոքա գան 'ի շնորհաւորել զաւուրբ ծննդեան մեր. նախ՝ Լատինն գայ, և ապա Յոյնք: Նոյնպէս է և սովորութիւն երկուց վանուցն մերոց՝ որ 'ի Յոպպէ, և 'ի Ռէմլէ:

Ի բոլոր տարւոջ յամենայն աւուր թէ ուտեաց և թէ պահոց՝ միշտ անխափան սուրբ Պատարագ մատչի 'ի վերայ սրբոյ ծննդեան տեղւոյն. բայց յաւուր Աւագ ուրբաթու ոչ. զի Լատինք և Յոյնք եւս ոչ պատարագեն 'ի սոյն աւուր:



## Յաղագս Լատինացւոց վանուց:

Ի հիւսիսակողմն մեծի եկեղեցւոյն սուրբ ծննդեան, է վանք Լատինացւոց. եկեղեցին կառուցեալ կայ խաչաձև՝ յանուն սրբուհւոյ Կատարինէի: որոյ երկայնութիւնն է 74 ոտնաչափ; և լայնութիւնն 22: Ունի զերիս խորանս հոյակապ, և յատակն մարմարիոնեայ քարամբք յօրինեալ. սա չունի դուռն՝ այլ մտանէ 'ի մէ-

Ջոյ երից կամարաց . յարեւմտակողմն 'ի ներքս է աւանդատուն քարեայ քսան եւ հինգ աստիճանաւ իջանէ 'ի վայր , զոր յիշեցաք այլուր ։ Յորում են պահարան սուրբ նշխարաց մանկանց , եւ գերեզմանք Հերոնիմոսի եւ Եւսեբիոսի , եւ դուռըն որ մտանէ 'ի սուրբ Այրն ծննդեանն , եւ ունի դասակարգ սենեակք միաբանութեան , եւ հինգ ջրհոր , եւ պարտէզ չքնաղ , սեղանատուն եւ խոհարան , եւ յատուկ վարժարան . ունի եւ տեսուչ , եւ կարգաւորս , որք միշտ կատարեն ըղսպասաւորութիւնս իւրեանց ։

## Յաղագս Յունաց վանաց ։

Ի հարաւակողմն մեծի եկեղեցւոյն սուրբ ծննդեանն՝ է վանքն Յունաց , որոյ եկեղեցին է յանուն սրբոյն Գէորգայ . որոյ երկայնութիւնն է 25 ոտնաչափ , եւ լայնութիւնն 32 . ունի բուրգըն մի հնաշէն , եւ զանգակատուն , եւ քանի մի սենեակ . եւ 'ի շրջապատ նորին առ հարաւ եւ առ արեւմուտս , ունի նորաշէն երկու թաղ , իբր տասն եւ հինգ սենեակս . եւ 'ի ներքոյ նոցին ախոռ , փայտարան , եւ ձիթահան , եւ ունի եօթն ջրհորս . աստ 'ի վանս նստի Տեսուչ՝ եւ այլ կարգաւորք եւ միաբանք նոցա , եւ կատարեն ըղջմտութեամբ զպաշտօն ժամերգութեան , եւ այն։



## Վան ջառաանից այրին:

Ի հարաւակողմն Բեթղեհեմի իբր քարընկէց մի հեռի 'ի վանուց Յունաց, է այրն Քառանից. յաղմէ ճանապարհին՝ որ գնայ 'ի գիւղըն Հովուաց, զորմէ աւանդեն թէ աստ եկաց սուրբ Կոյսն յետ ծննդեանն Քրիստոսի քառասուն օր, և 'ի լրանալն, աստի ելեալ գնաց 'ի Տաճարն: Իսկ ոմանք՝ թէ աստ թաքեան սուրբ Կոյսն, և Յովսէփ՝ մանկամբն Յիսուսիւ, մինչ կոտորէր Հերովդէս զմանկունսն Բեթղեհեմի, աստի ելեալ գնացին յԵգիպտոս:

Այս տեղի այրին է ձևացեալ եկեղեցի, և ունի խորան մի և մշտավառ կանթեղ մի 'ի ներքոյ խորանին, ուր է փոս բոլորակ և խոչ 'ի նմա. և երիս կանթեղս 'ի վերոյ սեղանոյն, յոր երբեմն պատարագեն Լատինք, զոր երկիցս նորոգեցին յամի Տեառն 1845, և 1849. որոյ երկայնութիւնն է 54 ոտնաչափ, և լայնութիւն 24:

Այս անխափան գնան տէրունական Ուխտաւորքն մեր՝ զի ունիմք անդ մասն ինչ, և անտի գնան 'ի ձիթաստան մեր, որ կայ հանդէպ այրին, անտի տեսանեն զքաղցօթեայ տեղին Հովուաց, որոց աւետեաց հրեշտակ Տեառն՝ թէ ծնաւ ձեզ Փրկիչ. ուր ընթեռնումք Ղուկասն՝ դէ. "Խորհուրդ մեծ և սքանչելի": Աւետարան. Ղուկ. Բ. 8. 20. "Այս հովիւքն էին": և երգեմք բարձրաձայն՝ "Փա՛ռք 'ի բարձունս աստուծոյ":

Սարկաւագն, Խնդրեսցուք: Դպիրն, Կեցո՛ տէր:

Վարդապետն, Քում ամենազօր և հրաշալի:

## Յաղագս Հովուաց Բայթսահուրայ տեղւոյն և գեղջն։

Յարևելս Բեթղեհեմի իբր կէս ժամու հեռի է աւեղին, որ արտաքոյ գեղջն իբր տասն րոպէ հեռի դէպ յարևելս, ուր հովիւք պահէին ՚ի գիշերի զհօտս իւրեանց, որոց երևեալ հրեշտակ Տեառն, ետ նոցա զաւետիս անճառ ուրախ ծննդեան Փրկչին մերոյ Յիսուսի. և բազմութիւնք զօրաց երկնաւորաց խառն ընդ հովուսն երգէին, «Փառք ՚ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն ՚ի մարդիկ հաճութիւն»։ Ղուկ. Բ. 8. 20։

Այր կառուցեալ կայ եկեղեցի, յանուն հրեշտակաց և հովուաց. և է յոյժ խոր, քանզի քսան աստիճանաւ իջանէ յեկեղեցին. որոյ երկայնութիւնն է 30 ոտնաչափ, և լայնութիւն 21։ Եւ ՚ի հիւսիսակողմն ունի պահարան, առ որ իջանէ երկոտասան աստիճանաւ, որոյ երկայնութիւնն է 20 ոտնաչափ, և լայնութիւնն 16. և է այժմ ՚ի ձեռս Յունաց. և բնակիչք գեղջին են ըստ կիսոյ Յոյնք, և ըստ կիսոյ Այլազգք։



## Յաղագս Եփրատ գեղջն ։

Ի Բեթղեհէմէ միով ժամու հեռի գնացեալ առ հարաւ, ընդ դառնալն յարեւմուտ՝ է գիւղն Եփրատ, որոյ բնակիչքն են Այլազգք. եւ տուն մի Անգղիացի. 'ի ներքոյ գեղջն է յորդառուղխ բարեհամ աղբիւր մի, որոյ ջուրն ոռոգանէ զամենայն պարտէզս եւ զբուրաստանս, օդն առողջարար, եւ արգաւանդահող, եւ ունի ծառատունկ այգիս. եւ կոչի յԱրաբացւոց՝ Ըրթաս կամ Ըրտաս. անտի գայ բանջարեղէն եւ կանաչեղէն 'ի Բեթղեհէմ քաղաքն. նաեւ մրգք բազում, եւ այլն ։



## Յաղագս փակեալ պարտիզին, կնքեալ աղբերն, եւ երից աւազանաց կամ լճացն Սողոմոնի ։

Սակաւ կէս ժամու հեռի դէպ յարեւմուտ՝ է Պարտէզ փակեալն, բայց ոչ գոյ այժմ պարտէզ անդ, այլ արտ. զորոյ չորեսին կողմունսն պատեալ եւ փակեալ են փոքր լերինք. յաջմէ գնալով առ հարաւ իբր քարընկեց մի՝ է Աղբիւր կնքեալն, զի 'ի ներքոյ երկրի է ջուրն, որ բղխի, յոր իջանէ տասն աստիճանաւ, եւ է կամարակապ եւ լայնանիստ տեղի, որոյ ջուրն գայ յարեւմտից եւ գնայ յարեւելս. իջանէ 'ի ներքոյ ներքնոյ աւազանին, խառնի ընդ ջրոյն լճաց, եւ գնայ 'ի Տաճարն Սողոմոնեան ։

Մերձնորին առ հիւսիս է Առաջին աւազանն,

որոյ երկայնութիւնն է 260 քայլ, և լայնութիւն 110. և խորութիւնն գրեթէ 'ի չափ լայնութեան:

Մերձ նորին առ արեւմուտս 300 քայլ հեռի է Երկրորդ աւազանն, որոյ երկայնութիւնն է 194 քայլ, և լայնութիւնն 80. ըստ լայնութեան և խորութիւնն:

Մերձ նորին առ արեւմուտս 291 քայլ գնալով, է Երրորդ աւազանն, որոյ երկայնութիւն է 165 քայլ, և լայնութիւնն 94 քայլ, ըստ լայնութեան և խորութիւնն:

Ի վերին յանկեանն Երրորդ աւազանի, է աղբիւրն Սողոմոնի, որոյ ջուրն իջանէ յաւազանսըն, և 'ի ներքոյ աւազանացն գնայ 'ի Տաճարն: Ի հիւսիսակողմն աւազանիս գոյ բուրգն Սողոմոնի, յոր նստէին պահապանք ջուրց 'ի հնումն. նոյնպէս և երբեմն այժմ նստին անդ պահապանք. և 'ի միջի բերդին է ակն աղբերին Սողոմոնի, որում իսկ ականատես եմք:

### Յաղագս սուրբ Գէորգայ վանուցն:

Աստի կէս ժամաւ հեռի դէպ 'ի հիւսիս՝ է վանք սրբոյն Գէորգայ, որ ունի փոքր գմբէթեայ եկեղեցի զարմանալագործ և բուժիչ ախտաժէտաց: Այլ են 'ի սմա քանի մի սենեակք, և բազում այգիք, և ձիթաստանք շուրջանակի, և է 'ի ձեռս Յունաց:



Յաղագս քաղաքին Քեբրոնի, որ կոչի Խալիլ րահման։

Աստի մինչ 'ի Քեբրոն չորս ժամ է, 'ի Բեթղեհեմէ վեց, յԵրուսաղեմէ ութն։ Սեք ասեմք Հայր Աբրահամ, քանզի անդ է այրն կրկնում և ագարակն Եփրոնի. Ծննդ. ԻԵ. 9, 10։

Ի քաղաքիս յայսմիկ յանդիման Մամբրէի է մեծ մզկիթ մի կառուցեալ 'ի վերայ չորից սեանց. գերեզմանն Աբրահամու է առընթեր առաջնոյ աջակողմեան սեանն, և գերեզմանն Սառայի յանդիման նորին առընթեր առաջնոյ ձախակողմեան սեանն, գերեզմանն Սահակայ է առընթեր աջակողմեան երկրորդ սեանն, և գերեզմանն Ռեբեկայ է յանդիման նորին առընթեր ձախակողմեան երկրորդ սեանն. 'ի գաւթի անդ առընթեր աջակողմեան սեանն է գերեզմանն Յակոբայ, և առընթեր ձախակողմեան սեանն յանդիման նորին է գերեզմանն Լիայի. և հանդէպ դրանն մզկթին արտաքոյ գաւթին է գերեզմանն Յովսեփայ, զորոյ զոսկերսն բերեալ յԵգիպտոսէ՝ ամփոփեցին անդանօր։

Իսկ կաղնի ծառն Մամբրէի կայ մինչև ցայսօր՝ արտաքոյ քաղաքին կէս ժամու հեռի, որոյ բուն արմատն է հաստ իբր եօթն դրկաչափ. 'ի ներքոյ ծառոյս եկին երեքին հիւրքն առ Աբրահամ. “Եւ երևեցաւ նմա Աստուած առ կաղնեաւն Մամբրէի, մինչդեռ նստէր առ դուրս խորանին իւրոյ 'ի միջօրէի։ Ամբարձեալ զաչս իւր և ետես, և ահա արք երեք կային 'ի վերայ քան զնա ». Ծննդ. ԺԸ. 1։ Աստ լինի խաղող պտուկան և այլ միրգ։

## Յաղագս Գազայու՝ որ է Ղազէ ։

Ի Քեբրոնէ մինչ 'ի Գազա է տասներկու ժամ, աստ է տուն Սամփսոնի. Դատ. ԺԶ. 1–31։ Այլ տուն Մարիամու Մագդաղենացւոյն, և աստ է տուն Իլարիոնի սուրբ հօրն, որ էր վանք ազգին մերոյ. որոյ եկեղեցին յանուն սրբոց հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի. և ունէր բազում այգիս, և պարտէզս ։ Տես Հաննա պատմութիւն, յէջս 326. բայց այժմ աւերակ է և անտէրունչ ։

Յամի Տեառն 1854, առաքեցաւ աստի քննիչ 'ի Գազա, որոյ բնակիչք պարտաւորեցան տալ մեզ ամ յամէ խծորէ քառասուն դահեկան սակս մեր վանուց տեղւոյն ։



## Յաղագս Եգիպտոսի ։

Ի Գազայէ ինն աւուր ճանապարհ է Եգիպտոս, ուր գնաց Տէրն մեր և շրջեցաւ անդ զամիս մետասան, և ամիս ութն կամ ինն. աստանօր կատարեցաւ բան մարգարէին Եսայեայ. «Նստեալ 'ի վերայ թեթև ամպոյ եկեսցէ յԵգիպտոս, և շարժեսցին ձեռագործք Եգիպտացւոց ». ԺԹ. 1։ Քանզի յետ քառասնօրեայ գալստեան Քրիստոսի 'ի Տաճարն, և այն իբր զկնի երկուց ամաց՝ ըստ ազդարարութեան հրեշտակին՝ գգուեալ 'ի գիրկս սրբոյ կուսին, զոր կոչէ մարգարէն ամպ թեթև, և իջանէ յԵգիպ-

տոս, ուր 'ի մտանելն անկեալ փշրեցան ամենայն բագինք՝ և ձուլածոյ և կռածոյ պատկերք շատուածոց Եգիպտացւոց. ուր արար բազում սքանչելիս, և եցոյց ընշանս և զհրաշս 'ի մանկութեան իւրում. իսկ տունն յոր եկաց ընդ մօրն իւրում սբ Կուսի Յովսեփաւ հանդերձ, ասի գոլ 'ի մէջ հնոյն Եգիպտոսի, ուր և կայ դեռ մինչև ցայսօր. աստանօր է և տուն և կըրպակ ներկարարին, ուր արար զմեծամեծ սքանչելիս: "Իսկ 'ի լռանալ երկոտասան ամացն Յիսուսի ըստ յայտնելոյ հրեշտակին եկն և բնակեցաւ 'ի Նազարէթ, զի Նազովրեցի կոչեսցի": Մատթ. Բ. 13. 23. և այլն:



# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԱՐԵՒՄՏԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ



### Յաղագս Կոզմայի և Դամիանոսի գերեզմանաց:

Յարևմտից կուսէ մերձ քաղաքիս Երուսաղէմի, յաջմէ ճանապարհին Բեթղեհէմի՝ գոյ փոքրիկ եկեղեցի մի. որոյ երկայնութիւնն է 30 ոտնաչափ, և լայնութիւնն 29: Կոչուեցեալ յանուն Անարծաթ բժշկացն Կոզմայի և Դամիանոսի, որոց գերեզմանքն են անդ ՚ի հիւսիսակողմն ըստ վկայելոյ ոմանց. Ե:— Գրէ ՚ի Վարս սրբոց, Ժ. հատոր, յերես 228: «Իսկ յաւելուն թէ բարձցին արք երկիւղածք զմարմինս սոյն նահատակաց, և ամփոփեցին ՚ի միում վայրի. որ ըստ ոմանց ասի լինել մերձ յԵրուսաղէմ, ՚ի տեղին կոչեցեալ Պուենիման կամ Փաեման, ՚ի ժամանակս Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի. յամի Տեառն իբր 300, երկուորեակք ծնեան սոքա ՚ի Թէոդոտիա մօրէ, որ էր Ցեգեայ քաղաքէ Կիլիկեցւոց»: Յայսմաւուր, Մարտի 13. և Նոյեմբերի 1:

Միխայէլ Թագաւորն Յունաց շինեաց զԱնարծաթ բժշկաց եկեղեցին արտաքոյ քաղաքին սրբոյ Երուսաղէմի. Ի պատմութեան Հայոց, յեր. 133:

Բայց զսա կոչեն Յոյնք սուրբ Գէորգ, այլ չէ՛ ստոյգ բնաւ լին, այժմ է ՚ի ձեռս Յունաց. սակայն յՈւխտաւորաց մերոց գնան ոմանք հա-

մորձակ անդ վանն Ոսխոփ ։ Որոյ շրջապատն շինեցին սենեակս, և տրարին բազում ձիթաստանս, և այգիս խաղողոյ և թթենւոյ ։

Յաղագս խաչավանոյն ։

Ելեալ 'ի դրանէ Հայր Աբրահամու, զոր Մեք կոչեմք Եաֆայի դուռն, գնալով առ արևմուտս իբր քսան րոպէ, տեսանի խաչավանքն 'ի մէջ ձորակի, որոյ եկեղեցին է գմբէթեայ, կառուցեալ 'ի վերայ չորից սեանց. որոյ երկայնութիւնն է 87 ոտնաչափ, և լայնութիւնն 26 ։

Ասի՝ թէ յորժամ Հերակլ կայսրն Յունաց՝ դարձոյց զկենարար խաչն Քրիստոսի 'ի գերութենէն Խոսրովու Պարսից արքային, յամի Տ՜ն 625 կամ 627 ։ Ի գալն յԵրուսաղէմ անդ իջեվանեցաւ, և ետես զկամարն լուսոյ 'ի վերայ սուրբ խաչին Քրիստոսի. յորում տեղւոջ շինեաց զեկեղեցի յանուն սուրբ խաչին ։

Յառաջ սա էր վանք ազգին Վրաց, իսկ այժմ Յոյնք ունին զսա. յորում նստին Տեսուչ և միաբանք, և ունի բազում սենեակս, և պարտէզս, և ջրհորս ։

Յամի Տեառն 1855, նորոգ շինեցին Պատրիարքարան, ճեմարան, և զանգակատուն, և այլն ։



Յաղագս սրբոյն Յովհաննու ծննդեան տեղւոյն և վանուցն։

Ելեալ 'ի խաչավանից՝ և գնացեալ առ արևմուտս երկու ժամ, է գիւղն՝ որ էր քաղաք Յուդայի. որ և կոչի յԱրաբացւոց՝ Էյն ջէարիմ։ « Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայնոսիկ, գնաց 'ի լեռնակողմն փութապէս 'ի քաղաքն Յուդայ, և եմուտ 'ի տունն Զաքարիայ, և ետ ողջոյն Եղիսաբեթի »։ Ղուկ. Ա. 39, 40։

Անդ է տունն Զաքարիա քահանայապետի, յորում ծնաւ սուրբ Յովհաննէս կարապետ և Մկրտիչն Քրիստոսի, և է վանք Լատինացւոց. որոյ եկեղեցին է գմբէթեայ կառուցեալ 'ի վերայ քառանկիւնի չորից սեանց, և յատակն գունագոյն կճեայ և փոխագացի քարամբք զարդարեալ. որոյ երկայնութիւնն է 90 ոտնաչափ, և լայնութիւնն 75։ Իսկ յաջմէ Աւագ խորանին եօթն աստիճանաւ իջանէ 'ի տեղի ծննդեան սրբոյն Յովհաննու կարապետին, ուր է սեղան պատարագամատոյց. և 'ի ներքոյ սեղանոյն կէսաբոլոր, որոյ շրջապատն և յատակն կճեայ քանդակածոյ պատկերազարդ քարամբք գեղեցիկ յօրինեալ. և կեդրոնն բոլորակ փոս արծաթապատ ականակուռ. և վեցեքին մշտավառ կանթեղօք պատուեալ. են աստ և այլ ևս երեքին խորանք յորս պատարագեն, և 'ի խորանի միոջ 'ի ձախակողմն ցուցանեն, թէ սա է վէմն պատառեալ, զոր յիշեցաք այլուր։ Ունի և պահարան, և կարգաւորեալ սենեակս կարգաւ-

րաց ։ ստղմնատուն, և վարժարան մանկանց, և միաբանք, որք անխափան կատարեն զպաշտօն ժամերգութեան և պատարագաց ։



### Յաղագս աղբերն, որ կոչի՝ Եղ՛ն ջերմ ։

Ելեալ 'ի վանուցն սրբոյն Յովհաննու, գը-նալով սակաւիկ մի 'ի ներքոյ գեղջն, 'ի վերայ Ճանապարհի գոյ յորդաբուղխ աղբիւր մի բա-րեհամ, զոր կոչեն Արաբացիք՝ Եղ՛ն ջերմ, այն է ակն պատուական. զորմէ ասեն Յոյնք՝ թէ այն է ջուր փորձութեան, բայց անստոյգ ։



### Յաղագս տան Եղիսաբեթի մօրն Յովհաննու Մկրտչի ։

Ի սոյն աղբերէս իբր 10 կամ 15 քայլ հե-ռի, 'ի ձախմէ Ճանապարհին գոյ աւերակ վանք մի. սա է տուն Եղիսաբեթի, առ որ գնաց Սըր-բուհի կոյսն Մարիամ ողջունել զնա ։ Բայց թը-ւի ինձ գոլ հայրենիք Եղիսաբեթի, սա էր վանք Ազգիս մերոյ, յորում բնակէին միաբանք երկու-հարիւր ամօք յառաջ. Տես 'ի Հաննա պատմութեան, յերես 320 ։

Բայց 'ի խստութենէ գազանաբարոյ Արա-բացւոց փոխեցան անտի. զոր քակեալ աւերե-ցին իսպառ հետզհետէ ։ Իսկ Լատինք յամի Տեառն

1840, կոխեցին փայտեայ դուռն մի խանգարեալ եկեղեցւոյն՝ և 'ի ներքս կանթեղ մի առաջի խորանին, յորժէ եկեղեցւոյն 'ի ներքս պարըսպին է պատառեալ վէմն, քանզի մինչ զինուորքն Հերովդէի կոտորէին զմանկունս Բեթղէհէմի պատառեցաւ վէմս այս, և ընկալաւ յինքն զսուրբն Յովհաննէս հանդերձ մօրքն իւրով Եղիսաբեթիւ, և յետ հնգից ամսոց երեւեցաւ հրեշտակ Տեառն Եղիսաբեթի, և բացեալ զվէմն՝ եհան զնոսա. Յայսմաւուր, Յուլիսի 11։ Յորոյ վերայ պատարագեն Լատինք, յորմէ և հատեալ զմասն ինչ 'ի վիմէն, եդեալ են 'ի խորանի անդ յեկեղեցւոջ 'ի վանս իւրեանց, զոր ցուցանեն։ Եւ 'ի մէջ վանուցս ջրհոր մի քաղցրահամ, որ ըստ կարծեաց բազմաց ասեն գոլ ինքնաբուղխ։ Բայց այժմ Լատինք և ս թողեալ և հեռացեալ են աստի, և աւերակ մնացեալ կայ։



Յաղագս Անապատին սրբոյն Յովհաննու Կարապետին։

Ի տանէն և 'ի վանուցն Եղիսաբեթի կէս ժամու հեռի առ արևմուտս՝ դառնալով 'ի հարաւ, է Անապատն սրբոյն Յովհաննու. ուր ճըգնէր հրեշտակն 'ի մարմնի. և է այր մի վիմափոր, և 'ի ներքոյ այրին է աւազան մի. որոյ ջուրն ակաւ բղխի 'ի վիմէն. և է ցուրտ և քաղցրահամ, և բժշկարար, և 'ի վերայ այրին գոյր եկեղեցի և վանք, որոյ նշանք որմոց երևին տակաւին։

Նաև գիտել պարտ է. զի ամենայն տէրունական Ուխտաւորք բազմութեամբ գնան յուխտ 'ի սբ ծնունդն Յովհաննու կարապետին, և 'ի ճգնութեան տեղին յԱնապատն. բայց երբեմն պատահի չգնալ սակս՝ ապստամբութեան Արաբացւոց. ուրեմն անմեղադիր լիցին ոյք՝ որոց չտան հրաման գնալոյ։



### Յաղագս աղբերն սուրբ Առաքելոյն Փիլիպպոսի։

Ի սորին Յովհաննու ծննդեան գեղջէ գնալով առ հարաւ ժամ և կիսոյ ճանապարհ, գտանի աղբիւրն սուրբ Առաքելոյն Փիլիպպոսի. որ ըստ յԱրաբացւոց կոչի Էյն Էլ Հանիէ, այսինքն՝ անուշահամ ակն։ Որոյ ջուրն ցուրտ և բարեհամ, ուր և մկրտեաց զներքինին. և Հոգին սուրբ էջ 'ի վերայ նորա. Գործ. Ը. 26. 39։ Երուսաղէմէ երկու ժամու ճանապարհ է մինչ 'ի սոյն աղբիւրն Առաքելոյն։

Ամի Տեառն 1858, Ամենապատիւ Տ. Յովհաննէս Սրբազան Պատրիարք Հայր մեր յոգնաջան աշխատութեամբ Դատաստանի օրինաւոր գրով և Հէօճէթով գնեաց բազմագումար դրամօք 'ի Վէլէճէ գիւղի Ֆէլլահից՝ զսոյն աղբիւրն Փիլիպպոսի Առաքելոյն, ուր մկրտեաց զներքինին. իսկ յամսոյն Յուլիսի. որոշեաց զսահմանն՝ հիմնարկելով զորմունս տեղւոյն՝ որ կայ 'ի վերայ ցանկալի աղբերն. և յատուկ դրամս ամփոփու-

ցեալ որ է առընթեր աղբերն, 'ի յաջմէ նորին 'ի վերայ ճանապարհին, առ որ ելանէ երկոտասան աստիճանաւ պարսպին:

Նաեւ ընկուզի մեծ ծառն՝ որ կայ յանդիման աղբերն 'ի խոնարհագոյն տեղւոջն, զորոյ շրջապատն կանգնեաց զորմս քարուկրով 'ի շնորհս Գիւղացւոց, եւ կանգնեաց 'ի նմա Դըրհապ. զի անդ 'ի ներքոյ ծառոյն գումարին սակս գործոյ գեղջն այնորիկ:

## Յաղագս Վէլէճէ գեղջն, եւ աղբերն Հայոց:

Դառնալով յաղբերէն սուրբ Առաքելոյն Փիլիպպոսի, առ հիւսիս իբր կէս ժամ, է գիւղըն Վէլէճէ. որոյ բնակիչքն են Այլազգք, իբր 140. տունք. եւ յեզեր սորին գոյ աղբիւր մի կամարակապ, զոր նորոգեաց Գրիգոր Պարոնտէր կոչեցեալն, յամի Տեառն 1635: Ուր եւ գնեաց յայնմ ժամանակի զայգիս խաղողոյ, եւ բազում ձիթաստանս: Եւ ունէր առանձին խուցմի 'ի մէջ այգեստանեայց, որոյ 'ի գնալն անդ առանձնանայր, եւ աղօթիւք խօսակից լինէր ընդ Աստուծոյ. Տես 'ի Համառ. պատմութեան, յերես 331:

Իսկ Արաբացի բնակիչք սորին, ոչ այժմ այլ 'ի վաղուց անտի յափշտակելով զայգիս եւ զձիթենիս իւրացուցեալ են, ուր չէ մնացեալ բնաւին յիշատակ Ազգիս:



## Յաղագս ծորոյ գեղջն, և բազմահամ աղբերն։

Ատափ յԵրուսաղեմէ մի ժամ է մինչ 'ի փոքրիկ գիւղն, որ կոչի Մալհա․ որոյ բնակիչքն են Այլազգ իբր հարիւր քառասուն տուն, յորում յոյժ բազում գտանի վարդ 'ի զանազան տեսակս․ և իբր կէս ժամու հեռի ընդ 'ի հարաւ 'ի վերոյ ճանապարհին Վիֆլէէմու գոյ առատաբուղխ ցուրտ և բազմահամ աղբիւր մի, յորմէ ֆռանկք միշտ բերեն ջուր 'ի քաղաքն․ զոր կոչեն Արտաքացիք Էյն Եալօ։



# ՍՏՈՐԵԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՐԱՒԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

### Յաղագս սուրբ Փրկչի վանաց մերոյ ։

Եղեալ ընդ դուռն Դաւթի, զոր Փրկչի դուռն կոչեմք, և է 'ի հարաւակողմն քաղաքիս Երուսաղեմի ։ Հանդէպ դրանն է սուրբ Փրկչի վանքն մեր, և է բարձրաբերձ պարսպաւ, և միով երկաթի դրամբ ամրացեալ. որ ունի առ հիւսիս, և մտանէ ընդ հարաւ ։ Ի մտանելն 'ի ներքս չորս աստիճանաւ իջանէ 'ի գաւիթն. արոյ երկայնութիւնն է 30 ոտնաչափ, և լայնութիւնն 24. և երեք աստիճանաւ ելանէ 'ի դուռըն Եկեղեցւոյն, 'ի ձախմէ 'ի յետուստ դրանն են գերեզմանք հանգուցեալ Պատրիարքաց ։

Աւագ խորանի վէմն է իսկ կափարիչ վէմ կենսատու սրբոյ Գերեզմանին Քրիստոսի, որ յատուկ պարգև իմն շնորհեալ է Ազգիս մերում 'ի Տեառնէ. որոյ երեքին կողմանքն բաց են և տեսանին, որ հոգւոյ փափագանօք համբուրեալ պատուի 'ի մէնջ 'ի հաւատացելոցս, յորոյ վերոյ և կատարի ահաւոր խորհուրդ սուրբ Պատարագին ։

Ի ձախմէ Աւագ խորանին է Երկրորդ բանտն Քրիստոսի, որ է յոյժ նեղ և անձուկ փոքրագոյն մատուռ մի, և 'ի նմա սեղան Պատարագամա-

տոյց ։ Այլ ՚ի յետուստ Ա՛ ադ․ սեղանոյն է պահարան՝ և սեղան մի, և յարևմտեան յանկիւն եկեղեցւոյն է յատուկ պահարան մի ևս ։ և եկեղեցին է պայծառ, պատկերազարդ և հրաշակերտ հօյակապ և վայելչագեղ ։ Սա է տուն Կայիափայ՞ քահանայապետին ։ զի ՚ի տանէ Աննա քահանայապետին ածաւ Փրկիչն մեր աստ ․ և մտեալ ՚ի բանտ, ապտակեցաւ և ձաղեցաւ, զի ծածկէին զերեսս նորա և՛ տանջէին ․ հարցանէին զնա և ասէին, մարգարէաց՝ « Ո՞վ է որ եհարն զքեզ »․ Մատթ․ ԻԶ․ 57․ 75 ։ Մարկ․ ԺԴ․ 53․ 72 ։ Յովհ․ ԺԸ․ 24․ 27 ։

Աստ Պետրոս երիցս ուրացաւ զՏէրն, ո՛չ գիտեմ զնա՝ և ո՛չ ճանաչեմ ասելով․ Ղուկ․ ԻԲ․ 54 ։ Աստ կապեցին զարարչագործ Փրկիչն մեր Յիսուս ՚ի քարեայ սիւնն, և ուժգին հարկանէին զնա ։ Այլ ՚ի մէջ գաւթին առ արևելս գոյ խորան մի, յանուն սուրբ Չարչարանաց, որոյ բեմըն և սեղանն է կճեայ, ՚ի ներքոյ նորին ևս է կճեայ քանդակածոյ քարամբք յօրինեալ, և ՚ի հարաւ կուսէ երկաթեայ ճաղիւ և դրամբ ամրացեալ ։

Յարևմտակողմն ՚ի յետուստ երկաթի դրան է սենեակ մի, սկսեալ մինչ ՚ի հարաւային անկիւնն են երեքին կամարք, յորոց վերոյ են սենեակք վեց ։ Իսկ ՚ի հարաւակողմն գաւթին երեքին կամարքն են գերեզմանք Պատրիարքաց ․ և ՚ի ներքս արևելեան կամարին են կըրկին սենեակք, և կրկին ջրհորք, և չորեքին կամարք ևս գոն ։ Այլ է քարեայ սանդուխ մի, ընդ

որ ելանէ քսաներկու աստիճանաւ 'ի վեր , յարում են երկքին սենեակք , որոց տափին առ Հարաւ և առ արևմուտս երկաթեայ ճաղկեգեղեցկացեալ . որք ամենեքեան 'ի Հիմանց Նորոգ շինեցան յաւուրս Տ. Կիրակոսի Արքեպիսկոպոսի Պատրիարքի , յամի Տեառն 1849 :

Արտաքոյ սուրբ Փրկչի վանուցս 'ի Հիւսիսակողմն է պարտէզ և ձիթաստան մեր , յարևմտակողմն է գերեզմանատունն մեր . և 'ի մէջ մերոյս է Լատինացն , բայց յատուկ և անխառն , որ ունի նշան ցածագոյն որմն . այլ գիտելի է զի 'ի Թիւ Հայոց՝ ՌՄԻՉ , Յուլիսի 26 . Համամ օղլու Մէհմէտ փաշայն եկն և շրջէր 'ի սուրբ Քաղաքիս Երուսաղէմ . և 'ի սոյն ամսոյն 29 Յուլիսի , յաւուր շաբաթու բազում կաշառ ընկալեալ 'ի ձեռաց Լատինաց , վասն որոյ զմեր սուրբ Փրկչի գերեզմանատան մասն յափշտակեալ 'ի մէնջ ետ նոցա . յորում նախ քան զայն չէր և ոչ գերեզման Լատինաց անդ : Ի Հարաւակողմն 'ի մէջ մերոյս գերեզմանատանն է փոքրիկ տեղի մի , որ պատեալ կայ ցած և անշուք որմով . որ է գերեզման սրբոյ վկային Բագոսի . զորմէ գրի 'ի Վարս սրբոց , ԺԲ . հատոր , յերես 74 : Յայսմաւուրք , Դեկտեմբերի 16 և 18 :

Բագոս աբեղայ էր՝ ասէ , 'ի կողմանց Երուսաղէմի 'ի ժամանակս Կանդակիայ՝ և մօրն Եւռինեայ : Սորա եօթն եղբարք էին , հայր և մայր սոցա գործան յայլազգութիւն . 'ի մեռանել Հօրն՝ մայր մանկանց ուսոյց նոցա անգրէն ըզքրիստոնէութիւն՝ նա այսինքն Բագոս չոգաւ

Ի վանս սրբոյն Մարկոսի, հռչակաւորեալ միաբանու-ցառ տառանելութեամբ, և կոչեցեալ Բադա-նաւ մկրտեաց զՏնդեռական եղբայրս իւր. իսկ վեց-երորդն՝ որ միայն յայլազգութեն՝ որ կոչէր Դա-հակ կամ Դեղլառ՝ մատանեաց զՔաղաքս, զոր կա-լեալ այլազգեաց գանձուք և Թշնամանօք տարա-ւա Ամիրայն, որ և եւս ապառակէր զնա. իսկ նա-մէր՝ Ալէլաւիս. և յետ բազում խաչատանջա-նաց՝ հատին զգլուխ նորա. զոր բարձեալ քրիս-տոնէից՝ Թաղեցին զնա հանդէպ սրբոյն Սիոնի ստորև Փրկչի վանուցս, և ստորև Տեղւոյն Ննջ-ման սրբուհւոյ Կուսին յարևմտից կուսէ: Բայց 'ի քրիստոնէից ոչ ոք մտանէ ընդ այն. բանզի 'ի ձեռս այլազգեաց է, և մատանեքն փոխանակաւոր:

Այլ 'ի հարաւակողմն գերեզմանատանն մեր է գերեզմանատունն ազգին Անգղիացւոց, զոր յամի Տեառն 1836, գնեցին անդ ագարակ մի, և կանգնեցին շուրջանակի պարիսպ, և միով դրամբ ամրացուցին. որոյ երկայնութիւնն 36 քայլ, և լայնութիւնն 25:

Ի մէջ գերեզմանատան Յունաց և սրբոյն Սիոնի՝ է Տուն և Տեղի Ննջման սրբոյ Կուսին, յորում եկաց յետ համբառնալոյն Քրիստոսի ա-մըս չորեքտասան. աստ էր յառաջագոյն վանք, և է յարևմտակողմն սրբոյն Սիոնի իբր 20 քայլ հեռի 'ի նմանէ, և մինչև ցայսօր մնացեալ են քարեղէն նշանք խաչի 'ի յորմն, որք պատուին 'ի մէնջ:

Ոմանք ասեն՝ թէ աստ եղև Սկիզբն նիւթա-կան Եկեղեցւոյ. յորում գումարեալ լինէր զըն-

ուորեալ եկեղեցին Քրիստոսի 'ի յաղօթս. իսկ այլք թէ 'ի Վերնատանն եղև սկիզբն, և ինձ հաւանական թուի այս, այսինքն Վերնատունն:

Յետ ննջման սրբոյ կուսին՝ մինչ Առաքեալք բարձեալ դագաղաւ զմարմին Տիրամօրն տանէին 'ի Գեթսեմանի. ընդ առաջ ելին անօրէն Հըրէայք, և Ռաբունին Սոփոնիա ձգեալ զձեռն իւր 'ի դագաղն, կամէր յերկիր արկանել. անդէն և՛ անդ գօսացեալ չորացաւ ձեռն նորա, և այս տեղի է յարևելս սուրբ Փրկչի վանուց յանկիւնն ագարակին. ուր կայր հատոր մի քարեայ սիւնն, զոր բարձեալ 'ի մէնջ եդաւ առընթեր մերոյս ատրճանաց սանդխոյն, ընդ որով ելանէ յարտաքին հրապարակն սուրբ Փրկչի վանուց մերոց:

Միտքնի Աւագ դուռն հայի 'ի հիւսիս՝ և 'ի Փրկչի վանքն, որ 13 քայլ հեռի 'ի դրանէ աստ գոյ ջրհոր մի՝ ուր Առաքեալք արկեալ վիճակս յետ համբառնալոյն Քրիստոսի, գնացին յիւրաքանչիւր աշխարհս. «Նոքա ելեալ քարոզեցին ընդ ամենայն երկիր Տեառն գործակցութեամբ». Մարկ. ԺԶ. 20: Ղուկ. ԻԴ. 47:



## Յաղագս Սիոնի և սուրբ Վերնատանն ։

Ի հարաւակողմն սուրբ Փրկչի վանուցն է Սիոն և Վերնատունն, որ ընտրեցաւ 'ի Տեառնէ 'ի հնումն, յոր հանգեաւ Տապանակն Աստուծոյ 'ի ձեռն մարգարէին Դաւթի. զորմէ գրի, Ա. Մնաց. ԺԵ. 1. « Եւ պատրաստեաց զտեղի Տապանակին Աստուծոյ, և արար նմա խորան »։ Անդ ԺԶ. « Եւ տարաւ 'ի ներքս զտապանակն Աստուծոյ »։ Բ. Մնաց. Զ. 17. « Եւ բերին ըզտապանակն Տեառն, և եդին 'ի տեղւոջ իւրում 'ի մէջ խորանին, զոր եհար նմա Դաւիթ »։

Նախ անդ Դաւիթ հանգոյց զՏապանակն Աստուծոյ 'ի խորանի իւրում. և ապա Սողոմոն շինեաց զտաճարն Սրբութիւն սրբութեանց. հանեալ 'ի Սիովնէ անտի զՏապանակ ուխտին 'ի քաղաքէն Դաւթի, նա է Սիոն ։

Ըստ Լատինացւոց՝ սա էր տուն Յովհաննու՝ որ և կոչեցաւ Մարկոս, որ մի է յեօթանասունն և երկու աշակերտացն Քրիստոսի ։ Եւ ոմանք թէ՝ սա էր տուն բարեպաշտ Նախարարին Յովսեփայ Արեմաթացւոյն. Մարկ. ԺԴ. 15 ։ Ղուկ. ԻԲ. 12 ։

Ուր և առաքեաց Քրիստոս զերկուս յաշակերտաց իւրոց զՊետրոս և զՅովհաննէս պատրաստել զՋատիկն, յոր եկն 'ի Վերնատունն ուտելով զգառն ընդ բաղարջին և ընդ եղերգին, աւարտեաց զհին օրէնսն ։ Ապա առեալ զկոնքն՝ էարկ ջուր անդ, և լուաց զոտս աշակերտացն՝ ցուցանելով նոցա և տպաւորելով 'ի նոսա զխո-

տարեալ խոնարհութիւն. «Ոչ եկի [illegible], պաշտօն առնուլ, այլ պաշտել»: Նա յետ այնորիկ բազմեցաւ ի սեղան ընդ Առաքելովն՝ առեալ զհաց և զգինին ի ձեռս իւր գոհաբանելով ի մարմին և յարիւն իւր կենդանարար. որպէս գրեն, Մատթ. ԻԶ. 26: Մարկ. ԺԴ. 22: Ղուկ. ԻԲ. 14: Յովհ. ԺԳ. 13: Յառնէ յընթրեաց անտի և դնէ զհանդերձն, և առեալ զգենջակն մի-սփածաւ, և այլն:

Նա անկաւ Յուդա յառաքելութեան կարգէ. և փոխան նորա ընտրեցաւ վիճակաւ Մատթիաս յԱռաքելութիւն. Գործ. Ա. 25:

Նա էջ Հոգին սուրբ Աստուածն յԱռաքեալսն որք լցան Հոգւովն սրբով. Գործ. Բ. 1. 21:

Նա յետ գալստեան Հոգւոյն սրբոյ՝ Յակոբոս եղբայր Տեառն, որ և առաջին Պատրիարք Երուսաղէմի, հաստատեալ կանգնեաց Խորան սեղան. և յետ Քրիստոսի անմիջապէս նա սկզբնաւորեաց կատարել զխորհուրդ սուրբ Հաղորդութեան՝ ըստ պատուիրելոյ Տեառն, զայս արարէք առ իմոյ յիշատակի. վասն որոյ ասի յաղօթսն Պայծառակերպութեան. «Սեղան նոր. պատարագ նոր, և մատուցող պատարագին նոր»



## Յաղագս Վերնատան Սիովնի ։

Ընդ մտանել յաւագ դուռն Սիովնի, տասն և վեց աստիճանաւ ելանէ 'ի մեծ Վերնատունն. որոյ երկայնութիւնն յարևելից յարևմուտս է 61 ոտնաչափ, և 'ի հիւսիսոյ առ հարաւ 49 ։ Որոյ դուռն է առ հիւսիս, ուր եկեր Քս զզատն հին պասեքին. ապա լուաց զոտս աշակերտաց, և յետոյ հաստատեաց զսուրբ խորհուրդ Հաղորդութեան ։ Դոյ անդ 'ի Վերնատանն քարեայ սանդուխ առ յարևմուտս, ընդ որ իջանէ քսան երեք աստիճանաւ, դառնալով յարևմուտս տեղի մի է, որոյ դուռն մտանէ յարևելս ; ուր են գերեզմանք Դաւթի և Սողոմոնի և Բերսաբէի. 'ի հիւսիսոյ առ հարաւ 51 ոտնաչափ, և լայնութիւն 20. տեղիս այս ունի և այլ ճանապարհ, որ ուղղակի 'ի դաւթէ անտի մտանէ ընդ այն ։

Իսկ միւս փոքր Վերնատունն է 'ի ներքոյ կապարամած գմբեթին՝ ուր Հոգին սուրբ էջ. և առ արևելս մեծի Վերնատանն, տասն աստիճանաւ ելեալ մտանէ 'ի տեղին, յորում դոյ շինեալ գերեզման Դաւթի 'ի վերայ իսկ բուն գերեզմանի նորա՝ որ 'ի ներքոյ, ըստ որում չէ հնար քրիստոնէի մտանել 'ի բուն գերեզմանն Դաւթի և Սողոմոնի, ուր թաղեցան. զի աստ բերեն զոմանս յՈւխտաւորաց առնուլ զդրամս. բայց վտանգաւոր է մտանել քրիստոնէի 'ի Սիոն ։

Ի հարաւակողմն Սիոնի քսան մղոնաւ, կամ եօթն ժամու հեռի՝ է ձորն Գամալիէլի, ուր

նախ Թաղեցաւ մարմին որբոյն Ստեփաննոսի ։ Ապա անտի փոխադրեցաւ հանդիսիւ ՚ի Սիոն, և անտի յայլուր ։



## Յաղագս Ակեղդամայի, որ է ագարակն Բրտի ։

Իջանելով ՚ի լեռնէն Սիոնի առ արևմուտս ՚ի ձորն, յաջմէ է տեղի զղջման առաքելոյն Պետրոսի. զոր գնեցին Անգղիացիք՝ որ էր աւերակ եկեղեցի. և շինեցին զայն հոյակապ տուն, յամի Տեառն 1852 ։ Անտի իջեալ առ հարաւ, և մըտեալ յարևելս կոյս, անցեալ յայնկոյս ձորոյն, անդ է ագարակն Բրտի՝ և Ակեղդամայ. ուր Հրէայք Թաղեն զեկսն և զօտարսն իւրեանց ։ « Խորհուրդ արարեալ, գնեցին այնու զագարակն Բրտի ՚ի գերեզման օտարաց. վասն այնորիկ կոչեցաւ ագարակն այն՝ Ագարակ արեան մինչև ցայսօր »։ Մատթ. ԻԷ. 7 ։

Ասի յաւանդութենէ՝ թէ Դշխոյն Հեղինէ շինեաց յայնկոյս ձորոյն տուն մի, որոյ երկայնութիւն է 62 ոտնաչափ. և լայնութիւնն 47. և ունի յառաստաղն եօթն լուսամուտս, և մեծագոյն պատուհան մի, ընդ որ իջուցանեն ՚ի վերուստ ըզմեռեալսն, և է սեպհական Ազգիս մերոյ. զի ամ յամէ տամք վճարէն, բայց այժմ աւերակ է և անգործ. գրէ լատին Մարինոս՝ թէ ՚ի քսան և չորս ժամու ՚ի մոխիր դարձուցանէ զդին, եթէ Թաղեսցի ՚ի հող, այս կամ բնական զօրու-

թեւամբ հողոյն է, և կամ դերբնական ոքան-չելեօ երբեմն եղև այնպէս. սոյն տեղւոյն աւեմք ճառներ: Պատմի թէ Դուշ ոյն Հեզինէ յայս հողոյ տարաւ 'ի Հռոմ նաւուք. և եա ընուլ մերձ լերինն Վատիկան, և այն կոչեցաւ գերեզմանատուն. և 'ի ջոցի քսան և չորս ժամու 'ի հող լուծանէ զմարմինն, թողլով միայն զոսկերսն:

Մերձ առ ճառներն մեր՝ սակաւ մի զառ 'ի վայր, են կրկին այր. ձևացեալ իբր մատուռ. և երևին տակաւին նշանք պատկերաց յորմն, զմանէ Լատինք ասեն՝ թէ աստ առանձնացան Առաքեալքն զերիս աւուրս 'ի գիշերի չարչարանաց Քրիստոսի Տեառն մերոյ: Եւ Յոյնք՝ թէ սրբոյն Ոնուփրիոսի է այրն այն:

Մերձ որոյ կայ ճառներն Յունաց, բայց լադրիցն փոքր և անշուք, ուր գան քանի մի ձիթենիք միայն:



## Յաղագս Աբբայ Ջրհորոյն:

Իջանելով անտի 'ի ձորն, յորում է մեծ և խորագոյն ջրհոր մի, զոր մեք Աբբայ հոր ասեմք. և Լատինք ջրհոր Նեեմիայ, որոյ հեղինակըն չէ յայտ 'ի սուրբ գիրս:

Եւ 'ի ժամանակս գերութեան Բաբելացւոց, առին քահանայք զհուր տաճարին գաղտ, և տարեալ թագուցին 'ի խորշս իմն անջուր ջըրհորոյ միոյ. ապա յաւանդութէ՝ թէ սա է ջրհորն

այն. և յետ եօթանասուն ամաց 'ի դարձ գերութեանն՝ առաքեաց Նեէմի զորդիս քահանայից որոնել զհուրն, որք եկեալ ոչ գտին անդ հուր. այլ ջուր դանդաղամած մախրով, զոր առեալ միոցաւ՝ բերին առ Նեէմի, և 'ի ժամ ողջակիզաց հրամայեաց Նեէմի ցանել զայն 'ի վերայ փայտից. 'ի ջեռնուլ արևուն բորբոքեցաւ իսկ և իսկ հուր անտի, և այրեաց զողջակէզն. Բ. Մակ. Ա. 19. 21: Յեղանակս ձմեռան 'ի յաճախել անձրևաց՝ ջուրն ջրհորոյս դիմէ զառ 'ի վեր, և հոսի իբրև զուղխս. և ասի՝ թէ է նշան բարութեան կամ առատութեան քաղաքիս, և յայնմ տարւոջ որ ոչ հոսի ջուրն արտաքս, է նշան նուազութեան ամենայն բարեաց: Որպէս և Նեղոս գետն՝ որ յԵգիպտոս, եթէ առատանայցէ՝ է նշան առատութեան. եթէ նուազիցի՝ նուազութեան:



## Յաղագս գերեզմանի Եսայեայ մարգարէին:

Դառնալով յԱբբայ ջրհորոյն առ հիւսիս, 'ի վերայ ճանապարհին դոյ թթենի մի պատեալ որմով, բարձր իբր երկու կանգնաչափ, ուր աղօթեն այլազգիք: Աստ ասի սղոցեալ Եսայի մարգարէն 'ի Մանասէ արքայէն, և աստ թաղեցաւ հանդէպ ականն Սելովմայ ներքնոյն, Յայսմաւուրք Մայիսի 19:

Որոյ հանդէպ 'ի հիւսիսակողմն. դոյ աղբիւր

մի, որոյ Ջուրն է աղբերն Սելովմայ, որ 'ի հնումն կոչիւր Աղբիւր վիշապի. իսկ այժմ Աղբիւր ս̃բ Կուսի: Երաբացիք կոչեն Էյ՛ն ըլ սայրէ, այսինքն աղբիւր Տիրուհւոյն:

Քանզի ասի աւանդութեամբ՝ թէ ս̃բ Կոյսն Մարիամ, գայր երբեմն յայս աղբիւր առ 'ի լուանալ զհանդերձսն. և կարծի՝ թէ գայր աստ եկեղեցի 'ի պատիւ սուրբ Կուսին. զի տակաւին երևին մինչև ցայսօր հիմունք շինուածոց:



## Յաղագս աղբերն Սելովմայ:

Աստի գնալով առ հիւսիս 'ի Ստորոտ լերինըն, ուր է աղբիւրն Սելովմայ. տասնևվեց աստիճանաւ իջանէ յառաջին կամարն, և տասնև չորս ևս գնայ յերկրորդ կամարն, և տասնև հինգ աստիճանաւ իջանէ 'ի ջուրն, որ բղխէ 'ի ներքոյ աստիճանացն. ասի յորժամ Ռափսակ պաշարեաց զԵրուսաղէմ, և մինչ նեղէր ժողովուրդն 'ի ծարաւոյ. աղօթիւք Եսայեայ առաքեաց Աստուած զջուրս առատահոս. Յայսմաւուր, Մայիսի 19: Ջուրս այս ոռոգանէ զպարտէզս գեղջն Սելովմայ, որ կայ առ արևելս նորա:

Աստ առաքեաց Քրիստոս զկոյրն, լուանալ զաչս 'ի կաւոյն, որ ընկալաւ զլուսաւորութիւն աչացն. Յովհ. Թ. 1. 7:

Եւ 'ի գլուխ լերինն Սելովմայ երևին աւերակք մեծամեծ շինութեանց, ուր Սողոմոն կանգ-

նեաց զապարանս կանանց և զատճառս կոց· զոր քակեալ կործանեաց Յովսիա արքայ, և քն-կէց զհողն 'ի բեթէլ. Դ. Թագ. ԻԳ. 4։

## Յաղագս խաչին՝ որ 'ի վերայ Հեղեղատին Կեդրոնի։

Ի Երուսաղէմ գնացեալ ընդ ձորն դէպ 'ի հիւսիս՝ տեսանի կամուրջ, զոր նորոգեաց Գրի-գոր Հայրապետն Շղթայակիր. 'ի Թուին Հայոց ՌՃՀԷ, յարևելս նորին է ջրհորն մեր և մերձ նո-րին փոքրիկ պարտէզ վանուցս. յորում գոն քա-նի մի ձիթենիք։

Շաւիղ աստի տեսանի տպաւորեալ 'ի վէմն, որ 'ի ներքոյ կամրջին. Լատինք ասեն թէ՝ 'ի գի-շերի չարչարանաց իւրոց կալան զՏէրն 'ի պար-տիզին՝ աստի տարին և մուծին ընդ դուռն Սի-քիւսաց առ Աննա քահանայապետն. խիճք հե-ղեղատին կակղացան 'ի ներքոյ ոտից նորա, և շաւիղ ոտիցն տպաւորեցան անդ 'ի վէմին։ Այլ մեք ասեմք, յորժամ յարեան Հրէայք 'ի վերայ արդարոյն Յակոբայ Տեառնեղբօր յամի Տեառն 60 կամ 62 կամ 63. և արկին զնա յաշտարակէ անտի 'ի վայր. ուր թափիչք հարին զգլուխ նո-րա՝ և սպանին զերանելին, են շաւիղք ոտից նորա. Յայսմաւուր, Դեկտեմբերի 24։



## Յաղագս գերեզմանին Զաքարիայ, կամ ըստ մեզ Անգեայ և Զաքարիայ։

Սակաւ ինչ հեռի ՚ի կամրջէն առ արևելս, տեսանի վիմատաշ արձան մի քառանկիւնի և սրածայր. զորմէ ասէ Լատին պատմիչն՝ թէ անդ թաղեցաւ Զաքարիա որդին Բարաքեայ, որ սպանաւ ՚ի մէջ Տաճարին և սեղանոյն. Մատթ. իԳ. 35։ Բ։ Մնաց. իԴ. 20։ Իսկ մեք թէ՝ են գերեզմանք Անգեայ և Զաքարիայ, որք թաղեցան աստ։



## Յաղագս այրին Յակոբայ Տեառնեղբօր առաքելոյն։

Յաջմէ տրջանիս գոյ վիմափոր այր մի բարձր յերկրէ, որոյ գաւիթն հայի ՚ի վերայ ձորոյն և կամրջին. և յեցեալ կայ ՚ի վերայ երկուց փոքր քարեայ սեանց, և լուսամուտքն այրին՝ հային ՚ի մէջ գաւթին. գրի թէ՝ աստ առանձնացաւ եղբայր Տեառն յաւուրս չարչարանացն Քրիստոսի, երդմամբ ոչ ուտել և ոչ ըմպել, մինչև տեսանիցէ զՏէրն յարուցեալ ՚ի մեռելոց. վասն որոյ յետ յարութեանն աստ երևեցաւ նմա, եդ առաջի նորա հաց և սեղան, ասելով նմա. կե՛ր եղբայր զհացս, զի որդին մարդոյ յարեաւ ՚ի մեռելոց. և այսպէս մխիթարեաց զնա։ Յայսմաւուր, Դեկտեմբերի 28։

Բայց այժմ զայս տեղի գոմ ոչխարաց են արարեալ Արաբացիք։

## Յաղագս արձանին Աբիսողոմայ ։

Հանդէպ կամրջին յարևելս՝ է արձանն Աբիսողոմայ վիմատաշ քառանկիւնի լուսամոք մինչ 'ի բաւիղսն , այսինքն սոլսին . այլ 'ի վերն մեծամեծ քարամբք կերտեալ 'ի ձև գմբեթի . և 'ի գլուխն միահատոր քար իբրև զսիւն ։ Ար յաւանդութենէ՝ թէ 'ի վերայ նորա գոյր ձեռըն Աբիսողոմայ . ըստ Լատին պատմչին՝ է գերեզման Աբիսողոմայ . վասն զի արգելեալ էր յիսրայէլի կանգնել արձան , եթէ ոչ 'ի վերայ շիրմի ։

Այլ 'ի սուրբ Գիրս ասի . «Աբիսողոմ մինչ դեռ կենդանի էր , կանգնեաց իւր արձան . և կանգնեաց 'ի յաբին զարձանն 'ի հովիտս թագաւորաց . քանզի ասաց թէ չիք իւր որդի , որ յիշեսցէ զանուն նորա , և կոչեաց զարձանն յիւր անուն , և կոչեաց զնա ձեռն Աբիսողոմայ մինչև ցայսօր » . Բ . Թագ . ԺԸ . 18 ։



## Յաղագս գերեզմանին Յովսափատու արքային ։

Մերձ արձանին Աբիսողոմայ յաջմէ յանկեանն՝ որ առ յարևելս , ութն ոտնաչափ հեռի 'ի նմանէ . է վիմափոր այր մի յոյժ մեծագոյն , որոյ դուռն . մեծ և գեղեցիկ քանդակեալ արուեստիւ ։ « Եւ ննջեաց Յովսափատ ընդ հարս իւր , և թաղեցաւ 'ի քաղաքի Դաւթի հօր իւրոյ . վա-

սըն այսօրիկ կոչեցաւ ձոր Յովսափատու, որ յառաջն ձոր Կեդրոնի ». Գ. Թագ. ԻԲ. 31։

Իսկ յամի Տեառն 1854, ՚ի Սեպտեմբեր ամսոյն տասն և ինն, Հրէայք փակեցին մեծամեծ քարամբք զդուռն դրոյն. և կանգնեցին առաջի նորա որմ՝ հաստատուր վիմին, և արարին անանց զդուռն։



Յաղագս ձորոյն Կեդրոնի և Յովսափատու, որ և ձոր՝ Դատաստանի։

Ոչ միայն յանուն Կեդրոնի և Յովսափատու կոչեցաւ ձորն, այլ և ձոր Դատաստանի, ուր դատելոց է արդար դատաւորն Քրիստոս զամենայն մարդիկ յաւուրն յետնում. ըստ որում ասէ, « Եւ ժողովեցից զամենայն ազգս, և իջուցից զնոսա ՚ի ձորն Յովսափատու. և դատեցից զնոսա անդ վասն ժողովրդեան իմոյ Իսրայելի... Զարթիցեն և ելցեն ամենայն ազգք ՚ի ձորն Յովսափատու. զի անդ նստայց դատել զամ ազգս շուրջանակի ». Յովել. Գ. 2. և 12։ Եւ Երեմիա ասէ, « Եւ կացցեն ոտք նորա յաւուր յայնմիկ ՚ի վերայ լերինն Ձիթենեաց »։

Յաղագս ձորոյն Կեդրոնի. Տես. Բ. Թագ. ԺԵ. 23. Գ. Թագ. Բ. 27. Նէր. ԺԵ. 13. Երեմ. ԼԱ. 40։

Հեղեղատս Կեդրոնի գնայ յարեւմտից յարեւելս. մինչ ՚ի ծովն աղի, որ է ծովն մեռեալ։

## Յաղագս վանուց սրբոյն Սաբայի ։

Դառնալով յետս առ Աբբայ Ջրհորն, անտի ուղղակի իջանէ 'ի ձորն դէպ 'ի հարաւ, միտելով սակաւ մի յարևելս. երեք ժամու հեռի է վանք սրբոյն Սաբայի, 'ի կէս ճանապարհին գոյ աւերակ վանք մի յանուն Թէոդոսիոսի. և գիւղ և լիճ. անցանելով ընդ այնս՝ գնայ անդ. ուր կառուցեալ կայ յայսկոյս ձորոյն 'ի վերայ կէսոյ լերինն, և 'ի ներքոյ նորա է խորագոյն ձոր, և 'ի ներքոյ վանուցն այր մի, ուր գոյ աղբիւր բարեհամ, կաթեալ 'ի վիմէ, և վանքն լայնադիր քարաշէն, և ունի զերկու բուրգս՝ վասն պահպանութեան վանուցն. և ունի եկեղեցի մի մեծ՝ գմբեթեայ յանուն Սաբայի, Բ. յանուն Քառասուն մանկանց, Գ. սրբոյ Կարապետին Յովհաննու, Դ. սրբոյն Գէորգայ, Ե. Յովհաննու Ոսկեբերանի, Զ. սրբոյն Նիկողայոսի, Է. Յովհաննու Դամասկացւոյն, Ը. սրբոց Առաքելոց, որ 'ի ձեռս մեր էր, բայց այժմ խափանեալ է բնաւին ։ Սա յառաջագոյն ասի շինեալ եղև 'ի Սաբայէ, և ապա նորոգեցաւ 'ի կիռ Մանուէլ կայսերէ, պարսպաւ ամրացեալ, և ունի բազում սենեակս, և սեղանատունս և այլն ։

Աստ երբեմն նահատակեալ են Արաբացիք զբազում կրօնաւորս ։ Աստ եկաց Յովհան Դամասկացի երևելի վարդապետն Յունաց. սա արար զՃարտական նոցա, և զայլ երգս յարութե, և զգիրս Յունաց եկեղեցւոյ ։ Սա էր յառաջ վանք ազգին Սրոֆից. բայց այժմ է 'ի ձեռս

Յունաց, և է տեղի խստակրօն միաբանից Յունաց, և բարւոք կարգաւորեալ:

Իսկ արտաքոյ վանուց 'ի հարաւակողմն գոյ գմբէթ մի. զորմէ ասեն գոլ տեղի ծննդեան Յովհաննու Դամասկացւոյն. անդ է՛և գերեզմանն Սաբայի, որ յամի Տեառն 531 փոխեցաւ առ Տէր:



# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԻՒՍԻՍԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

---

### Յաղագս ագարակին Ագրիպպայ, ուր ննջեաց Աբդիմելէք զամս վաթսուննուաթ:

Արտաքոյ պարսպի քաղաքիս սրբոյ Երուսաղէմի հանդէպ դրանն Դամասկոսի՝ յաջմէ կողմանէ, երևի բարձր վէմ մի, յորոյ վերայ են գերեզմանք այլազգեաց. և 'ի ներքոյ նորա գոյ տուն մի, որոյ յաջմէ է այր մի վիմափոր, 'ի ձախմէ այրին գոն և քանի գերեզմանք Տաճկաց. Շրջապատն պարսպապատ, և միով դրամբ ամրացեալ, յորում նստի փէրճէլ. 'ի ներքս 'ի վերայ ճանապարհի այրին հովանի ունին թզենիք, ստ է ագարակն Ագրիպպայ, ուր ննջեաց Աբդիմելէք աշակերտ Երեմիայի զամս վաթսուն և ութ. որպէս գրի Յայսմաւուր, Մայիսի մէկ:

Քանզի 'ի ժամանակի գերութեանն Բաբելացւոց, առաքեաց զնա մարգարէն, բերել թուզ վասն հիւանդաց, զոր առեալ կթոցիւ թուզ, և եդ 'ի սնարս իւր, և ննջեաց զամս վաթսուն և ութ. և իբրև զարթեաւ 'ի քնոյ, եգիտ զթուզն դալար:

Վասն որոյ ասի, «Ես փրկեցից զքեզ յաւուր յայնմիկ՝ ասէ Տէր. և ոչ տաց զքեզ 'ի ձեռս արանցն, յորոց դու երկնչիս յերեսաց

նոցա ։ զի փրկեցուցանելով փրկեցուցից զքեզ ․ և ՚ի սուր մի՛ անկցիս ․ և եղիցի անձն քո ՚ի գիւտըս , զի յուսացար յիս ո ․ Երեմ ․ ԼԹ ․ 17 , 18 ։

Իսկ յամի Տեառն 1852 , Նորոգեցին զայրն քարուկիր յերկուսին կողմունս ․ և սպիտակացուցեալ միով յատուկ դրամք ամրացուցին ․ Թէպէտ տեղիս այս չէ՛ ուխտատեղի , բայց վասըն նշանաւոր գոլոյն գրեցաք ՚ի տեղեկութիւն ․ և եթէ հանդիպիցի ումեք գնալ անդ ՚ի զնին , խարիւ պահանջէն քանի մի դրամս ․

## Յաղագս գերեզմանաց Թագաւորաց ։

Ի հիւսիսակողմն սուրբն իեր երեք հարիւր քայլ հեռի , գոյ վիմափոր այր մի ․ որոյ առաջի դրանն փոքրիկ բակ մի , որ վիմօք փակեալ կայ որպէս պարիսպ , և ծառ մի ՚ի նմա ․ և դրունն այրին ճարտար արուեստիւ քանդակեալ ․ սա է գերեզմանատուն Թագաւորաց ․ ՚ի մէջ առաջնոյ մեծի այրին գոն հինգ այր ․ յորս գոն երկու երկու գերեզման վիմափոր յաջմէ և յահեկէ ․ բայց ՚ի ներքս խաւարչուտ է յոյժ և խոնաւ , յորս գըտանին բազում գիշերահաւք ․ ուր ՚ի զնին գնացողք քանի մոմս ՚ի վառ ունելով ՚ի ձեռին՝ մըտանեն յայնս , և բազմիցս ՚ի խոնաւութենէն շիջանի լոյսն որ ՚ի ձեռս՝ և մնան ՚ի խաւարի , և տիրէ նոցա երկիւղ ․ զայս գրեմք ՚ի գիտութիւն , զի մի՛ ոք ագիտաբար մտեալ անդ միա-

սկայի. ուստի ասեմք՝ թէ չէ՛ հարկ բնաւին գնալ անդ։

Յաղագս Ջէլճէլէ և Սուքար Գիւղից, և Սամարիա քաղաքին, որ է Նապլուս։

Յերուսաղէմէ մինչ 'ի գիւղն Ջէլճէլէ է երեք ժամ, յորում գոյ հնագոյն աւերակ եկեղեցի, և ջուր քարեհամ. և ծառաստանք՝ և այգի։ Անտի մինչ 'ի գիւղն Սուքար է եօթն ժամ. յաջմէ ճանապարհին է աղբիւր. զորմէ գրէ, Յովհ. Դ. 4. 16. «Եւ Յիսուս վաստակեալ նստէր 'ի վերայ աղբերն, և էր ժամ վեցերորդ. անդ էր ջրհորն, գայ կին մի 'ի Սամարիայ հանել ջուր»։ Յիսուս Փրկիչն մեր խնդրեաց ջուր 'ի կնոջէ Սամարացւոյն, որում խոստանայ ըմպել ջուրն կենդանի. և կինն խնդրէ 'ի նմանէ, զի մի երբէք ծարաւեսցի յաւիտեան։

Անտի երկու ժամաւ հասանի քաղաքն Սամարիա, որ է Նէապօլիս. որ այժմ կոչի Նապլուս։ Նա էր արքայանիստ քաղաք Թագաւորացն Իսրայէլացւոց. որոյ օդն մաքուր, և ջրաւէտ և բարեբեր յոյժ։ Նա գոյր և ազգիս Հայոց եկեղեցի. բայց այժմ 'ի ձեռս այլազգեաց է։

Անտի ժամ և կէս է գիւղն Սեբաստիա. ուր է բանտն Յովհաննու մկրտչի. ըստ Լատին պատմչին՝ 'ի նոյն տեղւոջ էր եկեղեցի, բայց այժմ աւերակ է։

## Յաղագս Նային քաղաքին, որ է Ճինին ։

Ի Սամարիայէ մինչ 'ի Ճինին է վեց ժամ, ուր Քրիստոս յարոյց զորդի միամօր այրի կնոջն. «Եւ 'ի վաղիւն երթայր 'ի քաղաք մի, որում անուն էր Նային ». Ղուկ. Է. 11. 18 ։ Ուր գոյ աղբիւր յորդառատ ջուրս և բարեհամ ։

Բայց բնակիչք սորին են բարբարոս և աւազակ. յորոց զգուշանալ պիտոյ է ։

## Յաղագս Թափօրական լերինն ։

Լեառն Թափօր է 'ի մեծի դաշտի Գալիլեայ. կամ ըստ ոմանց՝ յԵզրայէլի. և է մերձ 'ի Կանայ գիւղն. և սակաւ հեռի 'ի Նազարեթէ իբրև ժամ և կէս. և է բոլորակ բարձրաւանդակ և ծաղկաւէտ յոյժ ։ Աստ եւ Քրիստոս առեալ ընդ իւր զերիս աշակերտս. զՊետրոս և զՅակոբոս և զՅօհաննէս, և յայլակերպս եղև առաջի նոցա. «Եւ երևեցան անդ Մովսէս և Եղիա, որք խօսէին զելիցն ». Մարկ. Թ. 1։

Աստ գոյր երեք եկեղեցի, որոց հիմունքն երևին մինչև ցայսօր. բայց սոքա ամենեքեան աւերակ են ։ Իսկ այժմ Մոսկովն շինեալ է և տակաւին շինէ զեկեղեցիս և բնակարանս ։

Եւ 'ի դաշտի անդ գոյ բլուր մի, որ կոչի Երանելի լեառն, ուր եւ Տէրն մեր Քրիստոս, և զգիշերն ամենայն եկաց յաղօթս, և ընդ ա-

ռաւօտն կոչեաց զաշակերտս, և ընտրեաց զեր-կոտասանսն. Ղուկ. Զ. 12։

Յարևելակողմն սորին գոյ եկեղեցի մի աւե-րակ, յորում տեսաք յամի Տեառն 1834. երկու քարեայ խաչ, յորոց մին խորագոյն փորեալ. իսկ միւսոյն պատուանդանն և գագաթն եղծեալ։

Աներձ սորա է գուբն Յովսեփայ, ուր իջու-ցին զնա. ուստի հանեալ վաճառեցին Յեգիպ-տոս. Ծնն. ԼԷ. 22. 24։

## Յաղագս քաղաքին Նազարեթի։

Ի Նային քաղաքէ մինչ 'ի Նազարեթ վեց ժամ է. ուր հրեշտակապետն Գաբրիէլ աւե-տեաց սրբոյ կուսին Մարիամու, որ յղացաւ ըզ-Բանն Աստուած. Ղուկ. Ա. 26։ Այս է տունն Յովսեփայ աստուածահօրն. և է վանք 'ի ձեռս Լատինաց. և աղբիւրն՝ առ որ երևեցաւ Գաբ-րիէլ սրբոյ կուսին, և ետ նմա զողջոյն, է 'ի ձեռս Յունաց։

Այս է և տունն՝ յորում ետուն նմա ըզ-գիրս Եսայեայ մարգարէի. և յարեաւ ընթեռ-նուլ. և իբրև եբաց զգիրսն. եգիտ զայն տե-ղին, յորում գրեալն էր. «Հոգի Տեառն 'ի վե-րայ իմ, վասն որոյ և էօծ իսկ զիս. աւետարա-նել աղքատաց առաքեաց զիս». Ղուկ. Դ. 17։ Եսայի. ԿԱ. 1։

Իսկ արտաքոյ քաղաքին է Արտևան լեառն. յորոյ վերայ քաղաք նոցա շինեալ էր՝ գահավէժ

առնել հանին զնա, պայինքն զՅիսուս. և նա անցեալ ընդ մէջ նոցա գնայր. Ղուկ. Դ. 29:

Մերձ սորա է գիւղն կանա Գալիլեացւոց. ուր գնաց Յիսուս Տէրն մեր 'ի հարսանիս, և զջուրն 'ի գինի փոխեաց: "Եւ յաւուրն երրորդի հարսանիք էին 'ի կանա Գալիլեացւոց, և անդ էր մայրն Յիսուսի, կոչեցաւ և Յիսուս և աշակերտք նորա 'ի հարսանիս". Յովհ. Բ. 1. 11:

## Յաղագս Տիբերական ծովու և քաղաքին:

Ծովն Տիբերական՝ կոչի Մինէկեօղ. յորում եանես Քրիստոս զՊետրոս և զԱնդրէաս, և զորդիսն Զեբեդեայ զՅակոբոս և զՅոհաննէս, որք որսային զձկունս, հրաւիրեաց՝ կոչեաց զնոսա ասելով. Եկա՛յք զկնի իմ, և արարից զձեզ որսորդս մարդկան, և նոքա թողեալ վաղվաղակի զգործիսն, գնացին զհետ նորա. Մատթ. Դ. 18. 22:

Տիբերիա է քաղաք, որ կոչի Տաբարիէ. 'ի հնումն կոչիւր Քէնէրէթ: Եւ յորժամ շինեաց զայն Հերովդէս, 'ի պատիւ Տիբերիա կայսերն՝ անուանեաց զայն Տիբերիա. Յովհ. ԻԱ. 1:

Մերձ սորա է քաղաքն Բեթսայիդայ. յորմէ էին Պետրոս և Անդրէաս, Փիլիպպոս և Թովմաս առաքեալքն. Յովհ. Ա. 44: Ղուկ. Թ. 10: Եւ աստ է տեղին՝ ուր հինգ նկանակաւ և երկու ձկամբ զհինգ հազարսն կերակրեաց. և ընդ մնացորդսն բարձին երկոտասան սակառի. Ղուկ.

Ջ. 17։ Մատթ. ԺԴ. 19։ Ի տեղւոջ մի տափարակ, և այլն. Մատթ. ԺԵ. 34։ Եւ զեօթն նկանակսն և զսակաւ ձկունսն յայլում նաւագի բազմացոյց. մերձ տեղւոյս է նոյն տեղին. որ է կից Բեթսայիդայ։ Յեզր ծովուն երևեցաւ Քրիստոս յետ յարութեանն. և առաքեալքն տեսին ՚ի ցամաքի կրակետղ կայծականց՝ ձուկն մի ՚ի վերայ և հաց. Յովհ. ԻԱ. 9։

Աստ եհարց Տէրն զՊետրոս երիցս անգամ ասելով նմա, « Սիմոն Յովհաննու սիրես զիս »։ Յովհ. ԻԱ. 15. 17։ Ի սահմանս այսր բժշկեաց զախտաժէտս և զդիւահարն։

Մերձ սորա է Կափառնայում, որ կոչի Կաֆայ, կամ Սիֆաթ, յորում բնակեցաւ Քրիստոս Տէրն մեր. Մատթ. Դ. 13։

Աստ բժշկեաց Քրիստոս զանդամալոյծ մի բարձեալ ՚ի չորից. Մարկ. Բ. 1. 12։ Ղուկ. Ե. 18։

Բժշկեաց և զծառայ հարիւրապետին բանիւ և եթ. Ղուկ. Է. 1. 10։

Բժշկեաց զզոքանչ Սիմոնի. Մատթ. Ը. 14։

Եւ յարոյց զդուստրն Յայրոսի իշխանին. Ղուկ. Ը. 41։ Եւ աստ ասի ամփոփեցաւ գլուխն Յովհաննու Մկրտչին։



## Յաղագս լերինն Կարմելայ։

Հանդէպ Պտղոմայիդայ, այսինքն Աքիայու․ է լեառն Կարմելոս, ուր Եղիա մարգարէն ժողովեաց զմարգարէս Բահաղու․ և կալաւ զնոսա և իջոյց զնոսա 'ի հեղեղատն Կիսոնի, և կոտորեաց զնոսա անդ։ « Ու Եղիա ել 'ի գլուխ լերինն Կարմելայ, որոյ աղօթիւքն բացաւ երկինք, և եկն անձրև առատ »․ Գ․ Թագ․ ԺԸ․ 19։

Ընդ 'ի գլուխ Կարմելայ գոյ վանք մի Դաղմատացւոց, զոր կոչեն Կարմելիդանիք։

Ի յաջմէ սորին է Ծուր, որ է Սուր քաղաք․ և է 'ի ծովեզրն, որոյ օդն է յոյժ վնասակար։

Ի Ծուրայ մինչ 'ի Ծայդան, որ է Սայդայ քաղաք, է վեց ժամ․ և է ջրաւէտ, պտղաբեր, և արգաւանդահող, և օդն մաքուր, և ունի բազում աղբիւրս բարեհամս․ յորում բնակին Այլազգք և Մարոնիք, և երկու տուն Հայ․ մինչև ցայս վայր շրջեցաւ մարմնով Քրիստոս Տէրն մեր։



## Յաղագս Վերիտոնի կամ Բերիտոնի, որ է Պէյրութ քաղաք:

Ի Սայդայէ մինչև 'ի Վերիտոն իննն ժամ է. Վերիտոն է քաղաք Փիւնիկեցւոց՝ մերձ Լիբանանու. ցամաքաւ յիսուն և վեց ժամաւ հեռի է յԵ̃մէ, և քառասունութ ժամաւ 'ի Յոպպէ է. յամի Տեառն 1849, Տ. Կիրակոս Սրբազան Պատրիարքն Երուսաղէմացին գնեաց աստ պարտէզ մի մերձ 'ի ծովն, 'ի ձախմէ արքունական պողոտային. որոյ երկայնութիւնն է 42 կանգուն՝ և լայնութիւնն 38: Յորում գոն թթենիք: Մերձ 'ի ծովն կառուցեալ սենեակ մի 'ի վերայ վիմի. և առաջի նորա սրահ, որոյ շրջապատն շինեցաւ պարիսպ քարուկիր, և կամարակապ գեղեցկակերտ երկփեղկեայ դրամբ ամրացեալ: Աստ է այժմ յատուկ գերեզմանատուն ազգիս Հայոց: Յաջակողմն դրանն ունի կից գերեզմանատուն Մարոնեաց:

Առաջի դրանն ճանապարհ արքունական, յաջմէ գնայ 'ի Պէյրութ. և 'ի ձախմէ՝ 'ի քարանտինայն, 'ի Լիբանան, և 'ի Տրապոլիս քաղաք: Հանդէպ դրանն գոյ ճանապարհ, ընդ որով գնայ 'ի պարտէզս. և 'ի ձախմէ դրան շինեցան չորեքին կամարք, և այլն:

Յամի Տեառն 1850, քսան րոպէիւ հեռի 'ի նաւահանգստէն քաղաքիս 'ի բարձրաւանդակ տեղւոջ, մերձ առ նորաշէն ձմերանոցն արքունական, որ է 'ի հիւսիսակողմն վանուց մերոց. գնեաց 'ի պատրաստի շինեալ հոյակապ տուն մի

Տ. Յովհաննէս Սրբազան Պատրիարք Զմիւռնացին։ Ի վերն ունի սենեակս հինգ, և առաջի նոցա սրահ. և 'ի ներքոյ սենեկացս գոյ պաշտաճաւոր տեղի մի. որ օրհնութբ և օծութեամբ հաստատեցաւ եկեղեցի յանուն սուրբ Նշանի. և եղև յատուկ վանք և մենաստան ազգիս Հայոց. զոր տէր Յիսուս Քրիստոս 'ի հաստատութեան պահեսցէ։ Եւ յիշատակարան եդեալ է 'ի վերայ դրանն այսպէս. «Օծմամբ սրբեցելով հաստատեցաւ եկեղեցիս յանուն սուրբ Նշանի Փրկչին՝ 'ի յիշատակ նախահաւատ ազգիս Հայոց, բարեջան տենչանօք ո̃ք Գահոյն Երուսաղէմի, Տ. Տ. Յովհաննու Վեհափառ Պատրիարքի Զմիւռնացւոյ՝ 'ի մատուցումն Սրբազան խորհրդոյ 'ի փառս Ամենասուրբ Երրորդութեան. յամի Տեառն 1851, փետրվարի 28։

Առաջի դրան եկեղեցւոյն է փոքր հրապարակ և բուրաստան. յորում է և ջրհոր մի. և 'ի հիւսիսակողմն եկեղեցւոյ յանկեանն ևս գոյ ջրհոր մի, խոհարան, ախոռ, և յարտաքին բակըն գոն կրկին ցած սենեակք. և առաջի նոցա պարտէզ, յորում են քանի մի ծառ։ Եւ 'ի հարաւակողմն վանուցս ևս գոն սենեակ հինգ, երկու փոքր սենեակ ևս. և երկու խոհարան, և ջրհոր մի, և պարտէզ, որոյ շրջապատն է Թըզենի Ադամային, զոր Արաբացիք մաղէր ասեն. որք իբր ցանկիւ պատեալ ունին զպարտէզն։



## Յաղագս Լաւոդիկեայ քաղաքի , որ է Լաթաքիեայ ։

Ի Վերիտոնէ է իբր երեսուն և երկու ժամ հեռի , և 'ի Տրապօլսոյ տասնևութ ժամու . Լաւոդիկեայ է փոքր քաղաք ծովեզերեայ իբր կէս ժամու հեռի 'ի Նաւահանգստէն , ուր գնաց Ալէքսիանոս այրն Աստուծոյ . մինչ խոյս ետ յԵդեսիոյ , և այլն ։ Յայսմաւուր , Մարտի 15 . 18 ։

Որոյ բնակիչքն են այլազգք բազումք . Յոյնք իբր տունք հարիւր . Մարոնիք տունք ութհարիւր . Լատին հինգ տուն ։ և տասնևվեց տուն Հայազգի ։ Եւ 'ի մէջ քաղաքին 'ի հարաւակողմն գոյ սրբոյ Երուսաղէմի հոգետուն մի՝ լայնադիր . և 'ի նմա փոքրիկ եկեղեցի մի յանուն Սբ Աստուածածնի , քարուկիր և պայծառ . և առաջի դրան եկեղեցւոյն պարտէզ մի փոքրիկ . և 'ի նմա գոն հնգեակ թաղս յատուկ գրամբք . յորս գտանին քսանևհինգ սենեակք մեծ և փոքր , և խոհարան . և հինգ ջրհորս , յորոց երկուքն են ինքնաբուղխք ։

Եւ արտաքոյ պարսպի հոգետանն է պարտէզ մի ծառատունկ և վայելուչ . յորում է սենեակ մի այգեպանաց . և երկու ջրհոր 'ի մէջ պարտիզին . և ունի անդ յիշատակ և հուճճէթ սէյ Աթոռոյս . հացի փուռն մի , և քանի մի տունս . և ջաղաց մի , և երկու կրպակ 'ի Նաւարանն ։



Յաղագս Դամասկոսի, որ է Շամ։

Դամասկոս է 'ի հիւսիսակողմն Աւետեաց երկրին. և է հեռի յԵրուսաղէմէ իբր ութօրեայ ճանապարհաւ. Դամասկոս շինեցաւ 'ի Մարիքասայ Հիւթացւոյն. նախ քան զքսան ամ ըզծնանելն Աբրահամու. Միխայէլ Ասորի։

Յովսեպոս գրէ՝ թէ Յովսէէ որդի Արամայ շինեաց, և այլն. սա ունի վերիս գետս։ Առաջին գետն գայ 'ի Գոնաթրայէ. որ ելանէ 'ի Սասայէ՝ և ընթացեալ ոռոգանէ զբազում տեղիս և զարտորայս, և իբր ութն ժամու հեռի երևի Սասայ գիւղն 'ի դաշտի անդ. և ունի ըզմեծամեծ շինուածս. յորում բնակին հինգ հարիւր տունք Ասորիք, և այլն։

Եւ միւս կրկին գետքն Նոբանայ և Փարփարայ, որք յիշին 'ի Դ. Թագ. Ե. 12։ Բղխին 'ի Լիբանանէ, որոց մին գայ 'ի Դամասկոս քաղաքն, և բաժանի ընդ ամենայն աղբիւրս քաղաքին. իսկ միւսն սփռեալ տարածի յերեսս երկրի, և ոռոգէ զդաշտս. և ապա եկեալ առ միմեանս խառնեալ միանան, և գնան դէպ յԱրաբիա. ուր ստորասուզեալ յաւազուտ տեղւոջ անտես լինին. ըստ վկայելոյ Տերիտոսի և այլոց բազմաց. յորոց առեալ Մարինոս գրէ։

Մերձ Դամասկոսի է գիւղ մի՝ որ կոչի Թագեայ, այսինքն հիւրանոց. յորում գոյ գերեզման Աբելի, ուստի կոչի յԱրաբացւոց Հաբէլէ. որոյ աղագաւ կոչի Դամասկոս, այսինքն արեանարբու. զի անտի առի ընկալաւ զանուն Դը-

մըշկ. այսինքն խառնումն արեան։ Ընդ շինեաց դշխոյն Հեղինէ եկեղեցի, որոյ երկայնութիւնն է 160 Թղաչափ, և լայնութիւնն 30. ըստ Մարինոսի։

Նաև գրէ Մարինոս՝ թէ կէս մղոնաւ հեռի 'ի Դամասկոսէ արտաքոյ քաղաքին, ուր է գերեզմանատուն քրիստոնէից. կառուցաւ անդ տաճար յանուն սուրբ Առաքելոյն Պօղոսի. և ըստ ոմանց թէ՝ տասնևմէկ մղոնաւ հեռի 'ի քաղաքէն 'ի վերայ բլրի միոյ շինեալ. որ կոչի Արաբացւոց Մար Պօլօս, այսինքն սուրբ Պօղոս։

Իսկ վասն Պօղոսի ասի՝ թէ մինչ եղաւ 'ի բանտի, յայնժամ պահապան դրան քաղաքին էր զինուոր ոմն Եթովպացի՝ գոլով քրիստոնեայ. անուն նորա Գէորգ. մինչ աշակերտք Պօղոսի ստիպէին զնա աղաչանօք բանալ զդուռն քաղաքին՝ և փախուցանել զՊօղոս. ասէր թէ չունիմ առ իս բանալի. որ և թոյլ ետ իջուցանել զՊօղոս վանդակաւ և փախչիլ. վասն որոյ կալան զնոյն հալածել Գէորգն և սպանին. ուր թաղեցաւ և ոչ հեռի 'ի քաղաքէն. յորոյ վերայ շինեցաւ մատուռ մի, որ պատուի 'ի քրիստոնէից. մանաւանդ 'ի Թուրքաց, զոր կարծեն զայն՝ թէ արի նահատակ սուրբ Գէորգն իցէ։

Մերձ սորա է եկեղեցի մի՝ զոր մզկիթ արարեալ են։ Իսկ ըստ ոմանց թէ 'ի վերայ աղբերն կայր շինուած ինչ առաքելոց եկեղեցւոյն, որ ունէր տեղի աւազանի, և 'ի մէջ տան գերեզման մի. զորմէ կարծի՝ թէ անդ կայ ամփոփեալ մարմին Անանիա առաքելոյն, և է 'ի ձեռս Տաճ-

կաց, բայց թոյլ տան մտանել քրիստոնէից։ Նշտուն Անանիա առաքելոյն է ՚ի կողմն արեւելից, եւ է եռանկիւնի սենեակ մի. որոյ երկայնութիւն է 10 քայլ, եւ լայնութիւնն 20. իսկ այժմ է յատուկ եկեղեցի ՚ի ձեռս Լատինացւոց, եւ է մերձ սուրբ Սարգսի վանուց մերոց։

## Յաղագս սուրբ Սարգսի վանուց մերոց։

Մերձ հիւսիսային դրան քաղաքին Դամասկոսի, որ կոչի յԱրաբացւոց պապըլ Շըրգէ. ՚ի նախնեաց անտի կառուցեալ կայ վանք եւ եկեղեցի յանուն սրբոյն Սարգսի զօրավարին. եւ կոչի Հոգետուն. եւ է ընդարձակ օթեւան աէրունական Ուխտաւորաց մերոց, ուր շինեցաւ յամի Տեառն 1833. մեծագոյն ախոռ մի ՚ի ձեռն Զմիւռնացի Յօհան վարդապետին, որ տեսուչ էր նոյն վանուցն. այս հետզհետէ շինեցան, եւ նորոգեցան բազում սենեակք. յատուկ լուացարան՝ որ է չամաշըրխանայ. եւ քարակերտ սենեակ մի ՚ի գաւիթ եկեղեցւոյն յարեւելակողմըն, ունի յատուկ վարժարան ՚ի հարաւակողմըն, եւ առաջնորդարան առ արեւմուտս. եւ փոքր պարտէզ մի՝ եւ երկու ջրհորս. եւ վախըֆ քանի մի տունս. եւ սենեակ մի ՚ի մէջ Իփէկ խանին. եւ առաջի դրանն քաղաքիս կից պարսպին ունիմք մեծագոյն պարտէզ մի եւ ՚ի նմա աւազան մի, եւ մշտահոս աղբիւր՝ որ հոսէ ՚ի մէջ աւազանին։

# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԱՐԵՒԵԼԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ



### Յաղագս սրբոյն Ստեփաննոսի քարկոծման տեղւոյն։

Յելանելն 'ի դրանէն Բենիամինի, զոր կոչեմք Աստուածածնի, կամ սուրբ Ստեփաննոսի դուռն, զոր կոչեն Արաբացիք՝ պապ ըլ սպաթ. յաջմէ և յահեկէ նորին են գերեզմանք Այլազգեաց. և մեծագոյն աւազան մի 'ի ձախմէ, իջանելով զառ 'ի վայր յարևելս, և դառնալով առ հարաւ, յաջմէ կողմանէ յանկեան ճանապարհին գոյ վէմ մի, որ ձևացեալ կայ իբր վառարան, այսինքն օճախ. աստ քարկոծեցաւ նախավկայն Քրիստոսի ս̃րբն Ստեփաննոս. « Հայեցաւ յերկինս, և ետես զփառս Աստուծոյ. և զՅիսուս՝ զի կայր ընդ աջմէ Աստուծոյ... աղօթէր 'ի վերայ քարաձգողաց իւրոց։ Եդ ծունր և աղաղակեաց 'ի ձայն բարձր, Տէր մի համարիր դոցա զայս մեղս ». Գործ. Է. ԾԵ. ԾԹ։



## Յաղագս սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն և գերեզմանին ։

Իջեալ 'ի սուրբ Ստեփաննոսի քարկոծման տեղւոյն, հանդէպ ճանապարհին դոյ կաղնի ծառ մի, որոյ շրջապատն է քարամբք պատեալ իբր ցանկ. 'ի ձախմէ 15 աստիճանաւ իջանէ 'ի գաւիթն, և 'ի միւս կողմանէ 20 աստիճանաւ. որոյ երկայնութիւնն է 53 ոտնաչափ, և լայնութիւնն 53 ։

Եւ ուղղակի է՝ դուռն սուրբ Աստուածածնի Եկեղեցւոյն. համակ երկաթի և երկբացիկ և կամարակապ. որոյ բարձրութիւնն ութն թզաչափ, և լայնութիւնն վեց. որոյ մի բանալին առ Մեզ է, և միւսն՝ առ Յոյնս. բայց զդուռն բանալ հասարակ է մեզ և նոցա, զի որ 'ի լուսարարացն հանդիպիցի՝ բանայ զդուռն. այլ փակելն դրան՝ յատուկ 'ի մի օր լուսարարն մեր փակէ, և 'ի մի օր՝ լուսարարն նոցա ունի փակել զդուռն ։

Քառասուն և ութն աստիճանաւ իջանէ 'ի յատակ եկեղեցւոյն, և է խաչաձև, շինեալ 'ի Հեղինէ Թագուհւոյն. և լայնութիւն աստիճանացն յորմոյ առ որմ է քսան և չորս ոտնաչափ. բայց իջեալ ընդ տասն աստիճանս՝ տեսանի լայնանիստ, որոյ յաջմէ է դուռն մի հիւսեալ քարամբք. որ էր դուռն վանուց՝ որ շինեալ գոյր 'ի վերայ մեծի Եկեղեցւոյս, որ քակեալ և աւերեալ է յանօրէն բռնաւորաց. որոյ նշանք ևս չեն մնացեալ արտաքուստ. և 'ի ձախմէ

դնի տուփ մամավաճառին մերոյ. ուր արկանի
գործ 'ի հանդիսի աւուրս Մեր և Յունաց։

Եւ 'ի կէս աստիճանոյ՝ արևելեան կամարն
է Յունաց. յորոյ միջի առ արևելս, և առ հիւ-
սիս են կրկին գերեզմանք Յովակիմայ՝ յարևելս,
և Աննայի՝ ծնողաց սուրբ Աստուածածնի առ
հիւսիս. յորոց վերայ սեղան, յորս պատարա-
գեն Յոյնք. և ունի 'ի ներքուստ կաթուղիկէ.
առաջի գերեզմանաց մի մի կանթեղ և մի աշ-
տանակ երկաթի. և 'ի ճակատ կամարին ջահ մի.
և շարան հինգ կանթեղօք. և զոյգ մի պղնձեայ
աշտանակ յաջմէ և յահեկէ յանկիւնս կամարին։

Եւ 'ի ձախմէ արևմտեան կամարն է յատուկ
Ազգիս մերոյ. յորում է առ հիւսիս գերեզման
սրբոյն Յովսեփայ Աստուածահօրն. յորոյ վերայ
է սեղան՝ յոր պատարագեմք, յաջմէ սեղանոյն
գոյ լուսամուտ մի մերս սենեկին. չորս կանթեղ
առաջի գերեզմանին, յորոց մին է մշտավառ. և
մի աշտանակ ևս երկաթի. և 'ի ճակատ կամա-
րին շարան մի 'ի հինգ կանթեղէ, և ջահ մի. և
զոյգ մի պղնձեայ մեծագոյն աշտանակ յաջմէ և
յահեկէ յանկիւնս կամարաց. ունի և վարագոյր
և ծածկոյթ որմոց մշտնջենաւոր։

Ի մեծ երկաթի դրանէն 'ի վերայ աստիճա-
նացն միջանկեալ 'ի մէջ Յունաց ութն կանթե-
ղաց, ունիմք եօթն կանթեղս։ Միջանկեալն 'ի ներ-
քոյ աստիճանաց՝ 'ի ձախմէ է դուռն սենեկի
լուսարարին մերոյ և ժամարարին. առընթեր
դրան սենեկին է բազմոց. այսինքն ջեր մեր՝ յոր
նստիմք, յորոյ վերայ գոն կրկին մղանոց ջուրց.

որոց մին է մեր, և միւսն Յունաց. առընթեր մզանոցին 'ի ներքոյ կամարին դնի մեր պահարանն, այսինքն փօլաղ. հանդէպ բազմոցին է սեղան մի Յունաց՝ որ էր Վրաց. 'ի ներքոյ աստիճանացն քառասուն և հինգ ոտնաչափ գնայ առ հիւսիս, յորում գոյ փայտեայ սանդուղ՝ ընդ որ քանի մի աստիճանաւ ելանէ 'ի սենեակն Յունաց լուսարարին. ուր գոյ առ արևելս սեղան մի Յունաց՝ որ էր Հալէպչեց. և առ արևմտակողմն դնին չորեքին աթոռք, որոց երկուքն մեր են, և երկուքն Յունաց. ունիմք և մեք աստ երկայն սանդուղ մի և եռոտնեայ սանդուղ մի, փոքր եռոտնեայ մի ևս, և զայլ հարկաւոր իրս, որք դնին առընթեր աթոռոց Յունաց:

Ի սոյն հիւսիսային կամարին ունիմք շարան մի տասնևինն կանթեղօք, և 'ի ներքոյ նորա ջըրհոր մի, որ ունի երկու դոյլս, մին մեր և միւսն Յունաց. սոյն ջրհորս յատուկ մեր էր, բայց նոքա յանդգնութեամբ բաժանորդ եղեն 'ի պեղել և 'ի նորոգել. նոյն կամարն յանկիւնէ առ յանկիւն և 'ի ներքս բոլոր որմն և առաստաղն և ծածկոյթն յատուկ մեր է. յորում գոյ սեղան մի, որոյ առաջի շարան մի տասնևհինգ կանթեղօք, և ջահ մի, և մի յատուկ կանթեղ առաջի սեղանոյն, յոր պատարագեն Խփտիք 'ի չորեքշաբաթի աւուրս միայն, և յաւուրս Վերափոխման նորա, որ է Օգոստոսի ինն շարունակ պատարագեն ութն օր. և զկանթեղսն մեք լուցանեմք՝ և է յատուկ պահարան մեր. յորս դնին քանի մեծ և փոքր սուփք վասն զգեստուց և

կանթեղաց և այլ հարկաւոր իրաց. և տուփ մի ևս գոյ անդ ընկերութեամբ Խփտուոց և Ասորւոց. 'ի յետուստ սոցա է մեզ ծածուկ դուռն մի փակեալ քարամբք, 'ի ներքս է ընդարձակ տեղի դատարկ. զոր հակառակորդք մեր կամին յափշտակել, վասն որոյ թողեալ եմք առ այժմիկ ամայի:

Ի սոյն արևմտեան որմոյն մինչև ցարևելս 'ի յետոյս Յունաց սեղանոյն է հարիւր տասն և հինգ ոտնաչափ. 'ի վերայ Ջրհորոյն 'ի միջի այսինքն յատենի ունիմք միջանկեալ կանթեղս ութն. նոյն թուով և Յոյնք ունին: Արևելեան կամարըն առ հիւսիս և առ հարաւ՝ շարան մի 'ի քըսան և մի կանթեղէ. յաջմէ և յահեկէ Յունաց ջահին երկու ջահք մեր են: Ի հիւսիս միջանկեալ կանթեղք հինգ, նոյնպէս և 'ի հարաւ. և 'ի հիւսիսային որմն յանկիւնէ մինչ 'ի սեղանն Ասորւոց՝ պատկերք 'ի վերայ բաւիղայ, և վեց աշտանակ առաջի նոցա, և ծածկոյթ որմոց մեր է: Իսկ հարաւային որմոյ պատկերք և վեց աշտանակք, և ծածկոյթն է Յունաց:

Աւագ խորանն Մեր, որ է կից սրբոյ Գերեզմանին շինեալն 'ի Հեթմոյ արքայէն մերմէ, որ ունի զսուրբ Պատկեր Վերափոխման, որոյ առաջի յատուկ կանթեղ մի մշտավառ. և երեք կանթեղք ևս առ կախեալ կան 'ի շղթայից, և 'ի հիւսիսոյ առ հարաւ շարան մի քսան և մի կանթեղօք. և փոքր երկայն պատկեր մի 'ի վերայ արևմտեան դրան սրբոյ Գերեզմանին, և 'ի ճակատ նորին փոքր գեղեցկազարդ պատկեր մի

ևս . և առաջի նորա մշտավառ կանթեղ մի ։ Այն Աւագ խորանն յատուկ մեր է . խաչ , Աւետարան , աշտանակք , և զարդք նորին ըստ հաճոյս մեր է որչափ և կամիմք ։

Առաջի Աստուծոյ սեղանոյն յատուկ կանթեղ մի է՝ և փոքր ջահ մի . յորոյ վերայ կանթեղք , և մոմակալք , և շարան մի հինգ կանթեղօք . և ունիմք պատկեր մի և կանթեղ մի ՚ի վերայ հիւսիսային դրանն . նոյնպէս և Ցոյնք ՚ի հարաւային կողմն ունին . և առընթեր պատկերին կախին զոյգ ջէջոցք մեր անխափան ։ Յատեանն դնին կրկին մեծագոյն աշտանակք ՚ի ժամ սուրբ Պատարագին մերոյ ։

Ի մեր սեղանոյ յանկիւնէն սկսեալ՝ հիւսիսային դրամբ մինչ ՚ի յետուստ սրբոյ Գերեզմանին արտաքուստ ծածկոյթն մեր է բոլորն ։ Ի վերայ սրբոյ Գերեզմանին գմբեթի ունիմք տասն և վեց մոմակալ փոքր աշտանակ միջանկեալք , յորոց կախին և տասնևվեց կանթեղք . և ութն մեծ աշտանակ ևս , բայց չեն միջանկեալք . այլ յատուկ եդեալ կան ՚ի կողմն հիւսիսոյ , և ՚ի գլուխ գմբեթին գոյ մոմակալ մի եօթն ստեղնեան . որոյ հիւսիսային կողման երեք մոմակալք մեր են , և չորսն Յունաց . յաւուրս Վերափոխման դնին ՚ի վերայ գմբեթին ծաղիկք և զարդք ՚ի կողմն հիւսիսոյ , և ՚ի ճակատ սեղանոյն մերոյ ։

Արովքէագումար սուրբ Գերեզմանն գրեթէ ՚ի կեդրոն եկեղեցւոյս է , և քառակուսի , որոյ շրջապատն է քառասուն և ութն թիզ . և ունի կրկին դրունս , առ արևելս և առ հիւսիս ։ Արր-

քոյ Գերեզմանի երկայնութիւնն է տասն թզաչափ, և բարձրութիւնն հինգ, և լայնութիւնն հինգ։ Իսկ յատակն նոյն չափով երկայնութեամբ և լայնութեամբ, 'ի վերայ նորա մշտավառ կանթեղս երեքտասան. հինգ հինգ երկու կարգ, և երեքն մի կարգ. և մշտավառ աշտանակ մի 'ի վերայ. և եդեալ կան անխախտ երեք աշտանակք, չորս ծաղիկք 'ի զարդ. նաև 'ի ժամ ոք Պատարագին մերոյ արկանին 'ի վերայ ծածկոյթ, կորբուրայս, վէմ օծեալ, խաչ, Աւետարան, յիշատակարան, խորհրդատետր, և աշտանակ, և այլ կարևոր իրս։

Իսկ 'ի ներքուստ սկսեալ արևելեան կէս որմոյն հիւսիսային դրամբ մինչ 'ի բարաւոր արևմտեան դրան ծածկոյթն մեր է, և յանդիմանն սորին Յունաց է. բաց 'ի յԱւագ խորանէն մեմէ, քանզի յատուկ մեր է 'ի բնէ անտի։

Արդ՝ նախ քան զննջումն իւր Արքուհին կայսկտակաւ աւանդեաց Առաքելոց, և եցոյց զտեղի հանգստեան իւրոյ լինել 'ի Գեթսեմանի. զի գիտէր՝ եթէ Որդին իւր Միածին աստ դատելոց է 'ի միւսանգամ գալստեան իւրոյ զազգս մարդկան. զի բարեխօսեսցէ վասն այնոցիկ՝ որք այժմ հաւատով և յուսով միջնորդ և բարեխօսունին զինքն առ Որդին իւր Յիսուս։ «Նաև ասաց Քրիստոս Տէրն մեր ցՊետրոս, ո՛վ Պետրէ՝ երթ յարևելից կուսէ քաղաքիդ 'ի ձորն Գեթսեմանի, և անդ պատրաստեցէք զԳերեզման մօրդ իմոյ. և մի՛ որոշիք 'ի տապանէ դարա զերիս աւուրս»։ Յայսմաւուր. Օգոստոս 15։

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

### Յաղագս աւել ածելոյ յեկեղեցին սուրբ Աստուածածնի՝ որ ՚ի Գեթսեմանի։

Նախ՝ երկուշաբաթի, երեքշաբաթի, չորեքշաբաթի աւուրս Յոյնք աւել ածեն, և ջըրով լուանան և մաքրեն զԳերեզմանն։ Երկրորդ՝ հինգշաբաթի, ուրբաթ, և շաբաթ աւուրս մեք աւել ածեմք, և մաքրեմք զսուրբ Գերեզմանն. և ՚ի կիւրակէ աւուրս կարգաւ է աւել ածելն. ՚ի միում կիւրակէի մեք աւել ածեմք, և ՚ի միւսումն նոքա։

Այլ սովորութիւն աւել ածելոյ այսպէս է, զի Յոյնք ՚ի չորեքշաբաթի աւուր սկսանին ՚ի դըրանէն իջանելով ընդ աստիճանս՝ յաջմէ և յահեկէ, և ՚ի գերեզման Յովակիմայ և Աննայի. և անտի ուղղակի մինչ առաջի դրանն սենեկի իւրեանց, բայց ՚ի գերեզմանէն Յովսէփայ արդարոյն՝ որ յատուկ վիճակ մեր է. նաև ՚ի բաց թողուն զյետուստ ջրհորոյն, որ է վիճակ մեր. ուր գոյ խորան խափշւոց ազգին, յոր բովանդակ մեք աւել ածեմք. նաև աւել ածեն Յոյնք յամենայն տաճարն, և ՚ի շրջապատ սուրբ Գերեզմանին, և ՚ի յատուկ վիճակն իւրեանց՝ որ ՚ի յետուստ Գերեզմանին։

Իսկ յաւուր շաբաթու անխափան մեք աւել ածեմք, նոյնպէս սկսեալ ՚ի դրանէն իջանելով ընդ ամենայն աստիճանս՝ հանդերձ գերեզմա-

նաւ Յովակիմայ Աստուածահօր, որ է յատուկ վիճակն մեր, և յամենայն ատեանն, և 'ի սուրբ գերեզմանն հանդերձ շրջապատօք յետուստ ջրհորոյն 'ի յատակն, յորմունս, և յառաստաղն, և 'ի սեղանն խփտւոց և Ասորւոց մեք ածեմք աւել, և այլն. 'ի բաց թողլով զգերեզմանս Յովակիմայ և Աննայի՝ և զյատուկ վիճակն նոցա, որ 'ի յետ կոյս գերեզմանին։ Երբեմն սկսան Յոյնք աւել ածել 'ի վիճակն մեր 'ի Հայր Յովսէփն. յայնժամ և մեք սկսաք աւել ածել 'ի Յովակիմայ և յԱննայի տեղւոջն, բայց այժմ խափանեալ եղև։

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

### Յաղագս հանդիսի Տօնին 'ի Վերափոխման սուրբ Աստուածածնի։

Ի շաբաթ երեկոյի՝ Վերափոխման սուրբ Աստուածածնի յեօթներորդ ժամու Սրբազան Պատրիարքն կամ մի ոմն յԵպիսկոպոսաց լինի Հանդիսապետ՝ Միաբան եկեղեցականօք և Ուխտաւորօք գնայ 'ի Գեթսեմանի, և նստի ընդ վրանաւն. եթէ Յունաց Վերափոխումն ընդ մերս 'ի միասին իցէ, նախ Յոյնք գնան հանդիսիւ, և կատարեն զպաշտօն ըստ արարողութե իւրեանց։

Եւ ապա յետ պատրաստելոյ լուսարարին և կառավարչին մեր՝ զաւետարանաքարձսն, ընդ խնկարկու սարկաւագունս, զլուսաւորեալ դպիրս,

և եկեալ հրաւիրէ զՀանդիսապետն, արկանի զորգ 'ի ներքոյ տասներորդ աստիճանաց. և լուսարարն այս նմա շուրջառ, խաչ, և գաւազան, և հանդիսաւորք դասադաս կանգնին.

Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե՛։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք Հօր. և արկանէ խունկ 'ի բուրվառն։

Կամաւոյն, ըստ դասին երգէ քաղցրաձայն Շարական, Դյ. « Հրաշափառ աստուած ». մինչ հասանի Հանդիսապետն 'ի յատակ եկեղեցւոյն՝ երգէ Շարական, Գյ. « Ուրախ լե՛ր », և այլն. որ ըստ կարգի։

Նաև 'ի գիշերին միայն անդ մի ամն 'ի վարդապետաց Հանդիսապետ. զկնի Եկեղեցէին Յունաց՝ սկսանիմք և մեք զԵկեղեցէի ժամերգութեան պաշտօնն կատարել. և ապա անմիջապէս հսկմամբ կատարեմք զգիշերային ժամերգութիւնն, և աւարտի։

Եւ ընդ առաւօտն զկնի Յունաց պատարագին գայ Սրբազան Պատրիարք մեր հանդիսիւ միաբան ուխտիւք, և կատարի արարողութիւն ըստ սովորութեանն որպէս յերեկոյին. արկանի զորգ, Հանդիսապետն առնու շուրջառ, խաչ և գաւազան, և իջանեն 'ի սուրբ Գերեզմանն. բայց գիտելի է, զի սովորութիւն է մեր և Յունաց՝ 'ի պատիւ միմեանց, յատուկ զոյգ մի կերօն առնուլ 'ի ձեռին դպրաց առանց շապկի, և անտուչն ևս առնու 'ի ձեռին զանուշահոտ վարդեջուր ամանաւ և խնկանոց. և նախընթաց լինի Հանդիսապետին մերոյ՝ առ 'ի պատուել

յերեկոյի և յառաւօտու . ըստ նոցա առնեմք և մեք հանդիսապետութիւն նոցա ։ Իսկ յետ հանդիսաւոր հաշտարար Պատարագին անդստին առնեմք . ապա վերադառնամք ՚ի սուրբ Յակոբ .

Նոյն և ՚ի 7 Ապրիլի ՚ի տօնի Աւետման . և ՚ի Սեպտեմբեր 8 , ՚ի տօնի ծննդեան սուրբ կուսին . և յերից ամաց Ընծայման ՚ի 21 Նոյեմբերի , ընդ առաւօտն հանդիսապետն մեր գնայ միաբանութեամբ ՚ի Գեթսեմանի . և արկանի զօրզ , տան նմա շուրջառ , խաչ , և գաւազան , ըստ աւուր Վերափոխման . և կատարեմք ըստ սովորութեան զպաշտօնն արարողութեան ։

Նոյն ՚ի տօնի Յովակիմայ և Աննայի ծնողաց սուրբ Աստուածածնին՝ և ՚ի տօնի Յովսեփայ Աստուածահօրն , և Գիւտ տփոյ , և Գիւտ գօտւոյ . և 9 Դեկտեմբերի , Յղութեան ՚ի յԱննայէ . եթէ կամիցիմք առնել՝ առնեմք ըստ արարողութեան Վերափոխման , բայց միայն և եթ յառաւօտուն ։

Ի 14 աւուր Օգոստոսի Յոյնք մեծահանդէս տօն կատարեն փառաւոր թաղմանն սուրբ Աստուածածնի ՚ի Գեթսեմանի . եթէ ընդ մեզ հանդիպեսցի , և եթէ ոչ ։ Իսկ յիններորդ աւուր Վերափոխման իւրեանց , յետ սոցա Պատարագին մերոյ՝ մայրապետք նոցին բարձեալ զպատկերն՝ տանին ՚ի վանս իւրեանց բազմութեամբ ։



### Յաղագս Գեթսեմանին, և տեղւոյն ննջման Երից Առաքելոց։

Յելանելն 'ի սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն 'ի ձախմէ գնայ ընդ նեղ պողոտայն 65 տնաչափ առ երկաթեայ դուռն՝ ընդ որ իջանէ քանի մի աստիճանս 'ի յատակ եկեղեցւոյն, որ է վիմափոր բոլորաձև այր մի, որոյ երկայնութիւնն 57 տնաչափ, նոյնչափ և լայնութիւնն. և ունի զերիս խորանս, Աւագ խորանն յարեւելս. մին առ հիւսիս, և միւսն առ հարաւ. և է 'ի ձեռս Լատինացւոց, ուր եկեալ պատարագեն. զորմէ հաստատեն՝ թէ աստ է Գեթսեմանին, յոր եմուտ Տէրն մեր՝ և եկաց յաղօթս. և աստ է տեղի ննջման երից Առաքելոցն Պետրոսի, Յակոբայ, և Յովհաննու ։



### Յաղագս ըմբռնման տեղւոյն Քրիստոսի, և Առաքելոցն Պետրոսի, Յակոբայ և Յովհաննու ննջման տեղւոյ։

Ելանելով ընդ աստիճանս՝ անցեալ ընդ ծառն կաղնի, և գնացեալ 'ի ճանապարհն՝ որ ելանէ 'ի լեառն Ձիթենեաց, յաջմէ է պարտէզ մի Լատինաց, զորոյ շրջապատն կանգնեցին պարիսպ, և երկաթեայ դրամբ ամրացուցին՝ յամի Տեառն 1850. յորում են հնատունկ ձիթենիք, զորս յաւանդութենէ կոչեն ծառք ողջունի. առ պարսպաւ նորին իբր վաթսուն քայլ հեռի զառ

'ի վեր յառնելն, և դարձեալ ընդ պարսպաւ առ հարաւ, և անցեալ ընդ դուռն երկաթի, և մտեալ յանել ճանապարհն, որոյ երեքին կողմունք պատեալ կան որմով. ուր է տեղի ըմբռնմանն Քրիստոսի, և կամ պարտէզն, յոր աղօթեր Քրիստոս առ Հայր ասելով. "Հա՛յր՝ եթէ կամիս, անցո՛ զբաժակս զայս յինէն. բայց ո՛չ իմ կամք, այլ քո եղիցի ": Ղուկ. ԻԲ. 42:

Աստ 'ի գիշերին եկն Յուդա ընդ անօրէն ամբոխին Հրէից, նշան տուեալ նոցա՝ թէ ընդ որում ես համբուրեցից, նա է՝ զնա ունիցիք. մերձեցաւ առ նա, ասելով նմա, ո՛ղջ եր վարդապետ. և համբուրեաց զնա. որում ասաց Քրիստոս, ընկեր՝ համբուրելո՞վ մատնես. Յովհ. ԺԸ. 1. 10: "Եւ ասէ ցամբոխն, զո՞ խնդրէք. և նոքա ասեն՝ զՅիսուս. և նա ասէ ցնոսա, ես եմ. և նոքա յետս յետս չոգան, և զարկան զգետնի ": Մատթ. ԻԶ. 36. 57: Մարկ. ԺԴ. 43. 50: Ղուկ. ԻԲ. 40. 54:

Աստ եհատ Պետրոս սրով զունկն Մաղքոսի, և Յիսուս առ ժամայն բժշկեաց զունկն նորա: Եւ աստ կալան զՅիսուս, և կապեցին զարարչագործ ձեռս նորա. և տարան առ Աննա քահանայապետն:

Աստի յիսուն ոտնաչափ ելանելով 'ի վեր, գոյ վէմ մի մեծ, ուր ննջէին Առաքեալքն. որբութեան տեղիս յատուկ Ուխտատեղի է ամենայն ազգաց քրիստոնէից. և պատուի յամենեցունց արտասուախառն համբուրմամբ:

Արդ՝ մատնեցաւ Որդին Աստուծոյ առ 'ի մահ

վասն մեր, զի մահուամբ իւրով ազատեսցէ զմեզ 'ի յաւիտենից մահուանէն. քանզի կամաւ մերով մատնեցաք զմեզ յաւիտենական մահուան։ Յաղօթս եկաց 'ի գիշերին յայնմիկ, ոչ վասըն իւր ինքեան, այլ վասն փրկութեան մերոյ. որպէս ուսոյց մեզ կալ յաղօթս, զոր եւս մեզ դեղթափ, առ 'ի փրկել մեզ 'ի վերահաս չարեաց և ազատել 'ի փորձութեանց. զի աղօթիւք փըրկի ամենայն ոք 'ի չարէ. վասն որոյ ասէր ցաշակերտսն յաղօթս կացէք, զի մի անկանիցիք 'ի փորձութիւն։ Քրտնեցաւ վասն մեր, քանզի ոլոռն ոլոռն կայլակք հոսէին 'ի նմանէ յաւողջութիւն հոգւոց մերոց, որով և ուսոյց մեզ՝ երկիւղիւ Տեառն և քրտամբք ապաշխարութե՟ ուտել զկենարար սուրբ զհացն հաղորդութե՟, 'ի կերակուր հոգւոց մերոց, որով և կեցցուք յաւիտեան։ Արդ՝ եթէ միանգամ ես եմ ասելովն, յետս յետս չոքան և զարկան զգետնի. ապա զի՞նչ լինիցի մեզ. մինչ լսիցեմք զահաւոր և զսոսկալի բարբառն զայն յետին վճռոյ. թէ Ո՛չ գիտեմ զձեզ, և կամ թէ՝ Երթայք յինէն։



## Յաղագս Բաղձոյն վերջին։

Պառաւանալով աւուր 'ի յետոյ մինչ 'ի յանկիւնըս պարտիզին Լաւրինայ. և դիմելով առ արեւելս քառասուն ոտնաչափ, անդ 'ի յաջմէ կողմանէ է վէմն 'ի մէջ որմոյն. զորմէ ասի յաւանդութենէ՝ թէ յաւուր գալստեան Փրկչին մերոյ յԵրուսաղէմ, մինչ իջանէր նստեալ յէշ 'ի լեռնէն Ձիթենեաց, էջ ասա և բաղխեցաւ 'ի վերայ վիմիս, ուր և հանդիպեցաւ Անանէ և որք ընդ նմա հրեշտակք Աբգարու նախակայ արքային մերոյ. Նստի նստեալ 'ի վերայ յաւանակին՝ եկն յԵրուսաղէմ և եմուտ 'ի տաճարն։

Այս յետ ելանելոյ նորա 'ի տաճարէ անտի, գնաց 'ի տուն Գամաղիէլի. ուր գնաց և Անանէ, և երկիր եպագ Յիսուսի. և մատոյց նմա զգիրն Աբգարու. ուր և ետ Տէրն մեր գրել զպատասխանին 'ի ձեռն առաքելոյն Թովմայի. նաև ետ զդաստառակն 'ի վերայ աստուածային երեսացն, տպաւորելով 'ի նմա զտիպ կերպարանաց երկրպագելի դիմաց իւրոց. զոր և առաքեաց ընդ գրոյն առ Աբգար արքայն մեր յՈւրհայ. որպէս գրէ Խորենացին. և Յայսմաւուրս, Դեկտեմբերի 31։

## Յաղագս սուրբ Աստուածածնի աղօթատեղւոյն և վէմին։

Հանդէպ բաղմոցի վիմիս հեռի իբր քառն քայլ՝ ՚ի հարթ տեղւոջ առ հիւսիս, գոյ վէմ մի խրեալ ՚ի յերկիր՝ որպէս խորանարդ առ արեւելս կոյս. ասի յաւանդութենէ՝ թէ ՚ի ժամ քարկոծման սրբոյն Ստեփաննոսի, կայր աստէն սուրբ Կոյսն, և աղօթէր վասն արիութեան և համբերութեան նոյն նախավկայ Մարտիրոսին. որ է Ուխտատեղի ամենայն քրիստոնէից։



## Յաղագս տեղւոյն՝ ուր ելաց Քրիստոս ՚ի վերայ քաղաքիս Երուսաղէմի։

Անտի դիմելով զառ ՚ի վեր քարընկեց մի, յաջմէ Ճանապարհին տեսանի բուրգն մի, ահա անդ ելաց Քրիստոս ՚ի վերայ քաղաքիս։ «Եւ իբրև մերձեցաւ՝ տեսեալ զքաղաքն՝ ելաց ՚ի վերայ նորա, և ասէ. եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւնս քո»։ Ղուկ. ԺԹ. 41, 42։

Թուի թէ յառաջ եկեղեցի էր աստ. այլ այժմ պահապանք ձիթենեաց բնակին ՚ի նմա, և է ՚ի ձեռս Այլազգեաց։



## Յաղագս Յանդիման Տաճարին ։

Եւ աստի զառ 'ի վեր իբր երկու քարըն-
կէց, գոյ աւերակ վանք մի, ուր տակաւին երե-
ւին շինութիւնք մինչև ցայսօր. և տեղի խորա-
նին յայտնի տեսանի. սա կոչի Յանդիման տա-
ճարին ։ « Եւ մինչ նստէր նա 'ի լերինն Ձիթե-
նեաց, Յանդիման տաճարին. հարցանէին զնա
առանձինն, Պետրոս և Յակոբոս, Յովհաննէս
և Անդրէաս ». Մատթ. ԻԴ. 2 ։ Մարկ. ԺԳ. 3 ։
Ղուկ. ԻԱ. 5. 6 ։



## Յաղագս տեղւոյն, ուր զՀայր մերն ուսոյց Քրիստոս ։

Աստի 'ի վեր գոյ տափարակ տեղի մի, ուր
ուսոյց Քրիստոս զՏէրունական աղօթս՝ աշա-
կերտաց իւրոց ըստ խնդրանաց նոցա՝ թէ ու-
սո՛ մեզ. « Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի
անուն քո, եկեսցէ արքայութիւն քո », և այլն.
Մատթ. Զ. 9. 13 ։ Ղուկ. ԺԱ. 2. 4 ։

Եւ աստ եկեր զխորիսխ մեղու՝ յաւուր Համ-
բառնալոյն իւրոյ. « Եւ ետուն նմա ձկան մասն
խորովեցելոյ, և զխորիսխ մեղու. էառ և եկեր
առաջի նոցա ». Ղուկ. ԻԴ. 42, 43 ։

Աստ եկեղեցի էր յառաջ, զրեթէ մինչև
ցայսօր ժամանակի կամար մի և որմք մնան ։

Մերձ սորա գոյ մասն մի քարեայ սեան իբր
նշան լինի, ուր օրհնեաց զԱռաքեալսն. և մեկնե-
ցաւ 'ի նոցանէ, և վերանայր յերկինս. Ղուկ.
ԻԴ. 50 ։

Յաղագս Համբարձման և ոտնատեղւոյն Քրիստոսի ։

Տեղի սուրբ Համբարձմանն Քրիստոսի է 'ի գագաթ լերինն Ձիթենեաց ։ Ըստ յառաջ էր մեծ և հռչակաւոր եկեղեցի 'ի ձև սրբոյ Յարութեան տաճարին՝ ըստ կարծեաց բազմաց այլազգան քրիստոնէից ։ Բայց յամի Տեառն 740 Խոսրով արքայն Պարսից էառ զԵրուսաղէմ, գերեալ աւերեաց . և զկնի յամի Տեառն 1187 մինչ էառ Իւսուֆ Սալահատին սուլթանն Եգիպտոսի զԵրուսաղէմ 'ի ձեռաց Լատինացւոց, քակեալ աւերեցին զտեղիս և զայլ վանորայս իւրացուցին ։

Արդ յետ այնու շինեցաւ 'ի կեդրոն մեծի եկեղեցւոյն, 'ի վերայ ոտնատեղւոյն Քրիստոսի մատուռ մի ութանկեան գմբեթեայ . որոյ կամարք և սիւնքն էին համակ կճեայ, և 'ի միջի նորա հետք և շաւիղ ձախ ոտին Քրիստոսի ։ Արձ սորին հինգ թզաչափ հեռի առ հարաւ՝ է աղօթանոց ազգին հարաւայնոց ։

Եւ արտաքոյ 'ի շրջապատ սուրբ Մատրանն՝ գոյ տեղի խորանաց իւրաքանչիւր ազգաց քրիստոնէից, բայց տեղի խորանին մերոյ կայ յաջմէ մատրանին առ հիւսիս ։

Ի տարւոջն կրկին անգամ գնամք 'ի սուրբ Համբարձումն հանդիսիւ սակս պատարագելոյ . նախ՝ 'ի մեծի պահոց չորրորդ կիւրակէն, որ է Տնտեսին . և երկրորդ՝ յաւուր Համբարձմանն Քրիստոսի, 'ի չորեքշաբաթի երեկոյին երթամ և կալմեն զխորանն, զժամերգութեան պաշտօնն

Հսկմամբ կատարեմք, և ընդ առաւօտն Հանդի-սաւոր Պատարագն մատուցանի անդ. և ան-դստին առնեմք առաջի դրան սուրբ Մատրա-նին. և 'ի վերաբերելն զընծայն, դնի 'ի վերայ Աւանդատեղւոյն, և բազանի խնկարկելով, ընդ այ-գըմ առնեմք 'ի մեծի պահոց շաբաթ երեկոյին, և 'ի կիւրակէին, որ ասի Տնտեսի, որպէս 'ի վերն.

Զկնի սորին Պատարագին, գնամք 'ի Բեթա-նիա 'ի գերեզմանն Ղազարու յուխտ, և դառ-նամք 'ի սուրբ Յակոբ.

Այլ գիտելի պարտ է, զի յամի Տեառն 1834, եղև շարժ. յորմէ խախտեցան կամարք և գըմ-բէթ սորա Համբարձման. վասն որոյ կամեցաւ Լատինն միայնակ նորոգել և շինել. ուստի Հայք և Յոյնք ելեալ 'ի դատարան արգելուլ 'ի շինե-լոյ, ասէ Դատաւորն՝ ունէք և որոնեցէք առ որ ազգ գտանիցի հրովարտակ կամ գիր հնա-գոյն վճռոյ և ստացման տեղւոյն, ածէք առ իս և տեսից. Լատինք և Յոյնք որոնեցին ընդ եր-կար ժամանակ, առ նոսա գիր կամ մուրհակ ինչ ոչ գտաւ. բայց առ մեզ գտան կրկին հնագոյն հրովարտակք և գիր վճռոյ և մուրհակ, մինչ զի 'ի պատմագիրս Տաճկաց գտաւ գրեալ թէ Հայոց է սուրբ Համբարձման տեղին.

Նոյն յամի Տեառն 1837, նորոգեցան հնա-գոյն կրկին հրովարտակք սորա Համբարձման տեղւոյն վճռաւ դատարանի քաղաքիս Երու-սաղէմի՝ թէ Հայոց է. և շինեցան անդ քարա-կիր զոյգ սենեակք ներքնատուն և վերնատուն. առաջի դրան Մատրանին՝ առ հիւսիս և առ հա-

րաւ սալայատակ եղև. և 'ի վերայ դրան առա-
տաղ տախտակամած. 'ի հարաւակողմն դաւթին
կրկին ջրհոր բարեհամ և ցուրտ. և 'ի մէջ Մատ-
րանին յարկելս կառուցաւ սեղան պատարագի,
զարդարելով զսուրբ Մատուռն պատկերօք, աշ-
տանակօք, ջահիւք և լապտերօք և ամենայն զար-
դուք. գրեթէ՝ յամենայն աւուր սուրբ խոր-
հուրդ Պատարագին կատարիւր պաշտամամբ
ժամերգութեան. բայց աւա՛ղ՝ 'ի սուղ ինչ ժա-
մանակս վայելեցաք. քանզի երկոքին ազգք Յոյնք
և Լատինք լցեալ նախանձու՝ միաբանեցան չա-
րութեամբ, և 'ի բարձրագոյն դրանէ քննիչ բե-
րեալ այսր՝ ֆէրմ ետուն առնել. ասելով թէ ան-
ղիս այս մզկիթ է, ընդ որս և ինքեանք յանդըգ-
նեալ՝ բերանովք իւրեանց վկայեցին սոյն թէ՝
ճամի է. վասն որոյ զանխուլ իմն վճիռ հատա-
քակելոյ, 'ի ձեռն կաշառաց և ստիպման Յու-
նաց և Լատինաց, ապա 'ի շնորհուկս տուեալ
հրամանաւ Մահմէտ Ալի դքսին Եգիպտոսի, յամի
Տեառն 1839, 'ի տասն Յունիսի՝ ընդ առաւօտն
յանակնկալ պահու և յեղակարծ իմն գրոհ տը-
ւեալ խառնամբոխ բազմութեանց ընդ այլա-
զան ազանց, Հրէից ասեմ և Հեթանոսաց;
Թմբիկօք և պարուք քակեալ կործանեալ հիմ-
նայատակ արարին զամենայն նորակերտ շին-
ուածս մեր, մինչ զի ոչ մնաց ինչ նշան 'ի շի-
նութեանց, բայց միայն կորկառ քարանց, ա-
հա՛ անդ էր տեսանել զաղաղակ զլալ և զողբու-
մըն և զարտասուս միաբանութեան և ազգին
մերոց բնակաց և եկաց։

Արտաքոյ դրանն դաւթին՝ յաջմէ դոյ մզկիթ և մինարէ. և 'ի ներքոյ նորա է տուն որոշ և զատ. ուրոյ դուռն է յարևմուտս։ Անդ է գերեզման սրբոյն Պեղագեայ ապաշխարողի Անտիոքացւոյ. որ եղև 'ի ժամանակս փոքուն Թէոդոսի 'ի հինգերորդ դարուն. Վարք սրբոց, ԺԲ. հատ. յէր. 298։ Գրի 'ի Յայսմաւուրս Լատինաց 'ի Հոկտեմբեր ութն. զոր յիշէ Մարտինոս պատմիչ։ Բայց հազիւ թողուն մտանել քրիստոնէի ումեք ընդ այն։

## Յաղագս Գալիլեայի։

Մօտ առ հիւսիս հինգ բոպէիւ հեռի է Գալիլեա, ուր ժամադիր եղև Յիսուս աշակերտացն. և յետ Յարութեանն երևեցաւ անդ մետասանիցն։ « Իսկ մետասան աշակերտքն գնացին 'ի Գալիլեա 'ի լեառն՝ ուր ժամադիր եղև նոցա Յիսուս. իբրև տեսին զնա երկիրպագին նմա ». Մատթ. ԻԸ. 16. 20։

Աստ եկեղեցի էր յառաջ, զոր անօրէն բռնաւորք կործանեալ հիմնայատակ արարին, ուր անդ այժմ ոչ ինչ տեսանի, բայց միայն կարկառ քարանց։ Այլ Ուխտաւորք համարձակ գնան անդ առ 'ի լնուլ զհոգևոր փափաք սրտից իւրեանց։



## Յաղագս Բրաբիոնի տեղւոյն։

Ի մէջ սրբոց Համբարձման և Գալիլեայի առ արևելս գոյ եկեղեցի մի աւերակ. ուր հ-րեշտակապետն Գաբրիէլ երևեցաւ սուրբ Կուսին, և ասաց նմա. Ուրախ լեր բերկրեալդ 'ի կանայս. ահա կոչէ զքեզ Արարիչն քո և Որդին Միածին, և ետ նմա զպսակն Բրաբիոնեայ. վասն որոյ կոչի Բրաբիոնի տեղի մինչև ցայսօր։ Յայսմաւուր, Օգոստոս 15։



## Յաղագս Բեթանիա գիւղին՝ և գերեզմանին Ղազարու։

Բեթանիա գիւղն է յարևելս Համբարձման՝ քան բոպէիւ հեռի. 'ի մտանելն 'ի Բեթանիա՝ արտաքոյ ճանապարհին 'ի ձախակողմն գոյ աւերակ տուն մի, զորմէ ասի՝ թէ սա է տուն Սիմոնի բորոտի. ուր Քրիստոս օծաւ 'ի Մարիամայ իւղով անուշիւ։ "Եւ մինչ էր 'ի Բեթանիա 'ի տուն Սիմոնի բազմեալ". Մատ. ԻԶ. 6։ Յովհ. ԺԱ. 2։

Գերեզման չորեքօրեայ յարուցելոյն Ղազարու կայ 'ի վերայ հասարակ ճանապարհին, յաջմէ աւերակ ամրոցին, ուր եկն Յիսուս, և արտասուեաց 'ի վերայ գերեզմանին իւրոյ մեռելոյ. և 'ի ձայն բարձր աղաղակեաց, և ասէ. Ղա՛զարէ՝ արի՛ եկ արտաքս. և յարեաւ չորեքօրեայ մեռեալն. Յովհ. ԺԱ. 43։ Եւ որ իջանէ քսան և հինգ աստիճանաւ, և է նեղ և անձուկ ճանա-

պարհ. և այն է փոքր՝ խոր և խաւար. և չորս աստիճանաւ իջանէ անտի 'ի կամարակապ այր մի, ուստի Տէրն մեր կոչեաց զՂազարոս 'ի գերեզմանէն. Իսկ Ուխտաւորք վառեալ մոմ 'ի ձեռին ունելով իջանեն անդ.

Ի ձախմէ նորին է աւերակ տաճար մի, զոր շինեաց Ֆուլկոն արքայն Լատինաց՝ Գ. Թագաւորն Երուսաղէմի, առ 'ի պահպանելոյ զմանս կուսանաց՝ որ կային անդ յայնմ դարու՝ ըստ Մարինոսի.

Ի հիւսիսակողմն Բեթանիոյ իբր տասն և հինգ քայլիւ հեռի՝ գոյ քար մի հանգոյն տապանի, կարծր, կլորակ և կարմրագոյն. որոյ երկայնութիւնն է հինգ ոտնաչափ 'ի հիւսիսոյ առ հարաւ, յորոյ վերայ նստաւ Քրիստոս մինչ եկն 'ի Բեթանիա, որում ընդ առաջ եղև նմա Մարթա, և անկեալ առ ոտս նորա ասաց. «Տէր եթէ աստ լեալ էիր, չէր մեռեալ եղբայրն իմ»: Որում պատասխանեաց Յիսուս, «Եթէ հաւատասցես, տեսցես զփառս Աստուծոյ»: Եւ անտի եկն 'ի գերեզմանն Ղազարու.



## Յաղագս աղբերն Սամփսոնի ։

Հեռի 'ի գեղջէն Բեթանիայ իբր տասն և հինգ քայլիւ` առ հիւսիս 'ի մէջ ձորոյն, է աղբիւրն, զորմէ գրի` Դատ. ԺԵ. 18. 19. «Վասն այնորիկ կոչեցաւ զանուն նորա Աղբիւր անուանեալ ծնօտի մինչև ցայսօր »։ Բանալի ծնօտիւ իշոյ Սամփսոն եհար զհազար Այլազգիս. և մինչ պապակէր 'ի ծարաւոյ աղաղակեաց առ Տէր, եւ ջուր 'ի ծնօտէ իշոյն և էարբ ։



## Յաղագս Բեթփագէի ։

Ի հարաւակողմն Բեթանիոյ` է գիւղ մի աւերակ, որ կոչի Բեթփագէ. ըստ Արաբացւոց Աբուդիս, ուր տածէին զողջակէզս ։ Անտի առաքեալքն ածին զէշն և զյաւանակն. յորոց վերայ նստաւ Քրիստոս, և եմուտ յԵրուսաղէմ. «Երթայք` ասէ, դուք 'ի գեօղդ` որ ընդդէմ ձեր կայ, կամ հանդէպ ձեր կայ »։ Մատթ. ԻԱ. 1։ Մարկ. ԺԱ. 2։ Ղուկ. ԺԹ. 30։



## Յաղագս աղբերն Քրիստոսի :

Ելեալ 'ի Բեթանիոյ՝ և ուղղակի իջեալ յԵրիքով՝ 'ի ձախմէ ճանապարհին գոյ բարեհամ աղբիւր մի, որ կոչի Աղբիւր Յեսուայ. ԺԲ. 18. և աղբիւր Ռոգելայ. և այս նախ քան զՔրիստոս : Նաև կոչեցաւ աղբիւր Քրիստոսի, կամ Առաքելոց. քանզի անցանելն ընդ այն, բազմիցս հանգչէին անդ, և ըմպէին անտի ըստ Մարինոսի:



## Յաղագս Երիքովի :

Յերուսաղէմէ մինչ յԵրիքով վեց ժամ է, ուր է ընդարձակ դաշտ, բայց այժմ փոքր գիւղ մի է, 'ի մէջ բերդին կայ մեծ յորդաբուղխ աղբիւր. և 'ի հիւսիսակողմն նորին է մեծագոյն աւազան մի կամ լիճ, բոլորն քարակերտ յորում գոն բազում ինքնաբոյս ծառք :

Նաև ետես Յեսու զհրեշտակ Աստուծոյ: «Եւ եղև մինչ էր յԵրիքով, ամբարձեալ զաչս իւր՝ ետես զի կայր առաջի նորա այր՝ և սուսեր մերկ 'ի ձեռին նորա. և մատուցեալ Յեսուայ՝ ասէ ցնա, մե՞ր ես, եթէ 'ի թշնամեաց մերոց. և նա ասէ ցնա, ես զօրավար եմ զօրու Տեառն, և այժմ եկի»: Յես. Ե. 13, 14: Զորոյ զպարիսպն կործանեաց Յեսու զօրութեամբ Տեառն, և աղօթիւք և տապանակին Աստուծոյ. Յես. Զ. 1. 20: Յօրինակ աւերման և կործանման դժոխոց :

Նաև Քրիստոս մտեալ շրջէր. «Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով... եւ Զաքէոս 'ի ժանտաթզենին ելեալ տեսանել զՅիսուս. հայեցաւ 'ի վեր Յիսուս և ասէ ցնա, Զաքէ՛ փութա էջ այտի, զի այսօր 'ի տան քում արժան է ինձ ագանիլ. փութացաւ և էջ, և ընկալաւ զնա ուրախութեամբ». Ղուկ. ԺԹ. 1. 10: Այս Զաքէոս եղև Եպիսկոպոս Երուսաղէմի:

Ի մտանելն Յիսուսի յԵրիքով, և յելանելն՝ լուսաւորեաց զկոյրս: Եւ 'ի մտանելն նորա յԵրիքով, կոյր մի նստէր առ ճանապարհաւն. Ղուկ. ԺԸ. 35: Եւ ընդ ելանելն նորա յԵրիքովէ՝ որդի Տիմէի Բարտիմէոս. Մարկ. ԺԱ. 46: Մատթ. Ի. 30:

Բայց աստ ելանէ անուշահոտ կիտրոն, որ ոչ ուրեք գտանի. նաև իւղ Զագոնի, որ կոչի Զըգըմ եաղը. որ լինի դեղ բժշկութեան խոթացաւք, և մեղամաղձի, և այլն:



## Յաղագս աղբերն Եղիսէի:

Աղբիւրն Եղիսէի մարգարէին է 'ի մէջ Երիքովի՝ և լերինն փորձութեան, որոյ ջուրն էր ժանտ և դառն և աղի, զոր Եղիսէ աղօթիւք և օրհնեալ աղիւ քաղցրացոյց. Դ. Թագ. Բ. 19: Որոյ ջուրն է բժշկարար. վասն որոյ աստ 'ի պատիւ նորա շինեալ էր 'ի վերոյ Աղբերն եկեղեցի, բայց այժմ աւերակ է:

## Յաղագս Լերինն Փորձութեան :

Հանդէպ Երիքովի առ արեւմուտս է Լեառն փորձութեան, որ է 'ի ձախմէ ճանապարհին Երիքովի յանկոյս ձորոյն. ուր Քրիստոս պահեաց զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր, ապա քաղցեաւ. Մատթ. Դ. 2. Նա է յոյժ բարձր եւ դժուարաւ ելանելի, թէպէտ լեառն մի է. բայց տեղին զատ յիրերաց. զի այլ է տեղին ուր պահեաց, եւ այլ՝ ուր փորձեաց զնա սատանայ. նախ՝ ասէր, ասա՛ քարինքս հաց լինիցին. երկրորդ՝ հանէ զնա 'ի գագաթն լերինն, 'ի հիւսիսակողմն Երիքովի. վասն որոյ ասէ. «Առեալ ածէ զնա սատանայ 'ի լեառն մի բարձր յոյժ, եւ ցուցեալ զամենայն թագաւորութիւնս աշխարհի եւ զփառս նոցա». Մատթ. Դ. 8. Ղուկ. Դ. 5. Յառաջ էին անդ բազում եկեղեցիք. բայց այժմ աւերակ են :

Առ արեւելս Երիքովի է վանքն Յովհաննու Մկրտչի, եւ այլ եկեղեցիք որք անծանօթ են մեզ:

## Յաղագս Նաբաւ լերինն :

Առ արեւելս յանդիման Երիքովի է Նաբաւ կամ Աբարիմ լեառն, հինգ ժամու հեռի. սա է յոյժ բարձր. եւ կոչի Բասքայ՝ որ թարգմանի գագաթն, ուր եւ Մովսէս, եւ ետես զերկիրն Աւետեաց՝ անդ մեռաւ եւ թաղեցաւ. Թուոց. ԼԳ. 47. Բ. Օրին. ԼԲ. 49.

## Յաղագս Յորդանան գետոյն։

Յերիքովէ մինչ 'ի գետն Յորդանան՝ ուր մկրտեցաւ Քրիստոս՝, է երեք ժամ։ «Յայնժամ գայ Յիսուս 'ի Յորդանան առ Յովհաննէս մկրտել 'ի նմանէ»։ Մատթ. Գ. 13։ Գետն գայ 'ի հիւսիսոյ և գնայ առ հարաւ, և անկանի 'ի մեռեալ ծովն. Ծննդ. ԺԴ. 10։ Յես. Գ. 13։ Դ. Թագ. Բ. 13։



## Յաղագս լերինն Քորէբայ։

Յայնկոյս Յորդանանու է Քորէբ լեառն, և է չորս ժամու հեռի։ Ուստի վերացաւ Եղիա յերկինս հրեղէն կառօք. Դ. Թագ. Բ. 11։

Անդր Յորդանանու է վանքն Երասիմոսի, և կոչի Առիւծ վանք. և երկու մղոնաւ հեռի է աղբիւրն, զոր բղխեցոյց Երասիմոս. և 'ի հարաւակողմն է վանքն Քարիտոնի, և այլն։ Յայսմաւուր, Ապրիլ 25. Սեպտեմբեր 29։



## Յաղագս Մեռեալ ծովուն ։

Սա կոչի Ձոր աղի, և ծով Անապատից. Ծննդ. ԺԴ. 3։ Թուոց. ԼԴ. 3։ Կոչի և ծով Արաբիայ, Արաբացւոց, և ծով Սարոյ. Բ. Օրին. Գ. 17։ Անդ. Դ. 49։ Յես. Գ. 16։ Անդ. ԺԵ. 5։ Դ. Թագ. ԺԴ. 25։

Ծովս այս է առ արևելս երկրին Աւետեաց՝ վասն որոյ կոչի և ծով Արևելից. Եզեկ. ԽԷ. 18։ Զաք. ԺԴ. 8։ Կոչի և ծով Ասփալտայ, կպրոյ, և նաւթի, յորմէ ելանէ աղ, կուպր, և նաւթ ազնիւ։ Կոչի ծով մեռեալ, վասն զի ոչ գտանին ՚ի նմա ձկունք և այլ կենդանիք՝ սակս խիստ աղի գոլոյն և սաստիկ դառնութեանն։

Առ հարաւ ծովուն է երկիրն Սոդոմայ. զոր պատժեաց Աստուած ծծմբախառն հրով, յորում բնակէր Ղովտ եղբօր որդի Աբրահամու. յորմէ ելնա առաջնորդութեամբ հրեշտակաց. և կինն նորա եղև արձան աղի. ուր կայ մինչև ցայսօր ժամանակի. Ծննդ. ԺԹ. 26։ Զորմէ վկայեն ամենայն ականատեսք։



Յաղագս Քարաք քաղաքին ։

Քարաք է յարևմտակողմն մեռեալ ծովուն, և է տասնևվեց ժամու հեռի՝ 'ի Բեթղեհեմէ, առ հարաւ Նորին, և է 'ի գլուխ լերինն. որոյ շրջապատն է պարիսպ. և է աղբիւր յորդաբուղխ. արտաքոյ քաղաքին յարևմտակողմն իբր կէս ժամու հեռի ։ Յորում բնակէին բազում Հայք 'ի չորեքտասան դարուն, և եկեղեցին անդ կառուցեալ կայր յանուն սրբոյն Գէորգայ. յորոյ բնակչաց տակաւին գտանին կրկին տունք յազգէս Հայոց յԵրուսաղէմ ։ Այժմ բնակիչք են Յոյնք իբր տունք հարիւր, և ունին ինքեանց նորաշէն եկեղեցի. իսկ սուրբ Գէորգ եկեղեցին մեր է 'ի Թաղն բարբարոսաց. վասն որոյ փակեալ կայ այժմ ։

Յամի Տեառն 1853, գտաւ Յայսմաւուրք մի ձեռագիր 'ի քաղաքի աստ յԵրուսաղէմ. զոր գնեաց՝ Տ. Յովհաննէս Սրբազան Պատրիարք, և եդ 'ի գրատունն. որոյ յիշատակարանն գըրեալ է այսպէս.

Գրեցաւ Յայսմաւուրս 'ի Թիւ Հայոց՝ ՉԿԵ. ձեռամբ Վահանայ 'ի Դրազարկ վանս 'ի դուռն տաճարի սուրբ Աստուածածնի. 'ի Թագաւորութեան մանկահասակ Լևոնի արքայի որդւոյ Օշնի արքայիս, և այլն ։

Իսկ Լևոն Թագաւոր ամենայն Հայոց՝ 'ի Թըւին ՉՂԹ. շնորհեցի գիրքս Քարաքոյ Հայոց եկեղեցւոյն, որ կարդան յամենայն ժամ յեկեղեցին, և այլն . . . ։ Կազմեցաւ Յայսմաւուրքս

լեռնակողման վանացն սուրբ Յովհաննու Մը-կրտչի. ձեռամբ Յովհաննէս Աբեղայի. 'ի Թիւ-Հայոց՝ ՊՂԷ ։



Արդ՝ յայսմիկ լիցի, զի մոռացեալ է Էմմա-ուս գիւղն, յերես 37. նշանակել 'ի Սուրբագրու-թեանս յայսմիկ, ուստի ակն ունելով ներողա-մտութեան Ընթերցասիրացդ՝ գրեմ, զի Էմմա-ուս գիւղն՝ որ յԱրաբացւոց կոչի Էմվաս, հինգ ժամու հեռի է յԵրուսաղէմէ, և երեք յայլի գիւղաքաղաքին Ռեմլէի, որ և հեռի է անտի իբրև ժամս երիս ։

Յայս գիւղ գնաց Յիսուս յետ ինքնազօր Յա-րութեան իւրոյ ընդ երկուց անձանց՝ ոչ յայտ-նելով զինքն. և յերեկոյին 'ի բազմիլ նորա ընդ-նոսա 'ի հաց, ետ ծանօթս նոցա 'ի բեկանել հացին, և աներևոյթ եղև 'ի նոցանէ. Ղուկ. ԻԴ. 13 ։



Ապաքէն յաւարտ Ստորագրութեան սրբոյ Քաղաքիս ցանկայի և փափաքէի ՚ի սիրտ և ՚ի հոգի նշանագրել և զյաջորդութիւն Սրբազան Պատրիարքաց Առաքելական Մեծի Աթոռոյս՝ սկսեալ յառաջին Պատրիարքէ, որ էր Արդար մականուանեալ Տեառն եղբայր Սրբազան Առաքեալն Յակոբոս Ալփեան. սակայն ընդ բազում ժամանակս հետաքրքրութեամբ և խուզարկութեամբ ՚ի ձեռագիր և ՚ի տպագիր մատեանս նախնեաց մերոց՝ և երևելի հեղինակաց՝ և հաւատարիմ պատմագրաց խնդրեալ ուշի ուշով նկատմամբ, չեղաք ձեռնհաս ՚ի գիւտ անընդմիջահատ շարադասութեան բարեյիշատակ անուանց իւրաքանչիւրոց մինչև ցայսօր ժամանակի. և քաջ իրազեկ եղէ՝ զի ՚ի վերջ՚ն այս փափաք սրտի մերում քան զկար մնաց մերոց, վասն որոյ զայն աշխատասիրութիւն թողի առաւել ներհուն հմտագունից. որք տեղեակս են եկեղեցական պատմութեանց, և լիացեալ ամենայն հին գրուածովք նախնի մեծիմաստ հեղինակաց:

Եւ այս սկսայ որոնել ՚ի սրբավայր Տեղիս յիշատակարանս ինչ հին թուականօք, և բայց ՚ի միոյ սատի հնագոյն առ այժմիկ ոչ կարացի գտանել, որ է Տապանաքար Տ. Աբրահամ Պատրիարքի սրբոյ Աթոռոյս, որ եկեալ ՚ի գաւթէ սուրբ Վանուցս՝ և գնայեալ ընդ արևմուտ առ դուռն փայտեայ, յաջմէ էր երբեմն փոքր տեղի ինչ անշուք իբր սենեակ դռնապանաց. զոր յառաջ քան զամս ինչ քակեալ՝ շինեցին բազմոց կամ՝ նստարան, անդ անոր գտա. այս

տապանաքար, զոր այժմ եգին 'ի ճակատ տա-ճարի նոյն քաղաքին, յորում երկաթագիր փորագրեալ է այսպէս.

«Այս է տապան և պահարան սրբանեալ մարմնոյ Տեառն Աբրահամու եպիսկոպոսի Երուսաղէմացւոյ երջանիկ Պատրիարքի սրբոյ Աթոռոյս, որ հանգեաւ 'ի յիշխանութեան Սուլթան Սալահատինին. 'ի Թիւ Հայոց՝ ՈԽԱ»։ Ըստ համեմատի Թուականի Փրկչին մերոյ 1192. և յորէ անտի մինչև ցայսօր են ամք վեց հարիւր վաթսուն և եօթն: Այս յայսմանէ յայտնապէս երևի, զի յորէ անտի և յառաջ իսկ զայն Թուական՝ ունիմք Պատրիարք 'ի մեր քաղաքս Երուսաղէմ:

Այս հարկ 'ի վերայ կայ մեզ աստուածահաճոյ աղօթիւք և խնկանուէր մաղթանօք Երանեալ Սրբազան Հարց մերոց, որոց անուանք գրեալ են 'ի դպրութեան կենաց, խնդրել 'ի Տեառնէ մինչև 'ի կատարած աշխարհի հաստատուն և անսասան պահել զԱռաքելական Աթոռըս սուրբս 'ի պարծանս լուսութեան ազգիս Հայոց: և զայժմեան Առաքելապատիւ Սրբազան Պատրիարքս Հոգևոր Հայրն մեր ընդ բոլոր հոգեկեցորդ միաբան հարց և եղբարց մերոց՝ բազմամեայ կենօք կարողացուցանել 'ի շինութիւն և 'ի բարեկարգութիւն մեծի Աթոռոյս, և զօրացուցանել ամենայն առաքինական բարեմասնութեամբք, զարդարեալ հաւատով յուսով և սիրով. առ 'ի ընդունիլ յաւուրն յետնում զանթառամ փառացն պսակ 'ի Վերինն Երուսաղէմ յարքայութեանն երկնից:

# ԲԱՆ
# ՎԵՐՋԱԲԱՆԱԿԱՆ
## Ի ԽՆԴՐՈՑ ԲԱՐԵՍԷՐ ՈՒՐՈՒՄՆ Ի ԾԱՆՈՒՑՈՒՄՆ
## Ի ԽՐԱՏ ԵՒ Ի ԿՐԹՈՒԹԻՒՆ
## ԱՍՏՈՒԱԾԱՊԱՇՏՈՒԹԵԱՆ



«Եկայք, և ելցուք 'ի լեառն Տեառն՝ և 'ի տուն Աստուծոյ Յակովբայ, և ցուցցեն մեզ զճանապարհս նորա, և գնասցուք 'ի շաւիղս նորա, զի 'ի Սիոնէ ելցեն օրէնք, և բան Տեառն յԵրուսաղէմէ»: Միքիա. Դ. 2:

ՈՐՊԷՍ ԵՒ նախագահ է Առաքելական Աթոռս, և մայր է ամենայն քրիստոնէից, վասն որոյ մայրական գթութեամբ խնամէ զհաւատացեալս ջամբելով զանընդհատ կաթն շնորհաց, առ 'ի յաճել հոգևպէս և բարիոք կեալ լաւ մարմնոյ՝ և անսայթաք լինել 'ի գնացս երկնային ճանապարհին վերնոյն Երուսաղէմի սուրբ Արքայութեան. և անխոտոր ընթանալ 'ի շաւիղս Սրբազան Հարցն մերոց նախնեաց, որոց բարեկարգ արարողութեամբ հիմնեալ կայ Հայաստանեայց եկեղեցիս սուրբ և հաստատեալ պահի մինչև ցայսօր և մինչև յյաւիտեան:

Արդ՝ վասն ստէպ աղաչանաց կարևոր դատեցաք զայս դուզնաքեայ խրատական բանս 'ի լոյս ածել՝ հաղորդս առնել եկեղեցական հաւատացելոց՝ որով բարիոք մարզեալ և կրթեալ

'ի վարս պարկեշտս և յուղիղ գնացս, որով մը-տօք և հոգւով համբերութեան կարասցես ու-ժանապէս ծառայել մեծվայելչութեանն Աս-տուծոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. Նաև ըստ Առաքելական բարեկարգ սահմանադրութեանն և ըստ Նախնական Սրբոց Հարցն հոգեշունչ ա-բարողութեան փութով հանապազ կատարել զԱստուածային պաշտօնն ըստ կարգի և ըստ աստիճանի, առ 'ի արժանաւոր գտանիլ և վայ-ելել զանձառ շնորհսն սուրբ խորհրդոցն, և փրկառիթ անօրինական սուրբ Տեղեացն Քրիս-տոսի Աստուծոյ մերոյ ։

Սակս 'ի հարկանել զարթուցիչ փայտին, և 'ի գոչել ժամահարին 'ի գիշերի, պարտ է իւ-րաքանչիւր ումեք փութապէս կանխել՝ և ան-դանդաղ ելանել յանկողնոյ, և գոհութիւնս մատուցանել Արարչին և Փրկչին Աստուծոյ. քանզի որ առաւել սիրէ, կանխագոյն յառնէ. որ կանխագոյն յառնէ՝ առաւել սիրէ. ըստ մը իւղաբեր կանանց. Նաև «Պարտ է նախ քան զա-ռեգակն կանխել 'ի գոհութիւն քո, և յառաջ քան զծագել լուսոյ՝ յանդիման լինել քեզ»։ Իմաստ. ԺԶ. 28. Այս կանխել և ուղղել զանձն, և ունել զինքն 'ի պատրաստի. ոչ սոսկ զմարմինն և եթ, այլ զներքին զգայարանս. այսինքն զմի-տս, զմիտս, և զյիշողութիւնս. քանզի արդ ա-ւասիկ ժամ է արդէն իւրաքանչիւրոց անձանց բանաւոր փառաբանչացս հանդիսանալ հասատչին

և փրկողին Յիսուսի Քրիստոսի. և ջերմեռան-դըն աղօթիւք և հայցուածովք խոսակից լինել՝ ընդ Նմա :

Երկրորդ՝ 'ի հարկանել երկաթեայ կոչնակին առաւօտնոյ Սաղմոսին. պարտ է պարապել 'ի սաղ-մոսերգութիւնս, յաղօթագիրս, 'ի պատմութիւնս, և 'ի վարս Երանելի վկայից և ընտրելոցն Ա-ստուծոյ, ըստ իւրաքանչիւր բարեյօժար կամաց և հոգևոր փափագանաց : Նոյն յետ այնորիկ արժան է 'ի ձեռս առնուլ զՏօնացոյցն և զՕրա-ցոյցն. զորս կրկին աչօք տեսանել և գիտել պարտ է, թէ զի՞նչ է պատկեր աւուրն, տէրու-նի՞ իցէ, և թէ ապաշխարութեան, զի՞նչ ա-ւուր ձայնն, և զի՞նչ սրբոց Տօնակատարութիւնք, և զի՞նչ ինչ պարտ է ընթեռնուլ և երգել յե-կեղեցւոջ 'ի դասի և յատենի. զորս մի ըստ մի-ոջէ 'ի միտս ամբարեալ՝ գանձել 'ի յիշողու-թեանն. զի զայն ամենայն 'ի կարևոր ժամու ուղիղ ընթերցցին, և անվթար և անվրէպ եր-գեսցեն 'ի փառս և 'ի պատիւ Ամենասուրբ Եր-րորդութեան :

Իսկ 'ի ժամանել սաղմոսերգութեան 'ի կանո-նագլուխն առաւօտնոյ Սաղմոսին. աջակողմեան սաղմոսերգուն՝ փոքրագոյն ազդարար զանգա-կաւ ազդ առնէ լուսարարին առ 'ի հարկանել զփայտեայ կոչնակն երկրորդի Սաղմոսին. յայն-ժամ խնկարկու սարկաւագն՝ և փոխասաց զոյգ-դպիրք ամենայն փութով արիութեան և յոր-դեռանդն փափագանօք պարտին ընթանալ յե-կեղեցին :

Իսկ 'ի ժամանելն առ Մատուռն բամակայքու Սրբազան Առաքելոյն, ուր ամփոփեալ կայ արիւնամած պատուական գլուխ նորին, անդանօր ջերմեռանդն սրտիւ և հոգւոյ փափագանօք և երկրպագութք մատուցանել զյարգ և զպատիւ. Նոյնպէս և յելանելն խոնարհեալ առաջի տէրունական Պատկերին սուրբ Փրկչի, արժանավայել յարգութեամբ ապաւինիլ 'ի բարեխօսութիւն սրբոց Յակոբեանց երջանիկ Առաքելոցն. հայցելով 'ի Տեառնէ զշնորհս անձառ ողորմութեանն, զներումն սխալանաց` և զթողութիւն յանցանաց. զխաղաղութիւն ամենայն աշխարհի` և զհաստատութիւն Առաքելական գահիս. և անտի դէպ ուղիղ արժան է երթալ և մտանել 'ի սուրբ Ստեփաննոսի պահարանն, և ծնրադրութեամբ` և ջերմագին սիրով, և բազմահայց պաղատանօք կալ յաղօթս առաջի խաչելութեան սուրբ Պատկերին. և ս և երից հըրաշազարդ խորանացն` որչափ և կամք իցէ. քանզի Աստուած ոչ հայի 'ի քանակն, այլ 'ի սիրտ. ըստ այնմ, « Մարդ, հայի յերեսս, և Աստուած 'ի սիրտ ». Ա. Թագ. ԺԶ. 7: Արդարև հայի նա 'ի սրբութիւն սրտի, 'ի մաքրութիւն մտաց, և յուղղութիւն վարուց ծառայից իւրոց և պաշտօնէից:

Ապա վերստին զնմա ածեալ և 'ի յուշ բերեալ զկանխաւ անդ խորհեցեալսն և անվէճ տրամադրութեամբ հաստատեալսն 'ի միտս, որպէս զի անխափան պարզ և յստակ արտասանեալ երգեսցեն 'ի ջերմեռանդութիւն ժողովրդոց.

և մի՛ երբէք ձանձրութիւն ինչ ցուցցեն յան-
ձինս իւրեանց, զի անհաճոյ է Աստուծոյ օրհ-
նութիւն և գոհութիւն հեղգութեամբ մատու-
ցեալ, որպէս խօսի սպառնայ բանիւ մարգա-
րէին այնմ՝ որ հեղգանայ յԱստուածպաշտու-
թեան. «Անիծեալ լիցի, ասէ, որ գործէ ըզ-
գործ Տեառն հեղգութեամբ». Երեմ. խԸ. 10:
Ապա քանի՞ առաւել մեզ քրիստոնէիցս սպառ-
նայ. որովհետև միշտ պարտական եմք օրհնել
և գովել զնա. ըստ այնմ, «Պարտ է յամենայն
ժամ կալ յաղօթս, և մի՛ ձանձրանալ». Ղուկ.
ԺԸ. 1:

Իսկ 'ի հատանել 'ի կանոնագլուխ երկրորդ
Սաղմոսին, աջակողմեան սաղմոսերգուն ըստ ա-
ռաջնոյ նուագին՝ փոքրագոյն փողովն ազդ առ-
նէ լուսարարին՝ առ 'ի հնչեցուցանել զզանգա-
կըն, յայնժամ գզերք և միահամուռ որքագու-
մար միաբանութիւնք եկեալ խմբին 'ի բարե-
բանութիւն Ամենասուրբ Երրորդութեանն:
Ինչ է տեսանել և զաղաւնասարաս երամս՝ Տէ-
րունական մեծահաւատ Ուխտաւորաց, որք ըն-
թացեալ յեկեղեցին արտասուախառն պաղա-
տանօք, լիաբերան գոհութեամբ, զղջմամբ սըր-
տի, և մեղայ գոչելով դիմեն 'ի մատուռն սուրբ
Ցակոբայ, զոր բարեխօս ունելով՝ փառաւորեն
զանուն Ամենասուրբ Երրորդութեան. յորմէ
մեծաւ յուսով ակն ունիմք շնորհիւ ողորմու-
թեան իւրոյ՝ արժանաւորեալ փառաւորիլ աստ
և 'ի կեանն յաւիտենից:

Արդ՝ մի՛ երբէք զմտաւ ածեալ ասիցես, թէ

չէ՞ ինձ պիտոյ։ Եւ զի՞նչ փոյթ իցէ ինձ զայդպանէ, մի՞ թէ դատապե՞տ իցեմ և ժամանաց. զի զառացելովքդ փոյթ կալեալ՝ հոգ տարայց։ Մի՛ որոյ առեմ քեզ, զի ամենայն գղերք եկեղեցւոյ, եթէ դպիր, և եթէ սարկաւագ, եթէ ձայնեղք և եթէ բաղաձայնք, ըստ տեղւոյ՝ ըստ ժամանակի՝ և ըստ ժամու պատշաճի դատապետեն և ժամանաց. այլ ո՛չ առանց հրամանի դատապետին, որ խոնարհութեամբ վարի ընդ ամենեսին, և ըստ իւրաքանչիւր կարողութեան և արժանաւորութեան, և ըստ չափու գիտութեանն սիրով սրբութեան մատակարարէ նոցա զերգս հոգևորս և զընթերցուածս, և սիրաշահէ զնոսա. զոր տեսեալ եկեղեցական պաշտօնէից, և ս.քան զի ս. ուրախացեալ և ջան եղեալ եռանդագին բաղձանօք փութասցին կատարել զԱստուածային պաշտօնն ՚ի փառս անուան նորա։

Մի՛ և մի երբեք արտօժեսջիք բամբասել զոք, և ծաղր առնել, կամ դատարկաբանել, և մի բարձրաձայն աղաղակաւ վիճել. այլ մեղմով և քաղցրաբանութեամբ վարիլ ընդ ամենեսին ՚ի տան Տեառն՝ որ է Եկեղեցի սուրբ։ Քանզի եկեղեցին է տուն Աստուծոյ՝ բնակարան հրեշտակաց՝ ժողովարան սրբոց՝ քաւարան մեղաւորաց՝ կրթարան Աստուածպաշտութեան՝ և ակն եօթնարբեան շնորհաց Հոգւոյն սրբոյ. զայս ամենայն անմոռաց կալեալ ՚ի մտի՝ մի վարեսջիք ոչ դատարկաբանութեամբ. զի՝ «Ի՛նչ ամենայն դատարկ բանի զոր խօսիցին մարդիկ, տացեն համար յաւուրն դատաստանի»։ Մատթ. ԺԲ. 36։

Արդ՝ եթէ կամիս լինիլ ուսանել․ մասունք հոգւոյ փափագանօք առ գիրս Սրբազան Առաքելոյն Յակոբայ արդարոյն, և ՚ի մեկնիչ սուրբ Գրոց նորին Սարգիս Շնորհալին․ յորոց քաջ ուսեալ՝ տեղեկասցիս, թէ զի՞նչ ինչ գրեն զկրօնաւորացն և զքրիստոնէից․ Այս ուրեմն խոյս տացուք յանկարգ գնացից, և երկիւղիւն Աստուծոյ պատսպարեսցուք զանձինս մեր և զզգայարանս․ հետևելով ուղիղ և պարկեշտ վարուց, և զգեցցուք զզարդ վայելչութեան հոգւոյ, և մի՛ զանկն ընդ վայրօք ածեալ յածեսցուք, զոր յանդիմանէ Իմաստունն․ «Աչք անմտի ընդ վայրօքն յածեն»․ Առակ․ ԺԷ․ 24․ Այլ մի՛ յեցեալ յորմն յանկշիռս բերանաբաց կայցէ որք վասն պտտաքին զարդուց ոսկւոյն և խորանացն, որովք միայն՝ Թանձրագոյն միտք հաւատացելոց անօսրացեալ կակղանան, և զգալի տեսութեամբ առ իմանալին ժամանեալ օգտին, և վերջացեալ Աստուածային տեսութեան՝ և երանական ձայնին արժանի լինին ։

Այլ զմտաւ ած և խորհեսջիր զզարդուց հոգւոյդ․ և տես թէ ունիս զարժանաւորս զարդերս առաքինական բարեմասնութեանց, և զմաքուր հանդերձս սուրբ հարսանեաց, զպետական և զգործնական զօրանի արդիւնս բարութեանց․ գերբնականաւն պանծացիր՝ այսինքն հաւատոյ լուսոյն փայլեալ պայծառացիր․ հաստատուն յուսով ամրացեալ, և սուրբ սիրովն ռահվիրայեալ զարդարեսջիր լոյս հոգւոյ և լոյս մարմնոյ․ մի՛ գուցէ լուիցես զոհանոր զձայնն

թէ, «Ընկե՛ր, զիա՞րդ մտեր այսր, որ ոչ ունէ-
իր զհանդերձ հարսանեաց»։ Մատթ. ԻԲ. 12։
Ա՛յլ ուշի ուշով ունկնդի՛ր լե՛ր Աստուածային
պատգամացն, և յերգելն զերգս հոգևորս՝ մը-
տօք ձայնակից գաղջի՛ր ջերմ սիրով իբրև 'ի միո-
ջէ բերանոյ, 'ի փառս և 'ի գովեստ ամենամե-
ծի Անուան Նորա։

Եւ առանց իրիք բանաւոր պատճառի՝ մի՛
ոք համարեսցի ելանել արտաքս 'ի դասէն և նըս-
տիլ. և եթէ հարկ ինչ լիցի ելանել, անդէն 'ի
գուճս անկեալ անմռունչ, մտախոհ լիցի և ուն-
կնդիր երգոց և աղօթից և բանից իմաստից։
Եւ եթէ ոք ստիպեալ հարցանիցէ քեզ բան ինչ
'ի լուծումն տարակուսական բանից. սակաւա-
բան լե՛ր, և փութով լուեա՛. քանզի պա՛րտ է ըն-
բազումս լսել, և սակաւս խօսիլ ըստ տեղւոյն,
ըստ իրին, և ըստ ժամանակին։ Եւ արգիլեալ
է բոլորովին վիճաբանութի՜ն յեկեղեցւո՛ջ յինչ
և իցէ նիւթս. եթէ կամիցիս տեղեկանալ ի-
մաստից բառից կամ բանից ինչ, յետ աւար-
ման պաշտամանն երթեալ 'ի սենեակն, քաղա-
քավարութեամբ և հոգւով հեզութեամբ հար-
ցեալ ըստ արժանւոյն տեղեկասցիս ամենեցուն։
Եւ մի՛ երբէք 'ի մոլեկան կրիցն հպարտութեան
վերացեալ՝ իբր գիտակ բառից կամ բանից, փոր-
ձել կամիցիս զայլս՝ տգէտ զնոսա դատելով, կամ
առ ծաղու գործեսցես՝ որ մեղք է մահացու.
յորմէ ծնանին գժտութիւնք, ատելութիւնք,
անարգութիւնք, կռիւք և հայհոյութիւնք. զոր
բազմիցս լուեալ եմք ականջօք մերովք, և տե-

ծեալ աչօք․ որ և խրատէ իմաստունն այսպէս․ «Յիմաստութեան քո մի հպարտանար»․ Առակ․ Գ․ Ե։

Նաև մի զօրն և զժամն ընդ վայր և 'ի զուր կացցես, այլ պարապեա՛ց յընթերցումն սուրբ Գրոց՝ 'ի շահ անձին քում, և լիցի քեզ կերակուր հոգևոր և Թոշակ առ 'ի կեանս։ Քանզի սուրբ գիրք դաստիարակք են մեզ բարոյապէս, որք յանդիմանեն զմեզ, և ուղղեն զմիտս և զկամս մեր առ Աստուած․ բերկրեցուցանեն ըզսիրտս մեր՝ և ևս քան զևս առաւելուն զջերմեռանդն սէր 'ի մեզ, լուսաւորեն զմիտս և զհոգիս մեր լուսով գիտութեան և իմաստութեան․ և կրթեն զմեզ յԱստուածպաշտութեան․ և ուսուցանեն զմեզ առ 'ի ճանաչել և գիտել զկամս Աստուծոյ, որ է բարին՝ հաճոյն՝ և կատարեալն ըստ Սրբազան Առաքելոյն։

Արդ՝ գրովք Ծննդոց 'ի միտ ածցես զարարչագործութիւնն Աստուծոյ․ զպատուիրանն, զգթութիւնն, զփրկութիւն․ զերևելեաց և զաներևութից գոյացութիւնն, և զզարդս երկնի և երկրի․ զշնորհս, զփառս, և զանմահութիւն բանական արարածոց։

Գրովք Ելից՝ զամենասքանչ զօրութիւնն Աստուածութեան և մեծվայելչութեան նորին։

Գրովք Թուոց՝ զնախախնամութիւնն, զկառավարութիւնն, զխնամս, զգթութիւնս, զամենառատ պարգևս հոգւոյ և մարմնոյ։

Գրովք Ղևտացւոց՝ զապագայ խորհուրդս մարդեղութեան։

Գրովք Օրինաց՝ զօրէնս արդարութեան. և զպատուիրանս ճշմարտութեան։

Գրովք Յոբայ՝ զեղանակ համբերութե՛, զգո-հութեան, զճանաչումն անձին, զհաստատու-թիւն խոնարհութեան, և զլոյս յարութեան, և զվախճան արդար դատաստանին Աստուծոյ։

Գրովք Դաւթի՝ զգուշութի՛ մեղաց, զապաշ-խարութիւնն, զողորմութիւնն, զգթութիւնն, զփրկութիւնն, զհեզութիւնն, զյուսոյն հաս-տատութիւնն, և զԱստուածպաշտութիւնն։

Գրովք Մարգարէից՝ զառաջին և զերկրորդ գալուստն, զյարութիւնն մեռելոց, զանաչառ դատաստանն, զհատուցումն ըստ իւրաքանչիւր գործոց ազգի մարդկան, և զայլ գուշակութի՛ս։

Գրովք Նոր Կտակարանին՝ զկատարումն տնօ-րէնութեան բանին Աստուծոյ. զազատութիւն բնութեան մարդկան, զհաւատ, զյոյս, զսէր, զքաղցրութիւնն առ փրկութիւն և առ երա-նական կեանս, զպսակն արդարոց, և զպատիժն մեղաւորաց ըստ գործոցն սոտ և 'ի հանդեր-ձեալն։

Ընթեռնուլն մեր զգիրս խրատականս ի-մաստնոց՝ լուսաւորիմք 'ի միտս, և բորբոքիմք առ բարին, և վառիմք 'ի սէր Աստուծոյ և ըն-կերին։ Ընթեռնուլն զվարս սրբոցն զգաստա-նամք հոգւով, արիանամք, և զօրանամք. շտե-մարանեմք 'ի մեզ զամենայն օգտակարս, յորս գոն շնորհք Հոգւոյն սրբոյ։ Ընթեռնուլն մեր մատադրութեամբ, զգածին սիրտք մեր և բերկ-րին, հանդարտին յամենայն աշխարհական ըղ-

բաղմանց․ զուարճանամք, ցնծամք և պարիմք հոգւով ընդ հոգեղէնսն և ընդ սուրբս նորա։

Արդ եթէ օգտել կամիցիս 'ի սուրբ Գրոց՝ յառաջ քան զամենայն 'ի բաց հեռացո՛ 'ի քէն զամենայն զչար խորհուրդս՝ ասելով զբան Մարգարէին․ «Ի բա՛ց եղերուք յինէն չարք, և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ»։ Եւ ապա խնդրեա՛ յԱստուծոյ զլոյս շնորհացն, ասելով․ «Դու լուսաւոր առնես զճրագ իմ տէր Աստուած իմ, լո՛յս արա ինձ 'ի խաւարի»․ Սաղ․ ԺԷ․ 29։

Եւ այսպէս ըստ վերոյիշեալ պայմանիս ընկիզքն արա՛ յընթերցուածս սուրբ Գրոց․ այլ լիցի չափաւոր, զի յաճախ և ստէպ ո՛չ այնչափ օգտէ․ քանզի ըստ չափու և հանդարտ ընթերցանութեամբ կարես 'ի միտ առնուլ զիմաստսն՝ և գանձել 'ի յիշողութեանդ, որով դիւրաւ ունիս կազմել զպեղանի զօրաւոր վասն վիրաւորեալ հոգւոյ, և կերակուր անմահութեան վասն քաղցելոյ 'ի հոգի․ «Օլ ամենայն դպիր աշակերտեալ արքայութեան երկնից՝ նման է առն տանուտեառն, որ հանէ 'ի գանձէ իւրմէ զնոր և զհին»․ Մատթ․ ԺԳ․ 52։



# ՑՈՒՑԱԿ

## ԱՐԺԱՆԵԱՑ ՅԻՇԱՏԱԿՈՒԹԵԱՆ

### Ա

Զ



Է

Հ

## Ձ



## Ղ



## Ճ



## Մ

## Տ

